ՊՐՈԼԵՏԱՐՆԵՐ ԲՈԼՈՐ ԵՐԿՐՆԵՐԻ, ՄԻԱՑԵ՛Ք

# ԼԵՆԻՆՅԱՆ ՈՒՂԻՈՎ

ՀԿԿ ԿԵՆՏԿՈՄԻ ԱՄՍԱԳԻՐ

7

ՀՈՒԼԻՍ

ԵՐԵՎԱՆ • 1972

## ՄԵՐ ՀԵՂԻՆԱԿՆԵՐԻՆ

«Լենինյան ուղիով» ամսագրի խմբագրությունը խնդրում է հոդվածներ ուղարկելիս ճշտորեն պահպանել հետևյալ կանոնները. տեսական բնույթի հոդվածները՝ 18 մեքենագրական էջից ոչ ավելի, պրակտիկ աշխատանքը և առաջավոր փորձը լուսաբանող հոդվածները՝ 8—10, նամակներն ու թղթակցությունները՝ 4—6, գրախոսականները և մամուլի տեսությունները՝ 6—8 էջ:

Անդրկովկասի ու Հայաստանի հեղափոխական շարժման թեմաներով գրված և Հայաստանում մարքսիզմ-լենինիզմի տարածմանը նվիրված հոդվածները պետք է ունենան ռուսերեն ամփոփում՝ 8 տողի չափով:

Հոդվածները պետք է մեքենագրված լինեն երկու ինտերվալով, երկու օրինակից, հեղինակի կողմից ստորագրված, նշելով հեղինակի լրիվ անունը, հայրանունը և ազգանունը, հասցեն, աշխատանքի վայրն ու հեռախոսի համարը: Խմբագրությանը հանձնված հոդվածներից մեկը պետք է լինի մեքենագրվածի առաջին օրինակը: Հոդվածում անհրաժեշտ է ցույց տալ մեջբերումների և թվական տվյալների աղբյուրները:

Սույն կանոնները խախտողների հոդվածները չեն տպագրվի: Ներկայացված հոդվածը անհետևանք կմնա, եթե այն ամբողջովին կամ հատվածներով հրապարակված լինի մամուլի և ինֆորմացիայի որևէ օրգանում:

Խմբագրությանն ուղարկված հոդվածները չեն վերադարձվում:


# ԼԵՆԻՆՅԱՆ ՈՒՂԻՈՎ

7

ՀՈՒԼԻՍ 1972

ԼՈՒՅՍ Է ՏԵՍՆՈՒՄ 1922 ԹՎԱԿԱՆԻՑ

ՀԱՅԱՍՏԱՆԻ ԿՈՄՈՒՆԻՍՏԱԿԱՆ ԿՈՒՍԱԿՑՈՒԹՅԱՆ ԿԿ-Ի ՏԵՍԱԿԱՆ-ՔԱՂԱՔԱԿԱՆ ԱՄՍԱԳԻՐ

«Ленинян угиов»—теоретический и политический журнал ЦК КП Армении


## Բովանդակություն

### ՍՍՀՄ ԿԱԶՄԱՎՈՐՄԱՆ 50-ԱՄՅԱԿԻՆ ԸՆԴԱՌԱՋ



### ՄԵԿՆԱԲԱՆՈՒՄ ԵՆՔ ՍՄԿԿ XXIV ՀԱՄԱԳՈՒՄԱՐԻ ՈՐՈՇՈՒՄՆԵՐԸ



### ՆՇԱՆԱՎՈՐ ՏԱՐԵԹՎԵՐ



### ԿՈՒՍԱԿՑԱԿԱՆ ԿՅԱՆՔ



### ԷԿՈՆՈՄԻԿԱՅԻ ՀԱՐՑԵՐ



### ԳԻՏՈՒԹՅՈՒՆԸ ԵՎ ԿՅԱՆՔԸ



### ՀԵՂԱՓՈԽՈՒԹՅԱՆ ՎԵՏԵՐԱՆՆԵՐԸ



### ԳՐԱԽՈՍՈՒԹՅՈՒՆ ԵՎ ՔՆՆԱԴԱՏՈՒԹՅՈՒՆ

# Содержание










Մ. Ա. ԱՌԱՔԵԼՅԱՆ, Մ. Հ. ԱՆՏՈՆՅԱՆ


# ԿՈՄՈՒՆԻԶՄԻ ԿԱՌՈՒՑՈՒՄԸ ՍՄԿԿ ԵՎ ՍՈՎԵՏԱԿԱՆ ԺՈՂՈՎՐԴԻ ԻՆՏԵՐՆԱՑԻՈՆԱԼ ՊԱՐՏՔՆ Է

*Սովետական Միության պատմական փորձը ամենայն ակներևությամբ ցույց տվեց մարքսիզմ-լենինիզմի ճշմարտացիությունն այն խնդրում, որ սոցիալիզմի, կոմունիզմի կառուցումը իր բուն էությամբ ինտերնացիոնալ պրոցես է։ Համաշխարհային առաջադեմ հասարակայնությունն ընդունում է, որ սովետական ժողովուրդը, կոմունիստական կուսակցության ղեկավարությամբ, նոր կյանքի կառուցման ասպարեզում ցուցաբերած իր անձնազոհ աշխատանքով լուծում է ինտերնացիոնալ մեծ խնդիր։*

* * *

Պրոլետարական ինտերնացիոնալիզմի մասին ուսմունքը մարքս-լենինյան աշխարհայացքի անբաժանելի մասն է։ Այն առաջին անգամ իր արտահայտությունն է գտել Կ. Մարքսի և Ֆ. Էնգելսի Կոմունիստական կուսակցության մանիֆեստի «Պրոլետարներ, բոլոր երկրների, միացե՛ք» աշխարհացունց նշանաբանի մեջ։ Վ. Ի. Լենինի աշխատություններում պրոլետարական ինտերնացիոնալիզմի գաղափարները դարձան բոլոր երկրների կոմունիստական և բանվորական կուսակցությունների գիտական հայացքների մի կուռ սիստեմ։

Այդ ուսմունքի հիմնական սկզբունքներն են հետևյալ դրույթները։ Պրոլետարիատի դասակարգային գիրքը, նրա ազատագրման և հեղափոխական նվաճումների պաշտպանության պայմանները նեղ ազգային չեն, այլ ինտերնացիոնալ են. բոլոր երկրների աշխատավորների ընդհանուր թշնամիների դեմ և կապիտալիզմի կապանքներից նրանց ազատագրման պայքարը պահանջում է միավորել տարբեր երկրների բանվորների հեղափոխական ջանքերը, բազմապատկել նրանց փոխադարձ օգնությունն ու աջակցությունը։ Էնգելսը մատնանշում էր՝ որքանով բոլոր երկրների բանվորների դրությունը և նրանց շահերը համանման են, իսկ նրանց թշամիներն էլ նույնը, այնքանով էլ նրանք

պետք է պայքարեն համատեղ և բոլոր ազգերի բուրժուազիայի դաշինքին
պետք է հակադրեն բոլոր երկրների բանվորների եղբայրական դաշինքը։

Յուրաքանչյուր երկրի բանվոր դասակարգի իսկական ազգային շահերը
համընկնում են նրա ինտերնացիոնալ շահերին, նրա հայրենասիրությունը
օրգանապես զուգակցվում է ինտերնացիոնալիզմի հետ։

Պրոլետարական ինտերնացիոնալիզմի սկզբունքներից է նաև բանվորնե-
րի միջազգային համերաշխության գրավական հանդիսացող ժողովուրդների
իրավահավասարության և միջազգային համագործակցության կամավորու-
թյան ճանաչումը, այն խնդրի ըմբռնումը, որ միջազգային պրոլետարական
շարժման շահերն ընդհանուր առմամբ պետք է ավելի բարձր դասվեն յուրա-
քանչյուր երկրի ազգային նեղ շահերից։

Պասիվ հայեցողական, սպասողական գործելակերպի հետ պրոլետա-
րական ինտերնացիոնալիզմն անհամատեղելի է։ Նա պահանջում է ամեն մի
ազգային պրոլետարական ջոկատի դասակարգային ակտիվ պայքար իր երկ-
րում և անվերապահ աջակցություն մյուս երկրների բանվորների հեղափոխա-
կան պայքարին։ Պրոլետարական ինտերնացիոնալիզմի գաղափարները յու-
րաքանչյուր երկրի բանվոր դասակարգի կողմից ընկալվում և գործնականում
իրականացվում են ո՛չ թե ինքնահոսի ձևով, ոչ թե տարերայնորեն, այլ նրա
մարքս-լենինյան կուսակցության ղեկավարությամբ։

Պրոլետարական ինտերնացիոնալիզմը միշտ եղել և մնում է նացիոնա-
լիզմի անհաշտ թշնամին՝ ինչ դրոշի տակ էլ, որ նա հանդես գա։ Աշխատա-
վորների ինտերնացիոնալ միասնության ամրապնդման, ինտերնացիոնալիզմի
ոգով նրանց դաստիարակման և աշխատանքի միջազգային միասնական բա-
նակի մեջ նրանց համախմբման կարևորագույն պայմաններից մեկը մարքս-
լենինյան կուսակցությունների անողոք պայքարն է ինչպես իմպերիալիստա-
կան բուրժուազիայի նացիոնալիզմի, այնպես էլ բանվորական և կոմունիստա-
կան շարժման մեջ նրա տարբեր դրսևորումների դեմ։

Մարքսիզմ-լենինիզմն ինտերնացիոնալ է իր բուն էությամբ։ Այդ ուս-
մունքի ծագման ու զարգացման նյութական, քաղաքական ու հոգևոր արմատ-
ները ո՛չ թե այս կամ այն առանձին երկրի պատմության մեջ են, այլ ամբողջ
համաշխարհային զարգացման, էկոնոմիկայի, կուլտուրայի, քաղաքականու-
թյան ինտերնացիոնալացման օրինաչափ պրոցեսի մեջ։ Հանդիսանալով բոլոր
երկրների աշխատավորների արմատական շահերի գիտական արտահայտու-
թյունը, մարքսիզմ-լենինիզմն արտացոլում է համաշխարհային պատմության
և դասակարգային պայքարի զարգացման ընդհանուր օրինաչափությունները,
որոշում կոմունիստական հիմունքներով աշխարհի հեղափոխական վերափոխ-
ման ուղիներն ու միջոցները։ Ուստի, չկա և չի կարող լինել ազգային, մեկու-
սացած, անջատ, ասենք, ռուսական, անգլիական, գերմանական, չինական և
այլ մարքսիզմ, ճիշտ այնպես, ինչպես չի կարող լինել ազգային սոցիալիզմ,
կոմունիզմ։

Այստեղից պարզ է, որ յուրաքանչյուր մարքս-լենինյան կուսակցություն
պարտավոր է իր ստրատեգիան ու տակտիկան որոշելիս, իր ամբողջ գործու-
նեության մեջ ղեկավարվել մարքսիզմ-լենինիզմի ընդհանուր սկզբունքներով
և դրանք ստեղծագործաբար կիրառել իր երկրի կոնկրետ պայմանների համե-



մատ, հաշվի առնելով նրա առանձնահատկությունները, ճիշտ զուգակցել իմ-
պերիալիզմի դեմ սոցիալիզմի հաղթանակի համար մղվող պայքարի ազգային
և ինտերնացիոնալ խնդիրները։

Հոկտեմբերյան սոցիալիստական մեծ հեղափոխությունը պրոլետարական
ինտերնացիոնալիզմի սկզբունքների գործնական կիրառման կլասիկ օրինակ
հանդիսացավ, հուշակեց ու կենսագործեց ժողովուրդների իսկական եղբայ-
րությունը։ Մեծ Հոկտեմբերը մեր հայրենիքը դարձրեց իմպերիալիզմի դեմ
մղվող ազատագրական պայքարի միջազգային հզոր բազա, համաշխարհային
հեղափոխական պրոցեսի վճռական գործոն։

Ինտերնացիոնալիզմի վառ դրսևորումը հանդիսացավ սկզբունքորեն նոր
տիպի բազմազգ պետության՝ ՍՍՀ Միության կազմավորումը 1922 թվականի
վերջին և նրա հաջող զարգացումը սոցիալիզմի հաղթական կառուցման բա-
զայի վրա։ ՍՍՀ Միության ստեղծումը լենինյան կուսակցության տեսական ու
գործնական վիթխարի աշխատանքի արդյունքն էր։ Միավորիչ շարժումը սո-
վետական բոլոր հանրապետություններում ջերմ պաշտպանություն գտավ
հասարակության գլխավոր հեղափոխական ուժը հանդիսացող բանվոր դասա-
կարգի, ինչպես նաև աշխատավոր գյուղացիության ու առաջադեմ մտավորա-
կանության կողմից։ Բոլոր ազգությունների աշխատավորական զանգվածները,
կոմունիստական կուսակցության ղեկավարությամբ, արտահայտեցին իրենց
միասնական կամքը՝ համախմբել ուժերն ու ռեսուրսներն ընդհանուր նպատա-
կին՝ սոցիալիզմի և կոմունիզմի կառուցման հասնելու համար։ Այդ ժամանա-
կից սկսած Սովետական Միությունում հաստատվել են ազատ ժողովուրդների
միասնության ու եղբայրության՝ պատմության մեջ դեռևս չտեսնված հարա-
բերություններ։

Սովետների երկրի ժողովուրդների իրավահավասարությունը, որոնք իրենց
պետականությունը կառուցել են միութենական կամ ինքնավար հանրապետու-
թյունների, ինքնավար մարզերի կամ ազգային օկրուգների ձևով, ձեռք-ձեռքի
տված, միասնական եղբայրական ընտանիքում, ավագ եղբոր՝ ռուս մեծ ժողո-
վրդի առաջատար դերի պայմաններում, համատեղ ջանքերով կառուցեցին
սոցիալիստական հասարակարգ։ Այնուհետև նրանք ընդհանուր ուժերով պատ-
մական հաղթանակ նվաճեցին Հայրենական մեծ պատերազմում՝ մարդկության
ամենավտանգավոր թշնամու՝ հիտլերյան ֆաշիզմի նկատմամբ։ Այդ հաղթա-
նակը սովետական ժողովուրդների բարեկամության կենսական անհաղթ ուժի
վառ ապացույցը հանդիսացավ։

Հետպատերազմյան տարիներին Սովետական Միությունը թևակոխեց իր
զարգացման նոր ժամանակաշրջանը՝ զարգացած սոցիալիստական հասարա-
կարգի, և սոցիալիզմից աստիճանաբար կոմունիզմին անցնելու ժամանակա-
շրջանը։ Զարգացած սոցիալիստական հասարակարգի կառուցումը սովետական
ժողովրդի ինտերնացիոնալ սխրագործությունն էր, որը ունեցավ համաշխար-
հային-պատմական նշանակություն։

Զարգացած սոցիալիստական հասարակարգը, ինչպես այդ բնորոշվում է
ՍՍՀՄ կազմավորման 50-ամյակի նախապատրաստության մասին ՍՄԿԿ
Կենտկոմի որոշման մեջ, բնութագրվում է այն բանով, որ այնտեղ.
— զարգացման բարձր մակարդակի է հասել ընդհանուր միութենական
էկոնոմիկան՝ փոխադարձաբար կապված ժողովրդատնտեսական կոմպլեքսը,
որը ներառնում է հանրապետությունների ժողովրդական տնտեսությունը և

զարգանում ըստ միասնական պետական պլանի՝ ի շահ ամբողջ երկրի և առանձին վերցրած յուրաքանչյուր հանրապետության.

— ոչնչացված է դասակարգային և ազգային հակամարտությունը։ Հասարակությունն ամբողջությամբ վերցված և յուրաքանչյուր ազգ ու ազգություն ունեն միատիպ սոցիալական կառուցվածք, որը կազմում են բանվոր դասակարգը, կոլտնտեսային գյուղացիությունը և աշխատավոր մտավորականությունը.

— ապահովված է սովետական հանրապետությունների բազմակողմանի զարգացումը՝ ...դեմոկրատական ցենտրալիզմի ու սոցիալիստական ֆեդերալիզմի, սովետական սոցիալիստական դեմոկրատիայի սկզբունքների հիման վրա.

— անհրաժեշտ նախադրյալներ են ստեղծված, որպեսզի բոլոր ազգությունների աշխատավորները ակտիվորեն մասնակցեն գիտության, տեխնիկայի, կուլտուրայի զարգացմանը։ Հոգևոր կյանքում օրինաչափ են դարձել սոցիալիստական ազգերի և ազգությունների կուլտուրաների ծաղկումը, մերձեցումը և փոխհարստացումը.

— հաստատվել է մարքսիզմ-լենինիզմի, սոցիալիստական ինտերնացիոնալիզմի և ժողովուրդների բարեկամության գաղափարախոսությունը, ինտենսիվ կերպով են ընթանում նյութական ու հոգևոր արժեքների, կադրերի փոխանակման պրոցեսները, տարբեր ձևերով ուժեղանում է ժողովուրդների փոխազդեցությունը, ամբողջ կացութաձևի ինտերնացիոնալացումը։ Յուրաքանչյուր հանրապետության աշխատավորները կազմում են մի բազմազգ կոլեկտիվ, որտեղ ազգային առանձնահատկություններն օրգանապես զուգորդվում են ինտերնացիոնալ, սոցիալիստական, համասովետական հատկանիշների ու ավանդույթների հետ։

Այժմ մեր բազմազգ սոցիալիստական պետությունը, որը միավորում է 15 միութենական, 20 ինքնավար հանրապետություններ, 8 ինքնավար մարզեր ու 10 ազգային օկրուգներ, վստահորեն ընթանում է կուսակցության կանխանշած կոմունիզմի ուղիով։ ՍՍՀՄ ժողովուրդների բարեկամությունը սոցիալիզմի մեծագույն նվաճումներից մեկն է, մեր հասարակարգի հզոր շարժիչ ուժը։

Սովետական հասարակության ձեռք բերած տնտեսական, սոցիալ-քաղաքական և կուլտուրական զարգացման վիթխարի հաջողությունների մեջ, որոնք արմատապես փոխել են մեր երկրի դեմքը, հսկայական դեր է պատկանում ՍՍՀՄ ժողովուրդների եղբայրական բարեկամությանը։ Նրանց ուժերի ու ռեսուրսների միավորման շնորհիվ միայն հաջողվեց կառուցել սոցիալիզմ, ՍՍՀՄ վերածել բարձր զարգացած հզոր տերության։

Նախահեղափոխական Ռուսաստանի համեմատությամբ, այժմ մեր երկրի արդյունաբերական արտադրանքի ծավալը աճել է 99 անգամ։ Ժամանակակից սովետական էկոնոմիկան ընդգրկում է մոտ 50 հազար արդյունաբերական ձեռնարկություն, 33 հազար կոլտնտեսություն և 15,5 հազար սովխոզ։ Սովետական իշխանության տարիներին գյուղատնտեսական արտադրանքի ծավալը երկրում մեծացել է 3,1 անգամ։ ՍՍՀՄ ազգային եկամուտը, 1922 թվականի համեմատությամբ, ավելացել է ավելի քան 100 անգամ։ Զտեսնված մեծ փոփոխություններ են տեղի ունեցել սովետական ժողովուրդների կուլտուրական կյանքում։ Կուլտուրական հեղափոխության շնորհիվ վերացվել է անգրագիտությունը ամբողջ երկրի մասշտաբով, հաջողությամբ լուծվել է կադրերի



պրոբլեմը։ Սովետական հանրապետությունների տերիտորիայում գործում է տարրական, միջնակարգ և բարձրագույն դպրոցների, թատրոնների, կուլտուրայի պալատների լայն ցանց, հրատարակվում են բազմաթիվ գրքեր, ժուռնալներ ու թերթեր։ Երկրի ավելի քան 800 բուհեր, մոտ 4,3 հազար միջնակարգ մասնագիտական ուսումնական հաստատություններ պատրաստում են բարձրորակ կադրեր։ Բարձր զարգացման է հասել սովետական գիտությունը։ Աշխարհի գիտական կադրերի մոտ 1/4-ը գտնվում է մեզ մոտ։ ՍՍՀՄ-ում գործում են ավելի քան 2,5 հազար գիտա-հետազոտական ինստիտուտներ, դրանց ֆիլիալներ ու բաժանմունքներ։ Համաշխարհային գիտության մի շարք կարևորագույն ճյուղերում առաջատար դեր է կատարում սովետական գիտությունը։ Աննախընթաց ծաղկում է ՍՍՀՄ ժողովուրդների՝ ձևով ազգային, բովանդակությամբ սոցիալիստական կուլտուրան։ Համաշխարհային փառքի է արժանացել սովետական բազմազգ գրականությունը և երաժշտական կուլտուրան։ Խոսելով մեր երկրի կուլտուրական զարգացման մասին, բավական է բերել մի բնորոշ փաստ. ներկայումս զբաղված բնակչության գրեթե 70 տոկոսն ունի բարձրագույն և միջնակարգ (լրիվ և ոչ լրիվ) կրթություն։

Հաղթանակած սոցիալիզմի բազայի վրա գոյացել է մարդկանց պատմական նոր հանրություն՝ սովետական ժողովուրդը։ Դա պատմության մեջ սկզբունքորեն նոր երևույթ է, որը պայմանավորված է բոլոր ազգությունների սովետական մարդկանց տնտեսական կյանքի, հոգևոր նկարագրի և բարոյա-քաղաքական գծերի միասնությամբ։

Բազմազգ սոցիալիստական հասարակությունն ընթանում է կոմունիզմի կառուցման ուղիով, որն ընդգրկում է եռմիասնական խնդիր՝ նյութա-տեխնիկական բազայի ստեղծումը, հասարակական նոր հարաբերությունների ձևավորումը և նոր մարդու դաստիարակումը։ Կոմունիզմի կառուցումը նեղ ազգային խնդիր չէ, այլ պատմության մեջ դեռ անծանոթ ուղիներով ամբողջ առաջադեմ մարդկության ավանգարդում ընթացող մեր ժողովրդի ինտերնացիոնալ մեծ միսիան է։ Կառուցելով նոր հասարակարգ, սովետական ժողովուրդը կատարում է իր ինտերնացիոնալ վեհ պարտքը, անգնահատելի օգնություն ցույց տալով աշխարհի բոլոր հեղափոխական ուժերին, որոնք պայքարում են նոր, լավագույն կյանքի համար։

Ո՞րն է մեր երկրում կոմունիզմի կառուցման, ՍՄԿԿ պատմական փորձի ինտերնացիոնալ նշանակությունն այդ մեծ խնդրի կատարման գործում, եթե հարցը քննենք ավելի կոնկրետ պլանով։

Ամենից առաջ այն, որ կոմունիզմի կառուցման ճանապարհին սովետների երկրի ձեռք բերած նվաճումները նպաստում են համաշխարհային հեղափոխական պրոցեսի զարգացմանը, հեշտացնում առաջադիմական ուժերի պայքարն ընդդեմ իմպերիալիզմի, հանուն խաղաղության, դեմոկրատիայի ու սոցիալիզմի։ Վ. Ի. Լենինը սովորեցնում էր, որ հաղթանակած սոցիալիզմը գլխավոր հեղափոխիչ ազդեցությունը մարդկության վրա ունենալու է սեփական օրինակի ուժով՝ տնտեսական նվաճումներով, ինտերնացիոնալ քաղաքականությամբ, հասարակական կարգի իր բնույթով։ Այդ իմաստով նա ընդգծում էր, որ անհրաժեշտ է անել «...մի երկրում իրագործելիի առավելագույնը՝ բոլոր երկրներում հեղափոխությունը զարգացնելու, նրան աջակցելու, այն արթնացնելու համար (Երկեր, հ. 28, էջ 371)։

Վ. Ի. Լենինի այս կանխատեսումը հաստատվում է կյանքում։ Սոցիալիզ-

մի հաղթանակը ՍՍՀՄ-ում, իսկ այժմ նաև կոմունիզմի կառուցումը, ամենաուժեղ և ամենագործուն աջակցությունն է միջազգային ազատագրական շարժմանը։ Դա միաժամանակ անհրաժեշտ բազա ստեղծեց ո՛չ միայն Սովետական Միության պաշտպանական հզորությունն ըստ ամենայնի բարձրացնելու, այլև արտասահմանյան երկրների ժողովուրդների հակաիմպերիալիստական պայքարին արդյունավետ օգնություն ցույց տալու համար։ Իններորդ հնգամյակը նոր կարևոր ուղենիշ կհանդիսանա մեր հայրենիքի հզորության հետագա ամրապնդման ճանապարհին։ Հնգամյա պլանի համաձայն, երկրի արդյունաբերական արտադրանքը 1975 թվականին, 1970 թվականի համեմատությամբ, կավելանա 47, գյուղատնտեսության արտադրանքը՝ 20—22, ազգային եկամուտը՝ 38,6 տոկոսով։ Նշանակում է, որ ամբողջ աշխարհում է՛լ ավելի կուժեղանան Սովետական Միության տնտեսական ու պաշտպանական հզորությունը, սոցիալիզմի հեղափոխիչ ներգործությունն ու ձգողական ուժը։

Այս ամենը անհամեմատ մեծ չափով ընդլայնում են հնարավորությունները՝ իրականացնելու սոցիալիստական արտադրության գերագույն նպատակը՝ մարդկանց նյութական ու կուլտուրական պահանջմունքների առավել լրիվ բավարարումը։ Այստեղից էլ ընթացիկ հնգամյակի գլխավոր խնդիրը՝ ապահովել ժողովրդի կյանքի նյութական ու կուլտուրական մակարդակի նշանակալի բարձրացումը՝ սոցիալիստական արտադրության բարձր տեմպերի, նրա արդյունավետության բարձրացման, գիտա-տեխնիկական առաջընթացի և աշխատանքի արտադրողականության աճն արագացնելու հիման վրա։ Հնգամյակի ընթացքում բանվորների ու ծառայողների աշխատավարձը կաճի, միջին հաշվով, 20—22, կոլտնտեսականների աշխատանքի վարձատրությունը՝ 30—35 տոկոսով։ 40 տոկոսով կմեծանա հասարակական ֆոնդերի ծավալը։

Տնտեսական, գիտա-տեխնիկական, պաշտպանական հզորությամբ Սովետական Միությունը առաջատար ուժ է համաշխարհային սոցիալիստական սիստեմի համար, որը դառնում է արդի համաշխարհային զարգացման վճռական գործոն։ Համաշխարհային երկու սիստեմների՝ սոցիալիզմի ու կապիտալիզմի տնտեսական մրցության մեջ սոցիալիստական երկրները, որոնց էկոնոմիկան խարսխվում է պլանային առողջ հիմքի վրա, նորանոր հաջողություններ են ձեռք բերում և ռեալ հնարավորություններ ունեն շահելու այդ մրցությունը։ Տնտեսական Փոխօգնության Խորհրդի երկրներին այժմ բաժին է ընկնում բոլոր երկրների ազգային եկամուտների ընդհանուր գումարի մեկ քառորդ, իսկ ՏՓԽ-ի երկրների տեսակարար կշիռը համաշխարհային արդյունաբերական արտադրության մեջ 1950 թվականի մեկ հինգերորդ մասից ավելացել է և 1970 թվականին հասել մինչև մեկ երրորդի։ 1950—1971 թթ. արդյունաբերական արտադրությունը ՏՓԽ-ի երկրներում ավելացել է մոտավորապես 7, իսկ զարգացած կապիտալիստական երկրներում՝ ընդամենը 2,8 անգամ, «ընդհանուր շուկայի» երկրներում՝ 4-ից էլ պակաս։

Եղբայրական երկրների ժողովրդական տնտեսության առջև լայն հեռանկարներ է բացում սոցիալիստական տնտեսական ինտեգրացման կոմպլեքսային ծրագիրը, որը նախատեսում է ազգային էկոնոմիկաների սերտ համագործակցություն՝ համատեղ պլանային գործունեության բազայի վրա, նրանց ռեսուրսների ու հնարավորությունների բազմակողմանի միավորումը, աշխատանքի միջազգային սոցիալիստական բաժանման առավելությունների լրիվ օգտագործումը։



Խաղաղության պայքարում, հակաիմպերիալիստական ուժերի դիրքերի հետագա ամրապնդման գործում հսկայական նշանակություն ունի Վարշավայի պայմանագրի պետությունների արտաքին քաղաքական գործունեության սերտ կոորդինացումը, սոցիալիստական երկրների ակտիվ պայքարը իմպերիալիզմի ագրեսիվ պլանների ու գործողությունների դեմ։ Սոցիալիստական երկրների ժողովուրդների համատեղ ջանքերով ստեղծվել է տնտեսական ու պաշտպանական այնպիսի պոտենցիալ, որը առաջնակարգ դեր է կատարում խաղաղության ամրապնդման գործում և սոցիալական առաջադիմության համար մղվող պայքարում։

Որքան ավելի շատ հաջողություններ ձեռք բերեն Սովետական Միությունն ու սոցիալիստական մյուս երկրները էկոնոմիկայի զարգացման, իրենց ժողովուրդների կենսամակարդակի բարձրացման, խաղաղության ու միջազգային անվտանգության ամրապնդման գործում, այնքան ավելի ուժեղ կլինի նրանց ոգեշնչող ազդեցությունը կապիտալիստական երկրների բանվոր դասակարգի հեղափոխական պայքարի վրա՝ հանուն իր սոցիալական ազատագրության։ Սոցիալիստական երկրներում արմատական այնպիսի պրոբլեմների հաջող լուծումը, ինչպիսիք են՝ մարդու կողմից մարդու շահագործման, խրոնիկական գործազրկության, արտադրության անարխիայի վերացումը, էկոնոմիկայի պլանային զարգացումը, ազգային հարցի փայլուն լուծումը, հսկայական նվաճումները սոցիալական ապահովության բնագավառում, սկզբունքայնորեն նոր տիպի միջազգային հարաբերությունների հաստատումը սոցիալիստական պետությունների միջև և այլն, կենդանի օրինակ են այն բանի, թե ինչ կարող է տալ սոցիալիզմը աշխատավորական զանգվածներին՝ պատմության իսկական կերտողներին։

Սոցիալիզմի աշխարհն ամբողջապես շարժման մեջ է։ Նա անընդհատ կատարելագործվում է, առաջ է ընթանում՝ հաղթահարելով դժվարություններն ու հակասությունները։ ՍՄԿԿ XXIV համագումարում Լ. Ի. Բրեժնևն ընդգծում էր. «Մենք ուզում ենք, որ սոցիալիզմի համաշխարհային սիստեմը լինի նոր հասարակարգի համատեղ կառուցող ու պաշտպանող, փորձով ու գիտելիքներով միմյանց հարստացնող ժողովուրդների համերաշխ ընտանիք՝ համախմբված և ամուր ընտանիք, որի մեջ երկրագնդի մարդիկ տեսնեն ազատ ժողովուրդների ապագա համաշխարհային միության նախատիպը» (ՍՄԿԿ XXIV համագումարի նյութերը, էջ 18)։

Այդ մեծ խնդրի լուծումը պահանջում է նաև հմտորեն զուգորդել սոցիալիզմի, կոմունիզմի կառուցման ընդհանուր օրինաչափությունները և դրանց դրսևորման առանձնահատկությունները այս կամ այն երկրում։ Կուսակցության XXIV համագումարին տրված ՍՄԿԿ Կենտկոմի հաշվետու զեկուցման մեջ ընդգծվում է, որ սոցիալիզմի, կոմունիզմի կառուցման հաջողությունները մեծապես պայմանավորված են ընդհանուրի և սպեցիֆիկի, ազգային-առանձնահատուկի ճիշտ զուգորդմամբ։ Բանն այն է, որ սոցիալիզմի կառուցումը յուրաքանչյուր երկրում ունի իր սպեցիֆիկան, իր բնորոշ, տարբերիչ գծերը։ Եվ դա միանգամայն օրինաչափ է։ Դրա հետ մեկտեղ, պատմականորեն ապացուցված է ընդհանուր օրինաչափությունների վճռական նշանակությունը սոցիալիստական բոլոր երկրների զարգացման գործում, որ «...սոցիալիզմի ուղին, նրա գլխավոր գծերը որոշվում են այն ընդհանուր օրինաչափություններով, որոնք հատուկ են սոցիալիստական բոլոր երկրների զարգացմա-

նը: Մենք գիտենք նաև այն, որ ընդհանուր օրինաչափությունների գործողությունը դրսևորվում է կոնկրետ պատմական պայմաններին, ազգային առանձնահատկություններին համապատասխանող տարբեր ձևերով: Ջհենվելով ընդհանուր օրինաչափությունների վրա, հաշվի չառնելով յուրաքանչյուր երկրի կոնկրետ պատմական յուրահատկությունը, անհնար է սոցիալիզմ կառուցել: Առանց այդ երկու գործոնները հաշվի առնելու անհնար է նաև ճիշտ զարգացնել սոցիալիստական պետությունների հարաբերությունները» (ՍՄԿԿ XXIV համագումարի նյութերը, էջ 7):

ՍՄԿԿ, ինչպես նաև սոցիալիստական մյուս երկրների մարքս-լենինյան կուսակցությունները, ցույց է տալիս այդ գործոնները հմտորեն զուգորդելու օրինակ, իսկ դա ունի հսկայական միջազգային նշանակություն:

Բնութագրելով ՍՍՀՄ փորձի միջազգային նշանակությունը, ՍՄԿԿ Կենտկոմի որոշման մեջ ընդգծվում է, որ Սովետական Միության կազմավորումը մեծ ուղենիշ է ամբողջ մարդկության սոցիալական առաջադիմության գործում: Բազմազգ սոցիալիստական պետության ստեղծման, մեր ժողովուրդների համատեղ ջանքերով սոցիալիստական զարգացած հասարակարգի կառուցման, ազգային հարցի լուծման սովետական փորձը համաշխարհային ճանաչում է ստացել և անգնահատելի օգնություն է ցույց տալիս սոցիալիզմի ու ազգային ազատագրության համար պայքարող բոլոր մարտիկներին:

Միաժամանակ կոմունիստական կուսակցությունը վճռականորեն մերժում է «հեղափոխության արտահանման», «հեղափոխական պատերազմի» գաղափարները: Ժամանակին կոմունիստական շարժմանը հենց այդպիսի կործանարար ու ավանտյուրիստական ուղի էին պարտադրում տրոցկիստները: Ներկայումս, հակալենինյան, տրոցկիստական այդ տեսակետի վրա են կանգնած մաոիստները:

Վ. Ի. Լենինը վճռականորեն մերժում էր հեղափոխության արտահանման, սոցիալիզմը բռնի կերպով ուրիշ երկրներին պարտադրելու գաղափարը, որը հակասում է սոցիալիզմի և սոցիալիստական հեղափոխության բնույթին: Այդ գաղափարը, ինչպես նաև, այսպես կոչված, հեղափոխական պատերազմի գաղափարը, հիմնովին ժխտում է ամենագլխավորը հեղափոխական պրոցեսում՝ դասակարգային պայքարը ոչ սոցիալիստական երկրներում, կոմունիստական ու բանվորական կուսակցություններին, հեղափոխական բոլոր ուժերին դատապարտում պասսիվության, հայեցողականության: Եվ դա հասկանալի է, քանի որ հեղափոխության օբյեկտիվ և սուբյեկտիվ պայմանների հասունացումը և դրա համեմատ կոնկրետ գործողություններին դիմելը, ամենից առաջ, տվյալ երկրի կոմունիստական կուսակցության կողմից ղեկավարվող բանվոր դասակարգի, աշխատավորական լայն զանգվածների գործն է:

Սոցիալիզմի, կոմունիզմի հաջող կառուցումը՝ ահա համաշխարհային հեղափոխական պրոցեսին օգնելու գլխավոր մեթոդը: Ընթանալով այս ճշտորոշ, լենինյան ուղիով, սոցիալիզմի երկրները անփոխարինելի օգնություն են ցույց տալիս աշխարհի ժողովուրդների ազատագրական պայքարին՝ ընդդեմ իմպերիալիզմի ու նրա բոլոր տեսակի ռեակցիոն ոտնձգությունների:

Այդ օգնության ուղղություններից մեկն այն է, որ Սովետական Միությունը համաշխարհային ասպարեզում հանդես է գալիս իբրև մի ուժ, որը հաստատակամորեն ու հետևողականորեն վարում է խաղաղության ու բարեկամության քաղաքականություն, պաշտպանում է ժողովուրդների իրավահավա-



սարության լենինյան սկզբունքները, վճռականորեն հանդես է գալիս գաղութատիրության, նեոգաղութատիրության և ռասիզմի, ազգային ճնշման բոլոր ձևերի դեմ: Այդ քաղաքականությունը եղել և մնում է կարևորագույն գործոն, որը հակադրվում է իմպերիալիզմի ագրեսիվ ստրատեգիային ու ռեակցիային, իբրև ակտիվ պայքարի գործիք՝ ընդդեմ զավթողական պատերազմների, հանուն ժողովուրդների անվտանգության և ազատության, հանուն սոցիալական առաջադիմության:

Սոցիալիզմի գաղափարների հաղթական տարածման մեր դարը մարդկության առջև պարզում է իմպերիալիզմից ազատագրվելու հեռանկարը: Մեր դարաշրջանն այնպիսին է, երբ մարդկության առաջադիմական ուժերը մասսայաբար անցնում են բանվոր դասակարգի սոցիալիստական դրոշի տակ: Իմպերիալիզմի դեմ, իրենց ազատության ու անկախության համար պայքարող ժողովուրդներն աստիճանաբար երեսները շուռ են տալիս կապիտալիզմից:

Իմպերիալիզմն ամենախոր քաղաքական ու գաղափարական ճգնաժամ է ապրում: Մեր ժամանակում բուրժուազիան իր պատմական ուղին ավարտում է անզուսպ ռեակցիայի դրոշի տակ: Իմպերիալիզմը վարկաբեկվել է գլխավոր, կենսականորեն կարևոր հարցերում՝ պատերազմի ու խաղաղության, ժողովուրդների ազատության ու անկախության հարցերում: Իմպերիալիստական ագրեսորները բորբոքում են պատերազմի բոցը մերթ մեկ, մերթ մի այլ տեղում:

Մեր երկրի փորձով աշխարհի ժողովուրդները ավելի ու ավելի են համոզվում, որ միայն սոցիալիզմն է ընդունակ լուծելու և իրոք լուծում է մարդկության առջև ծառացած արմատական պրոբլեմները:

Նոր կյանքի կառուցման բնագավառում ՍՄԿԿ և սովետական ժողովրդի կուտակած փորձը համաշխարհային-պատմական նշանակություն ունի: Այդ փորձի ուսումնասիրումն ու ստեղծագործական կիրառումը եղբայրական կուսակցությունների կողմից՝ իրենց երկրների կոնկրետ առանձնահատկությունների հաշվառումով, մեր կուսակցության ինտերնացիոնալ առաքելության վառ դրսևորումներից մեկն է:

Սովետական երկրի պատմական փորձը միաժամանակ ցույց է տալիս, որ սոցիալիզմի ու կոմունիզմի կառուցումն իրականանում է բուրժուական գաղափարախոսության, միջազգային բանվորական ու կոմունիստական շարժման մեջ աջ և «ձախ» օպորտունիզմի դեմ մղվող անհաշտ պայքարում:

Առանց համաշխարհային իմպերիալիզմի մեքենայությունների անընդմեջ մերկացման, առանց մեր կուսակցության շարքերում տրոցկիզմի ու աջ օպորտունիզմի գաղափարական ու քաղաքական ջախջախման չէր կարելի ապահովել սոցիալիզմի հաջող կառուցումը, միջազգային կոմունիստական շարժման միասնությունը: Արդի պայմաններում, երբ գաղափարական պայքարը սոցիալիզմի ու կապիտալիզմի միջև հասել է անցյալում չտեսնված սրության, սոցիալիզմի և կոմունիզմի հաջող կառուցման կարևոր պայմաններից մեկը անհաշտ պայքարն է հակակոմունիզմի գաղափարախոսության և ժամանակակից ռևիզիոնիզմի դեմ: Նրանց հորինած առասպելները «կապիտալիզմի մոդեռնացման» և «սոցիալիզմի վերասերման», միասնական «ինդուստրիալ հասարակության» մեջ սոցիալիզմի ու կապիտալիզմի «կոնվերգենցիայի» (միացման), «ազգային կոմունիզմի» մասին և այլն, նպատակ ունեն գաղափարապես զինաթափել հեղափոխական ուժերը, խարխլել նրանց հավատը

սոցիալիզմի ու կոմունիզմի լուսավոր իդեալների նկատմամբ, չլատել նրանց
պայքարն ընդդեմ իմպերիալիզմի: Համաշխարհային հեղափոխական պրոցե-
սի համար պակաս վտանգավոր չեն նաև աջ և «ձախ» ռևիզիոնիստների գա-
ղափարական կոնցեպցիաները, որոնք ժխտում են սոցիալիստական հեղափո-
խության և սոցիալիզմի կառուցման ընդհանուր օրինաչափությունները, ՍՄԿԿ
պատմական փորձի ստեղծագործական օգտագործման անհրաժեշտությունը:
Իհարկե, ինչպես վերն ասվեց, սոցիալիզմին անցնելու ժամանակ այս կամ
այն երկրում կարող են լինել առանձնահատկություններ: Բայց այդ առանձնա-
հատկությունների առկայությունն ամենևին չի ժխտում մեր երկրի փորձի
ինտերնացիոնալ բովանդակությունը: Հենց այդ փորձն էլ օրինակ է բոլոր եր-
կրների համար: Օգտագործել այդ փորձը, վերցնել այն՝ ամենևին չի նշանա-
կում մեխանիկորեն ընդօրինակել: Նկատի ունենալով այդ, Վ. Ի. Լենինը գրել է.
ընդօրինակումը ոչ մի դեպքում չպետք է լինի հասարակ արտագրում: Ընդօրի-
նակումն ու փոխառնումը միանգամայն օրինական են այնքանով, որքանով
Ռուսաստանում ևս մենք տեսնում ենք կապիտալիզմի զարգացման նույն հիմ-
նական պրոցեսները, սոցիալիստների ու բանվոր դասակարգի նույն հիմնական
խնդիրները, բայց դրանք ոչ մի դեպքում չպետք է տանեն դեպի Ռուսաստանի
առանձնահատկությունների մոռացում, որոնք պետք է լիակատար արտահայ-
տություն գտնեն մեր ծրագրի առանձնահատկությունների մեջ (տե՛ս, Երկեր,
հատ. 4, էջ 293):

Ինչ էլ ասեն ռևիզիոնիստներն ու սոցիալիզմի մյուս թշնամիները Սովե-
տական Միության փորձի մասին, կյանքը անհերքելիորեն վկայում է, որ կո-
մունիզմի կառուցումը ՍՍՀՄ-ում ունի ո՛չ միայն ազգային, այլև ինտերնա-
ցիոնալ մեծ նշանակություն: Այդ փորձի ճիշտ ըմբռնումն ու ստեղծագործա-
կան կիրառումը, սոցիալիզմի կառուցման ընդհանուր օրինաչափությունների
և ազգային-առանձնահատուկի հմուտ զուգորդումը հասարակական զարգաց-
ման մեջ՝ համաշխարհային հեղափոխական պրոցեսի նոր հաջողությունների
գրավականն է:



ՀՈՎՀ. ԲԱՂԴԱՍԱՐՅԱՆ

Պատմական գիտությունների դոկտոր

# ՍՈՎԵՏՆԵՐԸ ԱՇԽԱՏԱՎՈՐՆԵՐԻ ԻՇԽԱՆՈՒԹՅԱՆ ՆՈՐ, ԻՆՏԵՐՆԱՑԻՈՆԱԼ ՁԵՎ ԵՆ

Կես դար առաջ, 1922 թվականի դեկտեմբերի 30-ին, սովետների համա-
միութենական առաջին համագումարը հռչակեց Սովետական Սոցիալիստական
Հանրապետությունների Միության կազմավորումը. ծնունդ առավ բանվորների
և գյուղացիների՝ աշխարհում առաջին սոցիալիստական բազմազգ պետու-
թյունը:

«Բազմազգ սոցիալիստական պետության մեջ ժողովուրդներին համա-
խմբելու համար,— ասված է ՍՍՀՄ կազմավորման 50-ամյակի նախապատ-
րաստության մասին ՍՄԿԿ Կենտկոմի որոշման մեջ,— ակնառու նշանակու-
թյուն ունեցավ մասսաների հեղափոխական ևլույթների ընթացքում աշխատա-
վորների իշխանության այնպիսի ձևի ստեղծումը, ինչպիսիք են սովետները»:

Ամբողջ իշխանությունը ՍՍՀՄ-ում պատկանում է քաղաքի և գյուղի աշ-
խատավորներին՝ հանձինս աշխատավորների դեպուտատների սովետների,
որոնք, հանդիսանալով ՍՍՀՄ քաղաքական հիմքը, աճել ու ամրապնդվել են
կալվածատերերի ու կապիտալիստների իշխանությունը տապալելու և պրոլե-
տարիատի դիկտատուրան նվաճելու շնորհիվ:

Աշխարհում առաջին անգամ մեր երկրում պետական իշխանությունը կա-
ռուցվեց այնպես, որ, ինչպես Վ. Ի. Լենինն է ասում, «...միայն բանվորները,
միայն աշխատավոր գյուղացիներն են, բացառելով շահագործողներին, կազ-
մում մասսայական կազմակերպությունները՝ սովետները, և այդ սովետներին
է հանձնվում ամբողջ պետական իշխանությունը ...Սովետական իշխանու-
թյունը դեպի սոցիալիզմ տանող ուղին է, որը գտել են աշխատավորական մաս-
սաները և այդ պատճառով էլ դա ճիշտ, և այդ պատճառով էլ դա անպարտելի
ուղի է» (Երկեր, հ. 29, էջ 295—296):

Բանվորների և գյուղացիների սովետները, Լենինի բնորոշմամբ, պետու-
թյան նոր տիպ են, դեմոկրատիայի նոր, բարձրագույն տիպ, պրոլետարիատի
դիկտատուրայի ձև, պետություն առանց բուրժուազիայի և ընդդեմ բուրժուա-
զիայի կառավարելու մի եղանակ:

Սովետները ժողովրդապետության այն ձևն են, որոնցում առավել լիակա-
տարությամբ են հաստատվում սոցիալիստական դեմոկրատիայի սկզբունք-
ները: Նրանք ժողովրդի համապարփակ կազմակերպություն են, նրա միասնու-
թյան մարմնավորումը. աշխատավոր բնակչությանը իրենց մոտիկության և

մասնակցության շնորհիվ սովետներն իրենց շուրջն են համախմբել բազմամիլիոն մասսաներին, տարբեր ազգությունների աշխատավորներին։

Սովետների աշխատանքի մասշտաբները պատկերացնելու համար բավական է ասել, որ դրանցում ընտրված են ավելի քան երկու միլիոն դեպուտատ՝ բանվորների, կոլտնտեսականների, աշխատավոր ինտելիգենցիայի լավագույն ներկայացուցիչները. իսկ ավելի քան 25 միլիոն ակտիվիստներ կամավոր մասնակցում են աշխատավորների զանազան ինքնագործ կազմակերպությունների և հասարակական ինքնավարության մարմինների գործունեությանը։ Միայն Հայկական ՍՍՀ քաղաքային, շրջանային, ավանային և գյուղական սովետներում ընտրված դեպուտատների թիվն անցնում է 25 հազարից, որոնցից մոտ 19 հազարն ընդգրկված են մշտական հանձնաժողովներում։

ՍՄԿԿ-ն որպես կառավարող կուսակցություն, սոցիալիստական և կոմունիստական շինարարության պրոցեսում սիստեմատիկաբար կատարելագործում է սովետական ապարատի կազմակերպման ու գործունեության լենինյան սկզբունքները՝ հասարակական զարգացման օբյեկտիվ պահանջմունքների իմացության ու հաշվառման հիման վրա։

ՍՄԿԿ Կենտրոնական կոմիտեն դեռևս 1967 թվականի մարտին որոշում ընդունեց «Աշխատավորների դեպուտատների գյուղական և ավանային սովետների աշխատանքը բարելավելու մասին», որը մեծ դեր խաղաց պետական իշխանության այդ ամենամասսայական օղակների գործունեությունը բարելավելու համար։

Սովետների դերի և պատասխանատվության բարձրացման, սոցիալիստական դեմոկրատիայի հետագա զարգացման, աշխատավոր մասսաներին պետության գործերի կառավարմանը ակտիվորեն ներգրավելու համար հսկայական նշանակություն ունեցավ ՍՄԿԿ Կենտկոմի 1971 թվականի մարտի 5-ի որոշումը՝ «Աշխատավորների դեպուտատների շրջանային և քաղաքային սովետների աշխատանքի հետագա բարելավման միջոցառումների մասին»։

Աշխատավորների դեպուտատների շրջանային և քաղաքային սովետները դիտելով որպես տեղերում կուսակցության և պետության քաղաքականության պրակտիկ իրականացումն ապահովող պետական մարմինների հանգուցային օղակ, ՍՄԿԿ Կենտրոնական կոմիտեն ընդգծեց. «...Կուսակցական կազմակերպությունները, առաջնորդվելով լենինյան սկզբունքներով, պարտավոր են միշտ նկատի ունենալ, որ բնակչությունը հաճախ սովետների աշխատանքի մակարդակով է դատում սովետական պետության ամբողջ քաղաքականության, նրա դեմոկրատական բնույթի մասին, որ այն ամենը, ինչ կապված է սովետների, սովետական իշխանության հետ, եղել ու մնում է ամբողջ կուսակցության գործը»։

* * *

Լինելով առավել մասսայական և առավել դեմոկրատական պետական կազմակերպություն, սովետները միաժամանակ ինտերնացիոնալ են։ Սովետական իշխանությունը ոչնչացրեց ամեն մի ազգային ճնշում, ապահովեց բոլոր ազգերի և ազգությունների փաստացի մասնակցությունը պետական կառավարմանը, ժողովրդական տնտեսության զարգացման հարցերի լուծմանը, նոր կյանքի կառուցմանը։ Դրա վառ ապացույց է պետական իշխանության բարձրագույն մարմնի՝ ՍՍՀՄ Գերագույն սովետի կառուցվածքը։ Նրա երկպալատային սիստեմը, Միությունների և Ազգությունների սովետների գոյությունը



հանրապետությունների սուվերեն իրավունքների երաշխիք են։ Երկու պալատներն էլ օժտված են հավասար իրավունքներով՝ օրենսդրական նախաձեռնության, օրենքների ընդունման և հաստատման գործում։

Ազգությունների սովետում, որը սովետական բազմազգ ժողովրդի ազգային շահերի ներկայացուցչության բարձրագույն մարմինն է, յուրաքանչյուր միութենական հանրապետություն, անկախ տերիտորիայի մեծությունից և բնակչության թվից, ունի նույն քանակով դեպուտատներ։ Ժողովուրդների իրավահավասարության երաշխիքներից մեկն էլ այն է, որ միութենական ամեն մի հանրապետության գերագույն սովետի նախագահության նախագահը պարտադիր ընտրվում է ՍՍՀՄ Գերագույն սովետի նախագահության նախագահի տեղակալի պոստում։

ՍՍՀՄ Գերագույն սովետի երկրորդ պալատի ստեղծման անհրաժեշտությունն ընդգծվեց դեռևս կուսակցության XII համագումարում (1923 թ.)։

Միության բարձրագույն մարմինները, ասված է ազգային հարցի մասին համագումարի որոշման մեջ, պետք է այնպես կառուցվեն, որ նրանք արտացոլեն ո՛չ միայն Միության բոլոր ազգությունների ընդհանուր կարիքներն ու պահանջները, այլև առանձին ազգությունների հատուկ կարիքներն ու պահանջները։

Համագումարը հանձնարարում է, որպես գործնական միջոցներ, հասնել այն բանին, որ Միության կենտրոնական մարմինները ստեղծելիս ապահովված լինի առանձին հանրապետությունների իրավունքների ու պարտականությունների հավասարությունը՝ ինչպես նրանց փոխադարձ հարաբերությունների մեջ, այնպես էլ Միության կենտրոնական իշխանության վերաբերմամբ. Միության բարձրագույն մարմինների սիստեմում հիմնվի, առանց բացառության, բոլոր ազգային հանրապետությունների ու ազգային մարզերի ներկայացուցչության հատուկ մարմին՝ հավասարության հիմունքներով, ըստ հնարավորին հաշվի առնելով այդ հանրապետությունների կազմի մեջ մտնող բոլոր ազգությունների ներկայացուցչությունը. Միության գործադիր մարմինները կառուցվեն այնպիսի հիմունքներով, որոնք ապահովեն հանրապետությունների ներկայացուցիչների ռեալ մասնակցությունն այդ մարմիններում և բավարարեն Միության ժողովուրդների կարիքներն ու պահանջները։

Համագումարը պահանջեց հրատարակել «...հատուկ օրենքներ, որոնք ապահովեն մայրենի լեզվի գործածումը պետական բոլոր մարմիններում և տեղական ազգային բնակչությունն ու ազգային փոքրամասնություններն սպասարկող բոլոր հիմնարկներում,— օրենքներ, որոնք ամբողջ հեղափոխական խստությամբ հետապնդեն ու պատժեն ազգային իրավունքների և առանձնապես ազգային փոքրամասնությունների իրավունքների բոլոր խախտողներին» (ՍՄԿԿ-ն... բանաձևերում ու որոշումներում», I մաս, էջ 915)։

Ազգությունների սովետն ստեղծվեց 1924 թվականին և լայն գործունեություն ծավալեց։ Այսպես, նրա նախաձեռնությամբ 1925 թվականին ՍՍՀՄ Կենտգործկոմը որոշում ընդունեց հետամնաց ժողովուրդներին օգնելու հատուկ ֆոնդ ստեղծելու մասին։ Միութենական բյուջեից կատարված հատկացումները վճռական դեր խաղացին ազգային հանրապետությունների էկոնոմիկայի վերականգնման ու զարգացման գործում։ Միայն առաջին հնգամյակում Միջին Ասիայի հանրապետությունների էկոնոմիկայի և կուլտուրայի զարգացման համար հատկացվել է ավելի քան երկուսուկես միլիարդ ռուբլի։

*ՍՍՀՄ Կենտգործկոմի և Ժողկոմսովետի 1929 թվականի դեկտեմբերի 21-ի որոշմամբ, ՌՍՖՍՀ բյուջեին, որպես առավել զարգացած հանրապետություն, հատկացվեց ՌՍՖՍՀ արդյունագործական հարկի մուտքերի 64,3 տոկոսը, իսկ մնացած 35,7 տոկոսը փոխանցվեց համամիութենական բյուջե և օգտագործվեց մյուս միութենական հանրապետությունների կարիքների համար։ 1928—1932 թթ. ժողովրդական տնտեսության զարգացման համար կատարված ծախսերը մեծացան ՌՍՖՍՀ կենտրոնական շրջաններում 49 տոկոսով, իսկ Թուրքմենական ՍՍՀ-ում՝ 3, Ուզբեկական ՍՍՀ-ում՝ 2,5 անգամ։*

*ՍՍՀՄ պետական իշխանության մարմինների ինտերնացիոնալ բնույթի ցայտուն ապացույց է սովետների դեպուտատների ազգային կազմը։ Սովետներում, առանց բացառության, ներկայացված են մեր երկրում բնակվող բոլոր ազգությունները։ Այսպես, ՍՍՀՄ ութերորդ գումարման Գերագույն սովետում դեպուտատներ են ընտրված 62 ազգություններից։ Միութենական և ինքնավար հանրապետությունների գերագույն սովետներում ներկայումս ընտրված են 66, իսկ տեղական սովետներում՝ ավելի քան 100 ազգությունների ներկայացուցիչներ։*

*ՍՍՀՄ ութերորդ գումարման Գերագույն սովետում ընտրված է 1517 դեպուտատ, որոնցից Ազգությունների սովետում՝ 750 դեպուտատ, նրանց թվում են Վրաստանի Ինգուրիի ՀԷԿ-ի շինարարության հորատող բանվոր Ն. Մ. Աբակելիան, Կիրգիզիայից՝ կոլտնտեսուհի Կ. Սուլայմանովան, տաջիկուհի, ֆաբրիկայի բրիգադիր Ի. Նորկուզիևան. չուկչի Լ. Գ. Տինեյը ՍՍՀՄ Գերագույն սովետի նախագահության անդամ է։*

*Հայկական ՍՍՀ Գերագույն սովետի դեպուտատներ են ընտրված ռուս, «Հայտրանսշին» տրեստի բանվորուհի Ա. Ն. Կալակովան, ադրբեջանուհի, Վարդենիսի շրջանի Զոդ գյուղի կոլտնտեսության կոլտնտեսուհի Ն. Հ. Նաբիևան, քրդուհի, Ապարանի շրջանի Ջամշլուի սովխոզի կթվորուհի Զ. Վ. Սադոյանը։ Հայկական ՍՍՀ Գերագույն սովետի նախագահի տեղակալներ են ընտրված Լենինականի Լուկաշինի անվան մանվածքային ֆաբրիկայի բանվորուհի, ռուս Մ. Դ. Ֆիլիպովան, «Ռյա թազա» թերթի խմբագիր, քուրդ Մ. Ա. Մստոյանը։*

*Սովետների կազմավորման ու գործունեության մեջ ազգային իրավահավասարության սկզբունքը լենինյան ազգային քաղաքականության կոնկրետ մարմնավորումն է սովետական պետական շինարարության պրակտիկայում։*

*Դեռևս 1917 թվականի նոյեմբերի 15-ին հրապարակվեց Ռուսաստանի ժողովուրդների իրավունքների լենինյան դեկլարացիան, որտեղ ձևակերպված են սովետական իշխանության ազգային քաղաքականության սկզբունքները։ Այն, որպես անխախտ օրենք, սահմանեց Ռուսաստանի ժողովուրդների հավասարությունը, սուվերենությունը և ազատ զարգացումը, նրանց ինքնորոշման իրավունքը՝ ընդհուպ մինչև անջատվելը և ինքնուրույն պետություն կազմելը։*

*Լենինն ընդգծում էր, որ ազգային նախապաշարումների կենսունակությունը, Ռուսաստանի ազգերի և ազգությունների տնտեսական ու կուլտուրական զարգացման տարբեր մակարդակները պահանջում են հատուկ զգուշություն ազգային զգացմունքի նկատմամբ, ազգերի հավասարության իրավունքի կիրառում՝ անվստահության հողը վերացնելու և ազգերի ամենասերտ միության հասնելու համար։*

*Ազգերի այդպիսի միության պետական-իրավական ձևեր հանդիսացան սովետական ֆեդերացիան և ինքնավարությունը։ Աշխատավոր և շահագործվող ժողովրդի իրավունքների դեկլարացիայում, որ գրել է Վ. Ի. Լենինը, սահմանվում էր, որ Ռուսաստանի Սովետական Հանրապետությունը հիմնվում է ազգերի ազատ միության հիման վրա որպես սովետական ազգային հանրապետությունների ֆեդերացիա։*





*Հայտնի է, որ Լենինը մերժեց ավտոնոմիզացիայի պլանը, որի համաձայն անկախ միութենական հանրապետությունները ՌՍՖՍՀ կազմի մեջ պետք է մտնեին ինքնավարության իրավունքով։ Լենինն ընդգծում էր, որ չպետք է ոչնչացնել հանրապետությունների անկախությունը, այլ ստեղծել իրավահավասար հանրապետությունների միություն։*

*«Մենք ազգերի* կամավոր *միություն ենք ուզում,— 1919 թվականին ասում էր Լենինը,— այնպիսի միություն, որը ո՛չ մի բռնություն չթույլատրեր մի ազգի կողմից մյուսի վրա, այնպիսի միություն, որը հիմնված լիներ ամենալրիվ վստահության վրա, եղբայրական միասնության պարզ գիտակցության վրա, լիովին կամավոր համաձայնության վրա» (Երկեր, հ. 30, էջ 368)։*

*1922 թվականի դեկտեմբերի 30-ին, լենինյան ցուցումներին լիովին համապատասխան, ստեղծվեց Սովետական Սոցիալիստական Հանրապետությունների Միությունը, որը պրոլետարական ինտերնացիոնալիզմի կենդանի մարմնավորումն է, նրանում ապրող բոլոր ազգերի և ազգությունների էկոնոմիկայի ու կուլտուրայի վերելքի, բարեկամության, փոխադարձ հարգանքի և ամրապնդվող միասնության գիտակցման վրա հիմնված ազգամիջյան նոր հարաբերությունների օրինակ։*

*Իրավահավասար ժողովուրդների անխախտ միություն առաջին անգամ ստեղծվեց մեր երկրում՝ Հոկտեմբերյան սոցիալիստական մեծ հեղափոխության շնորհիվ, երբ կոլեկտիվ սեփականությունն ու շահագործումից ձերբազատված աշխատանքը խարխլեցին ազգային երկպառակությունը, ոչնչացրին ազգային ճնշումը և այն ծնող պատճառները։*

*Հոկտեմբերյան հեղափոխության հաղթանակը բացեց մեր բազմազգ երկրի ժողովուրդների եղբայրական միավորման ճանապարհը, դրեց հասարակության կյանքի ամենաբարդ հարցերի, այդ թվում՝ ազգային հարցի լուծման սկիզբը։*

*Համաշխարհային պատմությունը դեռ չէր տեսել ազգերի ու ազգությունների շահերի ու նպատակների, կամքի ու գործողությունների այնպիսի միասնություն, այնպիսի հոգեհարազատություն, ինչպիսիք ստեղծվել են մեր եղբայրական միության մեջ։*

«Միայն կոմունիստական կուսակցությունը, որն արտահայտում է բանվոր դասակարգի, բոլոր աշխատավորների կենսական շահերը, որը վարում է լենինյան ազգային քաղաքականություն, կարող էր բոլոր ազգերին ու ազգություններին համախմբել միասնական ինտերնացիոնալ եղբայրության մեջ և նրանց ջանքերն ուղղել նոր հասարակարգի ստեղծման նպատակին» *(«ՍՍՀՄ կազմավորման 50-ամյակի նախապատրաստության մասին ՍՄԿԿ Կենտկոմի որոշումը», էջ 8—9)։*

*Սովետական Սոցիալիստական Հանրապետությունների Միությունը միասնական պետություն է։ Դրա հետ մեկտեղ, յուրաքանչյուր հանրապետություն ունի իր սեփական պետականությունը, իր սահմանադրությունը, քննարկում և լուծում է պետական, տնտեսական և սոցիալ-կուլտուրական շինարարության*

բազմազան հարցեր։ Այսպես, Հայկական ՍՍՀ Գերագույն սովետի սեսիաներում վերջին տարիներին քննարկվել են Հայկական ՍՍՀ-ում բնակչության բժշկական սպասարկման, գյուղում առևտրի կազմակերպման, կուլտուրայի հուշարձանների պահպանման, երիտասարդության գեղագիտական դաստիարակության և այլ հարցեր։

Ընդլայնվել են միութենական հանրապետությունների իրավունքները իրավաբանության բնագավառում։ 1957 թվականին ՍՍՀՄ Գերագույն սովետը օրենք ընդունեց միութենական հանրապետությունների դատակազմության, քաղաքացիական, քրեական և դատավարական օրենքների ընդունման վերաբերյալ օրենսդրությունը ՍՍՀՄ իրավասությունից միութենական հանրապետությունների տնօրինությանը հանձնելու մասին։ 1957 թվականի օրենքը ՍՍՀ Միության տնօրինությանը թողեց դատակազմության և դատավարության մասին քաղաքացիական և քրեական օրենսդրության հիմունքների սահմանումը։ Օրենսդրության բնագավառում միութենական հանրապետությունների իրավունքների ընդլայնումը ոչ մի չափով չի սասանում սոցիալիստական օրինականության միասնության սկզբունքը։ Վերջին տարիներին միութենական հանրապետություններում ընդունված օրենսգրքերն ու օրենքները հիմնվում են ՍՍՀՄ Գերագույն սովետի մշակած՝ բոլոր հանրապետությունների համար ընդհանուր օրենսդրության հիմունքների վրա։

Միութենական հանրապետությունների դերի բարձրացմանը նպաստեցին 1970 թվականին ՍՍՀՄ արդարադատության միութենական-հանրապետական մինիստրության և նրա տեղական մարմինների կազմավորումը, ինչպես նաև միութենական հանրապետությունների գերագույն դատարանների իրավասության ընդլայնումը։ Վերջիններիս առաջին անգամ վերապահվել է օրենսդրական նախաձեռնության իրավունք։

Ընդլայնվել են միութենական հանրապետությունների իրավունքները նրանց տերիտորիաների վարչական կազմակերպական հարցերում։ Այժմ ՍՍՀ Միությունը տնօրինում է միայն ինքնավար հանրապետությունների և ինքնավար մարզերի կազմավորումը. վարչատերիտորիալ կառուցվածքի հարցերի լուծումը հանձնված է միութենական հանրապետությունների տնօրինությանը։

* * *

Աշխատավորների իշխանության նոր, ինտերնացիոնալ ձևը նպաստեց ազգերի և ազգությունների սոցիալ-տնտեսական, քաղաքական անհավասարության վերացմանը, ազգային միութենական և ինքնավար հանրապետությունների ու մարզերի էկոնոմիկայի ու կուլտուրայի աննախընթաց վերելքին։

Ցարական Ռուսաստանը «ժողովուրդների բանտ» էր. այնտեղ ոչ ռուս ազգերն ու ազգությունները, որոնք կազմում էին բնակչության կեսից ավելին, գտնվում էին կատարյալ իրավազուրկ վիճակում։ Ցարական ինքնակալությունը՝ աշխատավորների ազատագրական ձգտումների այդ ոխերիմ հակառակորդը, ջանում էր այլազգի ժողովուրդների մեջ սպանել ամեն մի պետականության սաղմ, խեղել նրանց կուլտուրան, լեզուն։ Այստեղից էլ այն հակակրանքն ու անվստահությունը, որ տածում էին Ռուսաստանի տերիտորիայում բնակվող այլազգի ժողովուրդները ռուսական պետության նկատմամբ։

«Ռուսաստանին միացված ժողովուրդները,— ասել է Մ. Ի. Կալինինը,— որոնց ամեն քայլափոխում ճնշում, շահագործում, թալանում և անպատվում



էին չինովնիկներն ու գաղութարարները, բնական է, ատում էին ռուսական պետությանը» (Մ. Ի. Կալինին. Դաստիարակության և ուսուցման մասին, էջ 111)։

Ցարիզմը, արտահայտելով շահագործող դասակարգերի կամքը, շահագործվող ժողովուրդների տնտեսական և կուլտուրական հետամնացություն պահպանելու գիծ էր վարում։ Այդօրինակ քաղաքականության հետևանքով տնտեսական և կուլտուրական խիստ անհավասարություն էր առաջացել Ռուսաստանի կենտրոնի և նրա ծայրամասերի միջև. վերջիններս գտնվում էին գաղութների կամ կիսագաղութների դրության մեջ, հանդես էին գալիս իբրև զուտ հումք մատակարարողներ. այդ էլ հենց դառնում էր նրանց հետամնացության պատճառ և խանգարում ծայրամասերում արդյունաբերական պրոլետարիատի առաջացմանն ու զարգացմանը։

Ահա թե ինչու սովետական իշխանության առաջին իսկ տարիներից Վ. Ի. Լենինը պահանջում էր ուժեղացնել հետամնաց և թույլ ազգերին ցույց տրվող օգնությունը, աջակցելով յուրաքանչյուր ազգի բանվորների ու գյուղացիների ինքնուրույն կազմակերպմանն ու լուսավորմանը։ Սովետների առաջին համագումարի օրերին Վ. Ի. Լենինը կրկին ու կրկին հիշեցնում էր, որ կուսակցության ազգային քաղաքականության գլխավոր խնդիրը անցյալից ժառանգություն մնացած ազգերի անհավասարության վերացումն է. «Ով չի հասկացել այս,— գրում էր Լենինը,— նա չի հասկացել իրոք պրոլետարական վերաբերմունքը դեպի ազգային հարցը, նա, ըստ էության, մնացել է մանրբուրժուական տեսակետի վրա, ուստի և չի կարող ամեն մի րոպե չգլորվել դեպի բուրժուական տեսակետը» (Երկեր, հ. 36, էջ 703)։

Կոմունիստական կուսակցությունն արմատական միջոցներ ձեռք առավ սովետական ժողովուրդների փաստական անհավասարությունը վերացնելու համար։

Դեռևս ՌԿ(բ)Կ X համագումարը (1921 թ.) խնդիր դրեց պլանաչափ արդյունաբերություն արմատավորել ծայրամասերում, հետևողականորեն վերացնել ազգային անհավասարության մնացորդները, օգնել ոչ ռուս ժողովուրդներին՝ հասնելու առաջ անցած Կենտրոնական Ռուսաստանին, զարգացնելու և ամրապնդելու իրենց մոտ սովետական պետականությունը՝ այդ ժողովուրդների ազգային-կենցաղային պայմաններին համապատասխան։

ՀամԿ(բ)Կ XV համագումարը (1927 թ.) ցուցում տվեց հատուկ ուշադրություն նվիրել ազգային հետամնաց ծայրամասերի և շրջանների էկոնոմիկայի և կուլտուրայի վերելքի հարցերին, «...ելնելով նրանց տնտեսական և կուլտուրական հետամնացությունն աստիճանաբար լիկվիդացնելու անհրաժեշտությունից, համապատասխանաբար նախատեսելով նրանց էկոնոմիկայի և կուլտուրայի զարգացման ավելի արագ տեմպ, ելնելով այդ շրջանների կարիքներն ու պահանջները Միության կարիքների և պահանջների հետ շաղկապելուց» (ՍՄԿԿ... բանաձևերում ու որոշումներում, II մաս, էջ 586)։

ՀամԿ(բ)Կ XVI կոնֆերանսը (1929 թ.), որպես առաջին հնգամյա պլանի հիմնական խնդիրներից մեկը, առաջ քաշեց ազգային հանրապետությունների, հետամնաց շրջանների և մարզերի տնտեսական և կուլտուրական վերելքի հարցը։

Արտադրաուժերի ռացիոնալ տեղաբաշխումը, բնական հարստությունների պլանաչափ մշակումը, հանրապետությունների միջև աշխատանքի սոցիալիս-

տական բաժանման կատարելագործումն ապահովեցին կուսակցության ցուցումների կատարումը։

Կուսակցությունը հաջողությամբ լուծեց ազգային հարցի կենտրոնական խնդիրը՝ նախկինում ճնշված ազգերի տնտեսական և քաղաքական հետամնացության վերացումը։ Սովետական Միության մյուս ժողովուրդների, ամենից առաջ ռուս մեծ ժողովրդի եղբայրական, անշահախնդիր օգնությամբ այդ ազգերը կարողացան պատմական կարճ ժամանակամիջոցում հաղթահարել անցյալից ժառանգություն մնացած հետամնացությունը և հասնել զարգացած սովետական ազգերի մակարդակին։

Այդ են վկայում հետևյալ տվյալները.

Արդյունաբերական արտադրանքի ընդհանուր ծավալի աճի տեմպերը ըստ միութենական հանրապետությունների 1913—1970 թվականներին (1913 թ. = 1)

| | 1913 թ. | 1940 թ. | 1950 թ. | 1960 թ. | 1970 թ. |
|---|---|---|---|---|---|
| ՍՍՀՄ | 1 | 7,7 | 13 | 40 | 92 |
| ՌՍՖՍՀ | 1 | 8,7 | 15 | 43 | 92 |
| Ուկրաինական ՍՍՀ | 1 | 7,3 | 8,4 | 27 | 61 |
| Բելոռուսական ՍՍՀ | 1 | 8,1 | 9,3 | 34 | 101 |
| Ուզբեկական ՍՍՀ | 1 | 4,7 | 8,7 | 20 | 41 |
| այդ թվում առանց բամբակեղենի ձեռնարկությունների | 1 | 6,2 | 13 | 34 | 79 |
| Ղազախական ՍՍՀ | 1 | 7,8 | 18 | 57 | 146 |
| Վրացական ՍՍՀ | 1 | 10 | 16 | 40 | 85 |
| Ադրբեջանական ՍՍՀ | 1 | 5,9 | 8,3 | 17 | 33 |
| Լիտվական ՍՍՀ | 1 | 2,6 | 4,9 | 27 | 80 |
| Մոլդավական ՍՍՀ | 1 | 5,8 | 12 | 52 | 146 |
| Լատվիական ՍՍՀ | 1 | 0,9 | 2,8 | 10 | 26 |
| Կիրգիզական ՍՍՀ | 1 | 9,9 | 21 | 61 | 188 |
| Տաջիկական ՍՍՀ | 1 | 8,8 | 13 | 38 | 87 |
| Հայկական ՍՍՀ | 1 | 8,7 | 22 | 68 | 184 |
| Թուրքմենական ՍՍՀ | 1 | 6,7 | 9,6 | 22 | 45 |
| այդ թվում առանց բամբակեղենի ձեռնարկությունների | 1 | 6,5 | 10 | 25 | 51 |
| Էստոնական ՍՍՀ | 1 | 1,3 | 4,3 | 15 | 35 |

Այսպիսով, սովետական իշխանության տարիներին բարձրացավ միութենական բոլոր հանրապետությունների և, ամբողջությամբ վերցրած, երկրի արդյունաբերական պոտենցիալը։

Արդեն 1930-ական թվականների վերջերին ազգային հանրապետությունների ինդուստրիալ զարգացման մեջ մեծ փոփոխություններ տեղի ունեցան։ ՍՍՀՄ-ում խոշոր արդյունաբերության արտադրանքի ծավալը 1932 թվականին ավելի քան երկու անգամ գերազանցեց 1929 թվականի մակարդակը։ Այդ նույն ժամանակաշրջանում արդյունաբերության վերականգնման ու զարգացման տեմպերը Բելոռուսիայում 2 անգամ բարձր էին, քան Միության մեջ ամբող- ջությամբ վերցրած, իսկ Միջին Ասիայի մի շարք հանրապետություններում է՛լ ավելի բարձր։ 1937 թ. Ղազախստանում արդեն գործում էին 2108 ար- դյունաբերական խոշոր ձեռնարկություններ՝ 146.546 բանվորներով, Ուզբեկս-



տանում՝ համապատասխանաբար՝ 1068 և 114.139, Թուրքմենստանում՝ 308 և 30.926։

Միութենական հանրապետություններն այժմ ունեն հզոր ինդուստրիալ բազա։ Սովետական իշխանության տարիներին արդյունաբերական արտադրանքի ծավալն, օրինակ, աճել է Կիրգիզական ՍՍՀ-ում 211 անգամ, Հայկական ՍՍՀ-ում՝ 201, Մոլդավական ՍՍՀ-ում՝ 166 և Ղազախական ՍՍՀ-ում՝ 158 անգամ։ Էլեկտրաէներգիայի արտադրությունը միութենական հանրապետությունների մեծ մասում այժմ մի քանի անգամ գերազանցում է դրա արտադրությունը ամբողջ մինչհեղափոխական Ռուսաստանում. ՌՍՖՍՀ-ում՝ 248 անգամ, Ուկրաինայում՝ 74, Ղազախստանում՝ 18, Ուզբեկստանում՝ 10,5, Բելոռուսիայում՝ 9, Էստոնիայում՝ 6,4, Ադրբեջանում՝ 6 անգամ և այլն։

Մեր երկրում ստեղծվել է սոցիալիստական զարգացած գյուղատնտեսական արտադրություն։ Իրականացվել է այդ բնագավառի տեխնիկական վերազինումը։ Նրա հիմնական արտադրաֆոնդերը, 1928 թվականի համեմատությամբ, մեծացել են գրեթե 6 անգամ, էներգետիկ կարողություններն այդ նույն ժամանակում աճել են 17 անգամ։

Սովետական իշխանության տարիներին գյուղատնտեսական արտադրանքի ծավալը երկրում աճել է 3,1 անգամ, իսկ Տաջիկստանում՝ 7,8, Ղազախստանում՝ 6,4, Վրաստանում՝ 6,3, Կիրգիզիայում՝ 5,7, Մոլդավիայում՝ 4,8 անգամ։

Թե կուսակցության լենինյան ազգային քաղաքականությունը ինչ տվեց նախկինում ճնշված ու կեղեքված ժողովուրդներին՝ դա կարելի է ցույց տալ նաև Սովետական Հայաստանի՝ ՍՍՀՄ կազմի մեջ մտնող եղբայրական 15 իրավահավասար հանրապետություններից մեկի օրինակով։

«Սովետական Հայաստանի պատմական փորձը կրկին ու կրկին համոզում է, որ ազգի իսկական ծաղկումը ձեռք է բերվում ո՛չ թե ազգային պարփակման ու մեկուսացման ուղիներով, այլ սոցիալիստական ազգերի ու ժողովուրդների եղբայրական ընտանիքում փոխադարձաբար միմյանց հարստացնող ներդաշնակ զարգացման շնորհիվ» (Լ. Ի. Բրեժնև. Սովետական Հայաստանի 50 տարին, էջ 25—26)։

Հայաստանի աշխատավորները սովետական ազգերի ու ժողովուրդների մեծ ընտանիքում քայլ առ քայլ ստեղծեցին և ամրապնդեցին իրենց վերածնված հայրենիքը, իրենց պետականությունը։ Սովետական իշխանության տարիները եղան հայ ժողովրդի նյութական և հոգևոր կյանքի բուռն ծաղկման տարիներ։

Աշխարհահռչակ բևեռախույզ, դոկտոր Ֆրիտյոֆ Նանսենը 1925 թվականին մասնակցեց Շիրկանալի բացմանը, որի վրա կառուցվեց Լենինականի հիդրոէլեկտրակայանը՝ 5000 կվտ կարողությամբ։ Մեկնելով Հայաստանից, նա խանդավառ տողեր գրեց Շիրկանալի մասին, որով, իր խոսքերով ասած, «Նոր դարաշրջան էր սկսվում մատաղ հայ պետության համար»։

Իսկ ի՞նչ կասեր հայ ժողովրդի լավ բարեկամը, երբ տեսներ, որ այսօր Հայաստանում կառուցվում է աշխարհում օրինակը չունեցող Արփա-Սևան թունելը՝ 48 կիլոմետր երկարությամբ, Արարատյան դաշտի շրջանում հիմք է դրվել ատոմային հսկա էլեկտրակայանի շինարարությանը, որն ունենալու է 800 հազար կվտ կարողություն։

5.000 և 800.000— այս երկու թվերը ցույց են տալիս, թե որտեղից ուր է հասել Սովետական Հայաստանը, ցույց են տալիս նրա երեկն ու այսօրը։

Իսկ վաղը...

Մենք տեսնում ենք եռակի շքանշանակիր Սովետական Հայաստանի նաև վաղվա օրը, հեռանկարը՝ ավելի վառ, ավելի պայծառ։

Իններորդ հնգամյակի ընթացքում Հայկական ՍՍՀ արդյունաբերությունը կաճի է՛լ ավելի բարձր տեմպերով։ Եթե ամբողջ երկրում արդյունաբերական արտադրանքի թողարկումը կավելանա 42—46 տոկոսով, ապա Հայաստանում այն կաճի 64 տոկոսով։ Հետագայում լայնորեն կզարգանան էներգետիկան, գունավոր մետալուրգիան, քիմիական, մեքենաշինական, սարքաշինական արդյունաբերությունը և արտադրության նոր կարևոր այլ ճյուղեր։

Ազգերի և ազգությունների տնտեսական և քաղաքական անհավասարության վերացումը, նրանց սուվերենությունը, միութենական հանրապետությունների իրավունքների ընդլայնումը նպաստավոր պայմաններ ստեղծեցին յուրաքանչյուր հանրապետության տնտեսության ու կուլտուրայի վերելքի, սեփական նյութական ռեսուրսներն արդյունավետ օգտագործելու համար։ Դրա շնորհիվ յուրաքանչյուր միութենական հանրապետություն ոչ միայն զարգացրեց իր սեփական արտադրաուժերը, այլև միաժամանակ հնարավորություն ունեցավ ավելի ու ավելի լայնորեն մասնակցելու կոմունիզմի նյութա-տեխնիկական բազայի ստեղծման համար սովետական բոլոր ժողովուրդների պայքարին։

Սոցիալիստական շինարարության առաջին տարիներին ՍՍՀՄ ազգային շատ հանրապետություններ միութենական պետությունից ստանում էին ավելի, քան իրենք այն ժամանակ կարող էին տալ ընդհանուր խնդիրների լուծմանը, իսկ այժմ այդ հանրապետությունները, վերացնելով իրենց հետամնացությունը, ավելի ու ավելի աճող ավանդ են ներդնում երկրի ժողտնտեսության մեջ։

ՍՍՀՄ-ի մեջ միավորված ազգային հանրապետությունների ծաղկումն ու բարգավաճումը վառ ապացույց են այն բանի, որ կուսակցությունը գտավ մեծ ու փոքր ժողովուրդների շահերին առավել համապատասխան, կենսունակ ու կայուն ազգային պետական շինարարության ձև՝ ազգերի սոցիալիստական համագործակցությունը— Սովետական Միությունը։

Տնտեսական, սոցիալ-քաղաքական և կուլտուրական զարգացման մակարդակների հավասարեցումը և վերելքը հանդիսացան ՍՍՀՄ-ի բոլոր հանրապետությունների արագ ու բազմակողմանի առաջադիմության կարևոր գործոնը, լիակատարությամբ բացահայտեցին սովետական բոլոր ազգերի և ազգությունների ստեղծարար եռանդը, ստեղծագործական ընդունակություններն ու տաղանդը և հօդս ցնդեցրին իմպերիալիզմի ջատագովների, հակակոմունիզմի և ռևիզիոնիզմի հերյուրանքները՝ ՍՍՀՄ-ում «ազգերի ոչ լրիվ իրավահավասարության մասին»։

Աշխատավորների իշխանության ինտերնացիոնալ բնույթը մեր երկրի ազգերին ու ազգություններին մղում է մերձեցման, ակտիվ և արդյունավետ համագործակցության։

Կուսակցության XXIV համագումարին ՍՄԿԿ Կենտկոմի հաշվետու զեկուցման առթիվ ընդունված բանաձևում ընդգծվում է, որ անհրաժեշտ է առաջիկայում էլ անշեղորեն անցկացնել Սովետական Սոցիալիստական Հանրապետությունների Միության ամրապնդման լենինյան կուրսը՝ ելնելով սովետական պետության շահերից, ինչպես նաև հաշվի առնել այն կազմող հանրապետություններից յուրաքանչյուրի զարգացման պայմանները, հետևողականորեն հասնել բոլոր սոցիալիստական ազգերի հետագա ծաղկմանը և նրանց աստիճանական մերձեցմանը։

## ՄԵԿՆԱԲԱՆՈՒՄ ԵՆՔ ՍՄԿԿ XXIV ՀԱՄԱԳՈՒՄԱՐԻ ՈՐՈՇՈՒՄՆԵՐԸ

# ՀԱՆՈՒՆ ԳԻՏԱՏԵԽՆԻԿԱԿԱՆ ՊՐՈԳՐԵՍԻ ԱՐԱԳԱՑՄԱՆ

Ս. Հ. ՄՈՎՍԻՍՅԱՆ

ՀՍՍՀ Մինիստրների սովետի նախագահի առաջին տեղակալ

Սովետական ժողովրդի ջանքերով հաջողությամբ կենսագործվող իններորդ հնգամյակը նշանավորում է մեր հասարակության հետագա առաջընթացի, կոմունիզմի նյութա-տեխնիկական բազայի կառուցման, երկրի տնտեսական ու պաշտպանական հզորության ամրապնդման կարևոր փուլը։

ՍՄԿԿ XXIV համագումարը ընթացիկ հնգամյակի գլխավոր խնդիրը համարեց սոցիալիստական արտադրության զարգացման արագ տեմպերի հիման վրա ժողովրդի կյանքի նյութական ու կուլտուրական մակարդակի զգալի վերելք։ 1971—1975 թվականներին նախատեսվում է ՍՍՀՄ ազգային եկամուտը մեծացնել 37—40, արդյունաբերական արտադրանքի արտադրությունը՝ 42—46, գյուղատնտեսական մթերքների տարեկան միջին արտադրությունը՝ 20—22 տոկոսով. բնակչության մեկ շնչին ընկնող ռեալ եկամուտները կաճեն գրեթե մեկ երրորդով։

Այսպիսին են 1971—1975 թվականների համար կոմունիստական կուսակցության և սովետական կառավարության նախագծած սոցիալիստական հայրենիքի տնտեսական առաջընթացի վեհ ծրագրի մի քանի ցուցանիշները։

Այս վիթխարի ծրագրի մեջ իրենց մասն ունեն յուրաքանչյուր եղբայրական սովետական սոցիալիստական հանրապետություն, ժողովրդական տնտեսության ամեն մի ճյուղ, ձեռնարկություն, սովխոզ ու կոլտնտեսություն, գիտական ու նախագծա-կոնստրուկտորային հիմնարկություն, մեր սոցիալիստական անծայրածիր հայրենիքի յուրաքանչյուր աշխատավոր։

Մեծ խնդիրներ են դրված Հայկական Սովետական Սոցիալիստական Հանրապետության առջև։ Ընթացիկ հնգամյակում Հայկական ՍՍՀ նյութական արտադրության ոլորտի բոլոր ճյուղերի համախառն արտադրանքը կավելանա 47—49 տոկոսով։ Արդյունաբերական արտադրանքի աճ է նախատեսված 64, իսկ գյուղատնտեսական արտադրանքի տարեկան միջին ծավալը (1966—1970 թվականների տարեկան միջին ծավալի համեմատությամբ), պլանավորված է ավելացնել 32 տոկոսով։ Ազգային եկամտի աճը հնգամյակի ընթացքում հանրապետությունում կկազմի 46 տոկոս։

Հնգամյակի առաջադրանքներում նախատեսված են աշխատանքի արտա-
դրողականության աճի ավելի արագ տեմպեր, քան անցած տարիներին։ Ար-
դյունաբերությունում այն կկազմի 38, շինարարության մեջ՝ 37, իսկ գյուղա-
տնտեսության հանրային սեկտորում՝ 40 տոկոս։ Աշխատանքի արտադրողա-
կանության բարձրացման հաշվին նախատեսվում է ստանալ արդյունաբերու-
թյան արտադրանքի ընդհանուր աճի 70, գյուղատնտեսական արտադրանքի՝
100, իսկ շինմոնտաժային աշխատանքների՝ մոտ 100 տոկոսը։

Լ. Ի. Բրեժնևը ՍՄԿԿ XXIV համագումարում անդրադառնալով կոմունիս-
տական կուսակցության ու սովետական կառավարության տնտեսական քաղա-
քականության արմատական հարցերին (ինչպես ռեսուրսների հարցը), որոնք
պետք է լուծենք երկրի առջև ծառացած վիթխարի կանխագծումներն իրակա-
նացնելու համար, նշեց՝ «...գլխավորը, որի վրա մենք պետք է հույս դնենք,
արտադրության արդյունավետության բարձրացումն է։ Եթե ավելի պարզ խո-
սելու լինենք, պրոբլեմի էությունն այն է, որ աշխատանքային, նյութա-
կան և ֆինանսական ծախսումների յուրաքանչյուր միավորի հաշվով էապես
մեծացվի արտադրության և ազգային եկամտի ծավալը։ Դա էլ, վերջին հաշ-
վով, հանրային աշխատանքի արտադրողականության բարձրացումն է»։

ՍՄԿԿ XXIV համագումարի որոշումներում հստակ նշված է, որ նախա-
տեսված տնտեսական և սոցիալական խնդիրների հաջող կենսագործման հա-
մար անհրաժեշտ է ամեն կերպ բարձրացնել հանրային արտադրության ար-
դյունավետությունը։ Դրա բարձրացման վճռական պայմանը գիտատեխնիկա-
կան առաջադիմության արագացումն է։

Անհրաժեշտ է, մի կողմից՝ ապահովել համապատասխան գիտական
կազմակերպությունների լիակատար շրջադարձն արտադրության առավել կա-
րևոր խնդիրների լուծման ոլորտը և, մյուս կողմից՝ ստեղծել այնպիսի պայ-
մաններ, որոնք ձեռնարկություններին խթանեն իրացնելու արտադրանքի նո-
րագույն նմուշներ, հետամուտ լինեն գիտատեխնիկական նորույթներին։

Գիտատեխնիկական պրոգրեսի զորեղ լծակ է ժողովրդա-տնտեսական
պլանը։ Հանրապետությունում գիտատեխնիկական առաջընթացի մակարդակի
և տեմպերի բարձրացման նպատակով Հայկական ՍՍՀ պետպլանը առաջին
անգամ մշակել է գիտահետազոտական աշխատանքների զարգացման հիմնա-
կան ուղղությունները և գիտության ու տեխնիկայի նվաճումները 1971—1975
թվականներին ՀՍՍՀ ժողովրդական տնտեսության տարբեր բնագավառներում
օգտագործելու հնգամյա պլան, որի հիման վրա ամեն տարի կազմվում են
գիտահետազոտական աշխատանքները և գիտության ու տեխնիկայի նվաճում-
ներն արտադրության մեջ ներդնելու ծրագրեր։

ՍՍՀՄ Մինիստրների սովետի գիտության և տեխնիկայի պետական կոմի-
տեի համաձայնությամբ, ՀՍՍՀ Մինիստրների սովետը հաստատել է ժողովր-
դական տնտեսության զարգացման կարևորագույն պրոբլեմների ցանկը, որի
հիման վրա կմշակվեն գիտատեխնիկական կանխատեսություններ ավելի եր-
կար ժամանակամիջոցի՝ մինչև 1990 թվականի համար։

Հանրապետության գիտական հիմնարկությունների աշխատանքների
կոորդինացման գործը բարելավելու, ինչպես նաև ժողովրդատնտեսական խո-
շոր նշանակություն ունեցող կարևորագույն գիտական պրոբլեմների կոմպլեք-
սային մշակումներ կազմակերպելու համար, հանրապետությունում ստեղծվել



են կոորդինացման միջգերատեսչական համապատասխան գիտական խոր-
հուրդներ. ինչպես՝ ՀՍՍՀ գիտությունների ակադեմիային առընթեր էկոնոմի-
կայի կոորդինացման, պետշինին առընթեր շինարարության ու շինանյութերի
արդյունաբերության միջգերատեսչական գիտատեխնիկական, ժողովրդական
տնտեսության կառավարման կատարելագործման հանրապետական միջգերա-
տեսչական խորհուրդներ, պետպլանին առընթեր գյուտարարության և պա-
տենտալիցենզիոն միջգերատեսչական հանձնաժողով և այլն։

Հանրապետության մինիստրությունների և գերատեսչությունների գիտա-
կան կազմակերպությունների գործունեության արդյունավետությունը բարձ-
րացնելու նպատակով, աշխատանքներ են տարվում կարգավորելու գիտական
հիմնարկությունների ցանցը։ Այսպես, ՀՍՍՀ Մինիստրների սովետը համա-
պատասխան որոշում ընդունեց գյուղատնտեսության գիտահետազոտական
հիմնարկությունների ցանցի կարգավորման, ռացիոնալ տեղաբաշխման և
մասնագիտացման վերաբերյալ։

Գիտատեխնիկական հիմնական պրոբլեմների լուծման նպատակով գիտա-
կան հետազոտությունների առանձին ուղղությունների ուժեղացման, ինչպես
նաև ժողովրդատնտեսական առանձնահատուկ նշանակություն ունեցող գիտա-
կան կարևորագույն պրոբլեմների և թեմաների գիտական մշակումների արա-
գացման համար ստեղծված է գիտության ֆինանսավորման և աշխատավար-
ձի ֆոնդի Հայկական ՍՍՀ Մինիստրների սովետի ռեզերվ։

Այսպես, այդ ռեզերվից գումարներ են հատկացվել՝ Երևանի պետական
համալսարանին՝ գունավոր մետալուրգիայի ձեռնարկությունների հանքային
հումքից և թափոններից հազվագյուտ և ցրված տարրերի կորզման մեթոդների
մշակման աշխատանքներն ընդլայնելու, գիտությունների ակադեմիայի ֆիզի-
կական հետազոտությունների ինստիտուտին՝ ակտիվ և նելինային բյուրեղ-
ների թողարկման փորձնական արտադրության կազմակերպման, ընդհանուր
և անօրգանական քիմիայի ինստիտուտին՝ հանքահարստացուցիչ ֆաբրիկանե-
րում նոր սիլիկատային լուծույթը որպես ֆլոտոռեագենտ ներդնելու հետ կապ-
ված մշակումների, կենդանաբանական ինստիտուտին՝ արարատյան որդան
կարմրի զարգացման պայմանների ուսումնասիրման և ժողովրդական տնտե-
սության մեջ օգտագործելու նոր, ավելի արդյունավետ հնարավորությունների
հետազոտումների համար և այլն։

Վերջին տարիներին գիտահետազոտական որոշ հիմնարկությունների գի-
տական թեմատիկան մոտեցել է հանրապետության ժողովրդական տնտեսու-
թյան զարգացման խնդիրներին։

Գիտությունների ակադեմիայի օրգանական քիմիայի ինստիտուտը սկսել
է մշակել՝ «Բիսերային պոլիվինիլացետատից գերմածուցիկ պոլիվինիլբուտի-
րալ ստանալու մեթոդները և տեխնոլոգիան» թեման։ Գիտությունների ակա-
դեմիայի քիմիական ֆիզիկայի լաբորատորիան հետազոտություններ է կա-
տարում «Խտացման փուլում անօրգանական նյութերի այրման մեխանիզմնե-
րը՝ պրոցեսի ընթացման սկզբնական տարբեր պարամետրերի և ռեժիմների
պայմաններում»։ Մեխանիկայի ինստիտուտը հետազոտում է բեռնված բաղա-
դրիչ մարմնի եզրի ծայրամասային մակերեսի լարվածության բնույթը՝ հարթ
լարվածության պայմաններում, որը ՍՍՀՄ Մինիստրների սովետին առընթեր
գյուտարարության և նորարարության գործերի պետական կոմիտեի կողմից
հաստատված է որպես նորարարություն։

Ժողովրդական տնտեսության մեջ կարևոր նշանակություն ունեցող գիտահետազոտական ավարտված աշխատանքների ներդրումն արագացնելու համար գիտական հիմնարկությունները կապեր են հաստատում այն ձեռնարկությունների հետ, որտեղ իրացվելու են դրանք։

Խիստ արժեքավոր են առավել բարձր հաճախականության, ռադիոֆիզիկայի բնագավառում գործնական մեծ նշանակություն ունեցող մշակումները, որոնք կատարվում են գիտությունների ակադեմիայի ռադիոֆիզիկայի և էլեկտրոնիկայի ինստիտուտում։ Ինստիտուտի մշակած նոր տիպի գերճշգրիտ էլեկտրոնային ջերմաչափը ներդրված է արտադրության մեջ։

Ֆիզիկական հետազոտությունների ինստիտուտը մշակել է Զոդի ոսկու հանքի կոմբինատի ցիանամիդ պարունակող թունավոր կեղտաջրերի մաքրման ռադիացիոն եղանակը, որը և կլուծի ջրային պաշարները թունավոր բաղադրամասերից ձերբազատելու պրոբլեմը։ Նուրբ օրգանական քիմիայի ինստիտուտը սինթեզել և կլինիկական փորձարկման է հանձնել նոր դեղամիջոցներ։ Բուսաբանական ինստիտուտն առաջարկություններ է արել արդյունաբերական և պաշտպանիչ տարբեր տեսակի անտառատնկումների համար բույսերի տեսակների ընտրության վերաբերյալ։ Ֆիզիոլոգիայի ինստիտուտում մշակվել և արտադրությանն է հանձնվել գյուղատնտեսական թռչունների վիտամինային և միկրոտարր սննդի հիմնավորված և տնտեսապես արդյունավետ նորմաներ։

Գիտության և տեխնիկայի զարգացման գործում ձեռք բերած հաջողությունների համար ՍՍՀՄ պետական մրցանակի են արժանացել մաթեմատիկական մեքենաների գիտահետազոտական ինստիտուտի և էլեկտրոնային հաշվիչ մեքենաների փորձնական գործարանի մի խումբ աշխատողներ՝ միկրոծրագրային կառավարումով «Նաիրի—3» էլեկտրոնային հաշվիչ մեքենայի մշակման և ներդրման համար։

Հայկական ՍՍՀ պետական մրցանակներ են շնորհվել խաղողագործության, գինեգործության և պտղաբուծության գիտահետազոտական ինստիտուտի մի խումբ աշխատակիցներին՝ պտղաբուծության գիտական հիմքերի մշակման և Հայաստանի լեռնային բարձրադիր գոտիներում դրանց ներդրման համար։ Տեխնիկայի բնագավառում մրցանակների արժանացան Կիրովականի Ա. Մյասնիկյանի անվան քիմիական կոմբինատի և Արզնիի «Բյուրեղ» արդյունաբերական միավորման մի խումբ աշխատողներ՝ սինթետիկ կորունդից տարբեր իրերի սերիական արտադրության տեխնոլոգիայի մշակման և արտադրության կազմակերպման, մետաղահատ հաստոցների էքսպերիմենտալ գիտահետազոտական ինստիտուտի Անդրկովկասի մասնաճյուղի աշխատողները՝ մասնագիտացված մրրկապատճենահատ հաստոցների ստեղծման և ներդրման, Երևանի Ս. Մ. Կիրովի անվան քիմիական կոմբինատի մի խումբ աշխատողներ՝ բնական գազի բաղադրության կայունացման եղանակի մշակման և արտադրության մեջ ներդրման համար, որն ապահովում է բարձրագույն դյուրավառ ածխաջրածիններ պարունակող գազերից ացետիլենի արտադրությունը։

Գիտության և տեխնիկայի նորագույն նվաճումներն արտադրության մեջ ներդնելու նպատակով 1971 թվականի՝ նոր հնգամյակի առաջին տարվա և ընթացիկ տարվա առաջին եռամսյակում, հանրապետության ժողովրդական տնտեսության տարբեր բնագավառներում իրագործվել են մի շարք միջոց-



առումներ, որոնց շնորհիվ ստացվել է տնտեսական զգալի արդյունք։ Մասնավորապես, արտադրությունում ներդրվել է մոտ 350 միջոցառում՝ արտադրապրոցեսների մեքենայացման և ավտոմատացման, ավելի կատարելագործված, առաջավոր տեխնոլոգիայի համար. յուրացված է հիսունից ավելի նոր տեսակի արտադրանքների արտադրությունը, կատարված են 170-ից ավելի կարևորագույն գիտահետազոտական, փորձնական և նախագծային-կոնստրուկտորական աշխատանքներ։

Շատ միջոցառումներ են իրականացվել գյուղատնտեսության, շինարարության, տրանսպորտի և ժողովրդական տնտեսության այլ բնագավառներում։ Զգալի աշխատանք է կատարվել հաշվիչ կենտրոնների ցանցի հետագա ընդլայնման նպատակով՝ օգտագործելով նորագույն էլեկտրոնային-հաշվիչ տեխնիկան։

Հանրապետության ձեռնարկությունների իրացրած, ժամանակակից տեխնիկայի պահանջները բավարարող նոր արտադրանքներից պետք է նշել Քանաքեռի ալյումինի գործարանում արտադրվող գերմաքուր փոլգան՝ էլեկտրալիտիկ կոնդենսատորների համար, նոր տեսակի քլորոպրենային կաուչուկը՝ Ս. Մ. Կիրովի անվան կոմբինատում. ուժային եռաֆազ տրանսֆորմատորները՝ Վ. Ի. Լենինի անվան էլեկտրամեքենաշինական գործարանում. պտտաբարձիչները, կոմպրեսորային շարժական կայանները, ժողովրդական լայն սպառման շատ ապրանքներ և այլն։

Որոշակի աշխատանք է կատարվել առաջին անգամ Սովետական Միությունում արտադրվող արդյունաբերական արտադրանքի նոր տեսակների թողարկման բնագավառում (այսպես, օրինակ, Երևանի ֆրեզերային հաստոցների գործարանի օպերացիոն ֆրեզերային, Կիրովականի ճշգրիտ հաստոցների գործարանի նոր տիպի, Զարենցավանի հաստոցաշինական գործարանի դարձուն գլխիկով և ժամացուցային ծրագրային կառավարումով ուղղահայաց հաստոցները)։ Բազմաթիվ նոր արդյունաբերական նմուշներ են ստեղծվել «Բյուրեղ» միավորման ձեռնարկություններում, Լենինականի անալիտիկ սարքերի, Սևանի գործադիր մեխանիզմների և այլ գործարաններում։

Սննդարդյունաբերության մեջ ներդրված են ժամում գինու 6000 շիշ արտադրող ավտոմատացված գծեր, ստեղծված են խաղողի վերամշակման կոմպլեքսային մեքենայացված հոսքային գծեր։

Ավտոմոբիլային ճանապարհների շահագործման և շինարարության մեջ ներդրված են ավտոմատացված ասֆալտ-բետոնային հինգ խառնիչներ։

Մեքենաշինական ձեռնարկություններում իրացված են մարմարի հղկման նոր տեսակի ալմաստե շրջանակների արդյունաբերական առաջին սերիան, ալմաստային մետաղապատ հղկող նոր գործիքների թողարկումը։ Պատրաստված և փորձարկված են շառավղա-գալլիկոնային նոր հաստոցի փորձանմուշները։ Ավտոպահեստամասերի գործարանում արմատավորված է ճշգրիտ ծավալային դրոշման եղանակով մասեր պատրաստելու նոր տեխնոլոգիա։

Գունավոր մետալուրգիայի ձեռնարկություններում կատարված են պլանով նախատեսված աշխատանքները. բաց եղանակով հանքավայրերի մշակման ինտենսիվությունը բարձրացնելու համար օգտագործվել են ջրալիցք և հատիկավոր պայթուցիկ նյութեր, մեքենայացվել է հորանցքերի լցման կոմպլեքսային պրոցեսը և այլն։

Քիմիական արդյունաբերության մեջ իրացված է մեթանոլով գտված պո-

լիվինիլային սոլիրտի արտադրությունը՝ պոլիգրաֆիական և ռադիոտեխնիկական արդյունաբերության կարիքների, սորբինաթթվի արտադրությունը սննդարդյունաբերության համար, 30 մմ լայնության ապակեպլանդային ժապավենի և այլ նոր նյութերի արտադրությունը։

Լենինականի տեքստիլ կոմբինատում ներդրվել են պնևմոտրանսպորտային ավտոմատ գործվածքային հաստոցներ։

Շինարարության մեջ արդյունավետ են գործադրվում թեթև բետոններից պատրաստված կրող կոնստրուկցիաները, ինչպես կառույցներում կիրառվող մեծ չափերի տարրերը, հանգույցները, պանելները և բլոկները, որոնք կրող և պատող կոնստրուկցիաների մի ամբողջություն են։

Կենցաղ-սպասարկման ձեռնարկություններում ներդրված են հագուստի քիմիական մաքրման հատուկ նյութեր, որոնց օգտագործումը հիմնական սարքավորումների արտադրողականությունը բարձրացնում է 20 տոկոսով և բարելավում մաքրման որակը։

Արդյունաբերության, տրանսպորտի և շինարարության մեջ նոր տեխնիկայի և տեխնոլոգիայի ներդրման նպատակով իրականացված միջոցառումները տարեկան հաշվարկով, տվեցին մի քանի տասնյակ միլիոն ռուբլու տնտեսական արդյունք։

Գյուղատնտեսության մեջ արմատավորված 20 միջոցառումներից տարեկան ստացվել է մի քանի միլիոն ռուբլու տնտեսական արդյունք։ Տնտեսապես ձեռնտու է հատկապես պոմիդորի նոր սորտերի ներդրումը, ինչպես նաև կարտոֆիլի ցանքսերի քիմիական քաղհանումը՝ կրոտիլինի և պրոմետրինի օգտագործմամբ։

Առաջավոր տեխնոլոգիայի, արտադրապրոցեսների մեքենայացման և ավտոմատացման արմատավորման պլանները հաջողությամբ են կատարում էլեկտրատեխնիկական, սարքաշինության, թեթև, փայտամշակման արդյունաբերության, քիմիական և նավթային մեքենաշինության ձեռնարկությունները, ջրային տնտեսության և մելիորացիայի մինիստրության կազմակերպությունները։

Դրանց կողքին կան նաև այնպիսի մինիստրություններ և գերատեսչություններ, որոնք չեն ապահովում գիտատեխնիկական առաջադիմության պլանների կատարումը։ Այդպիսիներից են կաթի-մսի արդյունաբերության, մթերումների, գյուղատնտեսության մինիստրությունները և այլն։

Տեխնիկական առաջադիմության արագացման կարևոր պայմաններն են աշխատավորների ստեղծագործական նախաձեռնության բարձրացումը, գյուտարարների ու ռացիոնալիզատորների մասսայական շարժումը, որոնք պայքարում են արտադրության կատարելագործման, բազմակողմանի մեքենայացման և աշխատանքի պայմանների բարելավման ու թեթևացման համար։

1971 թվականին ավելի քան 16 հազար հեղինակների 19 հազարից ավելի արված ռացիոնալիզատորական առաջարկություններից մոտ 16 հազարը ներդրվել է։ Գյուտարարության և ռացիոնալիզացիայի համար կատարված ծախսերը կազմում են 1,8 մլն ռուբլի, իսկ դրանց ներդրումից տարեկան տնտեսվեց մոտ 28,8 մլն ռուբլի։

Քիմիական արդյունաբերության ձեռնարկություններում արտադրության մեջ ներդրված գյուտարարական և ռացիոնալիզատորական առաջարկություններից տնտեսվեց 7,5 մլն ռուբլուց ավելի։ Այդ առումով աչքի են ընկնում



«Պոլիվինիլացետատ», կենցաղային քիմիայի, քիմիական ռեակտիվների գործարանների, ինչպես նաև Ս. Մ. Կիրովի անվան քիմկոմբինատի կոլեկտիվները։

Գունավոր մետալուրգիայի ձեռնարկությունները, մասնավորապես Քաջարանի, Ագարակի պղնձա-մոլիբդենային, Ալավերդու պղնձա-քիմիական և Հրազդանի լեռնա-քիմիական կոմբինատները, արտադրության մեջ ռացիոնալիզատորական առաջարկությունների ներդրումից տարեկան տնտեսել են 2 մլն ռուբլուց ավելի։

Այդ ասպարեզում զգալի գործ է արված էլեկտրատեխնիկական, սարքաշինության, հաստոցագործիքային արդյունաբերության ձեռնարկություններում։

Երեք միլիոնից ավելի գումար տնտեսեցին հանրապետության թեթև արդյունաբերության աշխատողները։ Կիրովականի տրիկոտաժի ֆաբրիկայում միայն հարթակար մեքենայի վրա ծածկակարի կարգավորման մեխանիզմի ներդրումից տնտեսվեց 200 հազար ռուբլուց ավելի։ Լենինականի Մայիսյան ապստամբության անվան կոմբինատի շատ աշխատողներ իրենց արժեքավոր առաջարկություններով զգալիորեն թեթևացրել են բանվորների աշխատանքային պայմանները և ստացել նշանակալի տնտեսական արդյունք։ Վերջնամշակման արտադրամասի վարպետի օգնական Ռոբերտ Վարդանյանն արել է 24 ռացիոնալիզատորական առաջարկություն, արտադրության պետի տեղակալ Ազատ Խուրշուդյանը՝ 19, գործվածքային արտադրության աշխատողներ Հրանտ Սարգսյանն ու Էդուարդ Մաջարյանը՝ 29, վերջնամշակման արտադրության վերանորոգման-մեխանիկական բաժանմունքի պետ Ալբերտ Ասլանյանը՝ 16։

Այսպիսով, արտադրության առաջավորներն իրենց ստեղծագործական ակտիվ մասնակցությամբ կենսագործում են մեր կուսակցության XXIV համագումարի որոշումները՝ գիտատեխնիկական առաջընթացի արագացման և հանրային արտադրության արդյունավետության բարձրացման մասին։ Նրանց ամենօրյա օգնություն են ցույց տալիս կուսակցական և արհմիութենական սկզբնական կազմակերպությունները, ամեն կերպ խրախուսում նորարարների նախաձեռնությունը։

Գիտատեխնիկական առաջընթացի արագացման և հանրային արտադրության արդյունավետության բարձրացման համար շատ կարևոր է նաև կատարելագործել արդյունաբերության կառավարման ձևերը։ Ուստի, ինչպես նշված է մեր կուսակցության XXIV համագումարի որոշումներում, անհրաժեշտ է զգալիորեն ընդլայնել մշակումներն ու հետազոտությունները հենց արդյունաբերության մեջ, ձեռնարկություններում ստեղծել կոնստրուկտորական բյուրոներ, փորձարկման հզոր բազաներ։ Եվ այդ բոլորն ի վիճակի են անելու միայն խոշոր միավորումներն ու կոմբինատները։ Դրա համար ՍՄԿԿ Կենտրոնական կոմիտեն նպատակահարմար է գտնում ստեղծել խոշոր արդյունաբերական միավորումներ, գործարաններ, ֆաբրիկաներ և արդյունաբերական այլ օբյեկտներ՝ իրենց գիտահետազոտական համապատասխան կազմակերպություններով։

Տնտեսական ռեֆորմի կենսագործման փորձը ցույց տվեց, որ դրա առավելություններն ավելի հետևողականորեն իրացվում են խոշոր ձեռնարկություններում և արդյունաբերական միավորումներում։ Նրանք իրենց տրամա-

դրությյան տակ ունեն փորձառու կադրեր, կազմակերպական, տեխնիկական ու
ֆինանսական մեծ միջոցներ, որոնք հնարավորություն են ընձեռում ավելաց-
նելու արտադրության ծավալը, բարձրացնելու աշխատանքի արտադրողակա-
նությունը, իրացնելու արտադրանքը։

Արտադրական և գիտական կազմակերպությունների աշխատանքների
կոորդինացման լավ օրինակ է վերջերս կազմակերպված «Հայէլեկտրամաշ»
միավորումը, որը ստեղծվել է Վ. Ի. Լենինի անվան էլեկտրամեքենաշինական
գործարանի և կոմպլեքսային էլեկտրասարքավորումների ու նախագծային-
կոնստրուկտորական համամիութենական գիտահետազոտական ինստիտուտի
ու նրա փորձնական գործարանի բազայի վրա։

Թեթև արդյունաբերության մինիստրության սիստեմում գործում են Երև-
վանի արտադրական «Անուշ», Ստ. Շահումյանի անվան կաշվի արտադրա-
կան, կարի արտադրական «Գարուն» միավորումները, կոշկեղենի արտադրու-
թյան «Մասիս», «Հայգորգ» արտադրական ֆիրմաները։ Տեղական արդյունա-
բերության մինիստրության սիստեմում կազմակերպված է «Հայէլեկտրակեն-
ցաղսարք» միավորումը։

Ներկայումս ՍՄԿԿ XXIV համագումարի որոշումներին համապատաս-
խան մշակվում են ժողովրդական տնտեսության կառավարման հետագա կա-
տարելագործման մի շարք միջոցառումներ։ Ընդ որում, հատուկ ուշադրություն
է նվիրվում արտադրության հետագա կենտրոնացմանը՝ առավել լայնորեն
կազմակերպելով տնտհաշվարկային արդյունաբերական միավորումներ, ֆիր-
մաներ, կոմբինատներ։

Գիտատեխնիկական առաջընթացի շեշտակի արագացման համար հրա-
տապ նշանակություն ունի գիտատեխնիկական ինֆորմացիան։ Հանրապետու-
թյունում զգալի աշխատանք է կատարվել ձեռնարկությունները, գիտական
հիմնարկությունները և այլ կազմակերպությունները գիտատեխնիկական ին-
ֆորմացիայով ապահովելու գործը բարելավելու նպատակով, ինչպես նաև
կատարելագործելու հանրապետական սիստեմի գիտատեխնիկական ինֆոր-
մացիան։ Ընդլայնվել և ամրապնդվել է գիտատեխնիկական ինֆորմացիայի
կազմակերպությունների ցանցը։

Գիտատեխնիկական ինֆորմացիայի և տեխնիկատնտեսական հետազո-
տությունների հայկական գիտահետազոտական ինստիտուտը սպասարկում է
հանրապետության մոտ 1500 հիմնարկ-ձեռնարկություն։ Վերջին երեք տա-
րիների ընթացքում ընտրովի բաժանման սիստեմով տրվել է 22 հազար միա-
վորից ավելի ինֆորմացիա, կատարվել են մոտ 50 մշակումներ՝ արդյունաբե-
րական արտադրանքի արտադրության և ժողովրդատնտեսական ճյուղերի
տեխնիկական մակարդակի մասին։

Զգալի աշխատանք է կատարված ինֆորմացիայի ապահովման հանրա-
պետական ավտոմատացված սիստեմի հետագա մշակման ու արմատավոր-
ման համար. ներդրված են շինանյութերի և թեթև արդյունաբերության են-
թասիստեմներ. Ներկայումս ավտոմատիկայի և հաշվիչ տեխնիկայի համար
մշակվում է ինֆորմացիայի որոնման ավտոմատացված սիստեմ։

Հանրային արտադրության արդյունավետության բարձրացման հիմնա-
կան գործոններից մեկը հիմնական ֆոնդերի, արդյունաբերական ձեռնարկու-
թյունների արտադրական կարողությունների լավ օգտագործումն է։ Հանրա-
պետության կուսակցական, տնտեսական և արհմիութենական կազմակերպու-



թյունները այդ ասպարեզում կատարել են որոշակի աշխատանք։ Սակայն դեռ
կան չօգտագործված շատ հնարավորություններ։ Մեքենաշինական շատ գոր-
ծարաններում փոխարինման գործակիցը դեռևս ցածր է և չի անցնում 1,2—
1,4-ից։ Մինչդեռ դրա բարձրացումը հսկայական ռեզերվ է արտադրանքի թո-
ղարկումը մեծացնելու համար։ Կարողություններն անբավարար և վատ են օգ-
տագործվում թեթև և սննդարդյունաբերության որոշ ձեռնարկություններում։
Իսկ չէ որ այդ թերությունների վերացման համար չեն պահանջվում նոր, նյու-
թական մեծ ծախսեր։

Հանրային արտադրության արդյունավետության բարձրացման նպատա-
կով ժողովրդական տնտեսության մեջ կենսագործված միջոցառումները, ան-
կասկած, տվեցին իրենց դրական արդյունքները։

Արդյունաբերական արտադրանքի իրացման հնգամյակի առաջին տար-
վա՝ 1971 թվականի պլանը կատարվել է 102,1 տոկոսով, նախորդ տարվա
մակարդակը գերազանցելով 10,2 տոկոսով։ Գերակատարված են նաև տնտե-
սական մյուս ցուցանիշների, մասնավորապես աշխատանքի արտադրողակա-
նության բարձրացման առաջադրանքները։ Աշխատանքի արտադրողականու-
թյունը հանրապետությունում աճել է 6,1 տոկոսով։ Արդյունաբերության մեջ
համախառն արտադրանքի աճը կազմել է 250 մլն ռուբլի, որի 70 տոկոսը
ստացվել է աշխատանքի արտադրողականության բարձրացումից։ Հանրապե-
տության Մինիստրների սովետին ենթակա պետական և տնտեսական կազմա-
կերպությունների շահույթն աճեց 7,2 տոկոսով։

Հայաստանի աշխատավորները մտնելով ՍՍՀՄ կազմավորման 50-ամյա-
կի առթիվ ծավալված համաժողովրդական սոցիալիստական մրցության մեջ,
1972 թվականին ևս հաջողությամբ են կատարում ժողովրդական տնտեսու-
թյան զարգացման պետական առաջադրանքները։



Ա. Զ. ԲԵԳԻՅԱՆ

Իրավաբանական գիտությունների դոկտոր

# ՍՈՑԻԱԼԻՍՏԱԿԱՆ ԴԵՄՈԿՐԱՏԻԱՅԻ ԶԱՐԳԱՑՄԱՆ ՆՈՐ ՓՈՒԼԸ

*Սոցիալիստական դեմոկրատիայի զարգացումը տևական պրոցես է և ընդգրկում է հասարակական կյանքի բոլոր կողմերը։*

*Սովետական պետության ողջ պատմությունը դեմոկրատիայի հետևողական իրականացման ակնառու վկայությունն է։ Սովետական պետության սոցիալիստական էությունն արտահայտող դեմոկրատական սկզբունքներն արտացոլված են ՍՍՀՄ և միութենական հանրապետությունների սահմանադրություններում և ընթացիկ օրենսդրությունում։ Դրանք կիրառվում են ո՛չ միայն պետական, այլև մասսայական հասարակական կազմակերպությունների (արհմիությունների, կոմերիտմիության և այլնի) գործունեության մեջ՝ հաշվի առնելով նրանց յուրահատկությունները։*

*Իրավաբանական և փիլիսոփայական գրականության մեջ սոցիալիստական դեմոկրատիայի զարգացման հարցը հաճախ միակողմանիորեն կապում են միայն ընտրություններին և սովետների, արհմիությունների ու այլ մասսայական կազմակերպությունների գործունեությանը աշխատավորության մասնակցության ընդլայնման հետ։ Այն իրոք ունի առաջնակարգ նշանակություն։ Սակայն սոցիալիստական դեմոկրատիայի զարգացումը միայն դրան չի հանգում։ Վերջինս բազմակողմանի պրոցես է, որը սերտորեն կապված է ինչպես քաղաքական, այնպես և հասարակական կյանքի մյուս ոլորտների հետ։ «Առանձին վերցրած՝ ոչ մի դեմոկրատիզմ սոցիալիզմ չի տա, բայց կյանքում երբեք չի «վերցվի առանձին, այլ «կվերցվի միասին», իր ազդեցությունը կգործի նաև էկոնոմիկայի վրա, առաջ կմղի նրա կերպարանափոխությունը, կենթարկվի տնտեսական զարգացման ազդեցությանը և այլն։ Այդ է կենդանի պատմության դիալեկտիկան» (Վ. Ի. Լենին, Երկեր, հ. 25, էջ 588)։*

*Սոցիալիստական և կոմունիստական շինարարության յուրաքանչյուր փուլ սոցիալիստական դեմոկրատիայի զարգացման բնագավառում առաջ է քաշել նոր խնդիրներ, որոնք բխել են ստեղծված իրավիճակից։ Սովետական դեմոկրատիայի զարգացումը ենթադրում է աշխատավորների առավել ակտիվ*



*մասնակցություն պետական կառավարման, տնտեսական և կուլտուրական շինարարության բարելավման միջոցառումների կենսագործմանը։ Իրականացան Վ. Ի. Լենինի մարգարեական խոսքերը, որ պատմության մեջ առաջին անգամ մասսաները հնարավորություն կունենան* «իՆՔՆուրույՆ մասՆակցելու *ո՛չ միայն քվեարկություններին ու ընտրություններին,* այլև ամեՆօրյա կառավարմաՆը» *(նույն տեղը, էջ 637)։*

*ՍՄԿԿ ծրագրում շարադրված են ժողովրդական իշխանության լայն իրականացումն ապահովող մի շարք նոր միջոցառումներ. ընտրողների առջև սովետների և նրանց դեպուտատների կանոնավոր հաշվետվություն, վստահությունը չարդարացրած դեպուտատներին ետ կանչելու ընտրողների իրավունք, գործադիր, կարգադրիչ օրգանների գործունեության վրա հսկողություն, սովետների կողմից դեպուտատների հարցապնդումների սիստեմատիկ քննարկում և այլն։*

*Սոցիալիստական դեմոկրատիայի զարգացումը կոմունիզմի հաջող կառուցման կարևորագույն պայմաններից է։* «Սոցիալիստական դեմոկրատիայի համակողմանի ծավալում և կատարելագործում,— *ասված է ՍՄԿԿ ծրագրում,* — բոլոր քաղաքացիների ակտիվ մասնակցություն պետության կառավարմանը... պետական ապարատի աշխատանքի բարելավում և նրա գործունեության նկատմամբ ժողովրդական վերահսկողության ուժեղացում՝ այս է սոցիալիստական պետականության զարգացման գլխավոր ուղղությունը կոմունիզմի կառուցման ժամանակաշրջանում» *(ՍՄԿԿ XXII համագումարի նյութերը, 1962, էջ 523)։*

*Կուսակցության XXIII և XXIV համագումարների միջև ընկած ժամանակաշրջանն աչքի է ընկնում երկրի սոցիալ-քաղաքական զարգացման, սոցիալիստական դեմոկրատիայի կատարելագործման ոլորտում ձեռք բերված խոշոր հաջողություններով։ Կուսակցության միջոցառումները հիմք դարձան պետական, տնտեսական և կուլտուրական շինարարության ասպարեզում աշխատավորական առավել լայն զանգվածների ընդգրկման, դեմոկրատիան ստացավ բազմակողմանի զարգացում, ընդգրկեց կյանքի բոլոր կողմերը։ Նրա զարգացման գլխավոր ցուցանիշներից է ՍՍՀՄ քաղաքացիների մշտապես աճող նախաձեռնությունը, նրանց առավել լայն և գիտակցական մասնակցությունը հասարակական գործերի կառավարմանը, սոցիալիստական հասարակական հարաբերությունների հետագա կատարելագործմանը և ամրապնդմանը, կոմունիզմի նյութատեխնիկական բազայի ստեղծմանը։*

*Լ. Ի. Բրեժնևը նշեց. «Կուսակցությունը անդուլ կերպով հոգ է տանում այն մասին... որ յուրաքանչյուրն իրեն զգա համաժողովրդական գործով շահագրգռված և դրա համար պատասխանատվության իր բաժինը կրող քաղաքացի բառիս բուն իմաստով» (ՍՄԿԿ XXIV համագումարի նյութերը, էջ 109)։*

*ՍՄԿԿ XXIV համագումարը խոր և բազմակողմանի վերլուծեց սովետական սոցիալ-քաղաքական սիստեմի զարգացման պրոբլեմները, մեծ ուշադրություն նվիրեց սովետական պետության հետագա ամրապնդմանը, սոցիալիստական դեմոկրատիայի զարգացման պրոբլեմներին։ Սոցիալիստական դեմոկրատիայի զարգացման բնագավառում կուսակցության համագումարն առաջ քաշեց նոր սկզբունքային դրույթներ։ ՍՄԿԿ Կենտկոմի հաշվետու զեկուցման մեջ նշվեց, որ սոցիալիստական դեմոկրատիայի իմաստը և բովանդակությունը՝ պետության և հասարակական գործերի կառավարմանն առավել*

լայն մասսաների մասնակցությունն է։ «Այդպիսի դեմոկրատիան մեզ համար կենսական պահանջմունք է, սոցիալիստական հասարակական հարաբերությունների զարգացման և ամրապնդման անհրաժեշտ պայման» (նույն տեղը, էջ 129)։

Ընդգծելով, որ կոմունիստական հասարակարգի կառուցման համար մղվող պայքարը անքակտելիորեն կապված է սովետական պետության ամրապնդման, հասարակության քաղաքական կազմակերպման ողջ սիստեմի կատարելագործման, սոցիալիստական դեմոկրատիայի բազմակողմանի զարգացման հետ, ՍՄԿԿ XXIV համագումարն առաջադրեց սոցիալիստական դեմոկրատիայի հետագա զարգացման խնդիրների իրականացման մի շարք միջոցառումներ։ Սոցիալիստական դեմոկրատիան իր էությամբ գործուն է, մեծ է դրա ազդեցությունը հասարակական կյանքի բոլոր կողմերի վրա։ Այն գործադիր և օրենսդիր իշխանությունների մարմնացում է։

Դեմոկրատիայի իսկական արտահայտությունը հանդիսացող ժողովրդական իշխանությունն իր արտացոլումն է գտնում, ամենից առաջ, սովետների մեջ, որոնց դերի բարձրացումը, գործունեության կատարելագործումը մշտապես եղել է կոմունիստական կուսակցության և սովետական պետության ուշադրության կենտրոնում։

1967—71 թթ. ընդունվեցին մի շարք կարևոր որոշումներ սովետների ամրապնդման, կոմունիստական շինարարության մեջ նրանց դերի բարձրացման համար։ Այդ նպատակներին են ուղղված 1967 թ. ՍՄԿԿ Կենտկոմի մարտյան պլենումի «Աշխատավորների դեպուտատների գյուղական և ավանային սովետների աշխատանքի բարելավման մասին» որոշումը և 1968 թ. ապրիլի 8-ի ՍՍՀՄ Գերագույն սովետի նախագահության «Գյուղական և ավանային սովետների հիմնական իրավունքների և պարտականությունների մասին» հրամանագիրը։ ՍՄԿԿ Կենտկոմի վերոհիշյալ որոշման մեջ նշված է, որ անհրաժեշտ է ընդլայնել աշխատավորության հետ սովետների կապը, ակտիվացնել դեպուտատների գործունեությունը, գյուղի և ավանի կյանքին վերաբերող կարևոր հարցերը դնել աշխատավորների քննարկմանը։

Գյուղական և ավանային սովետները, կենսագործելով ՍՄԿԿ Կենտկոմի մարտյան պլենումի որոշումը և ՍՍՀՄ Գերագույն սովետի նախագահության վերոհիշյալ հրամանագիրը, զգալիորեն բարելավեցին իրենց աշխատանքը։ Ընդլայնվեց նրանց կապը աշխատավորության հետ, բարձրացավ մշտական հանձնաժողովների դերը, ակտիվացավ դեպուտատների գործունեությունը սովետներում և ընտրական օկրուգներում, կյանքի նորմ դարձավ գործադիր կոմիտեների հաշվետվությունը ներկայացուցչական օրգանների առջև՝ դրանց սեսիաներում։ Արտադրական վարչությունները շրջանային սովետների գործադիր կոմիտեների գյուղատնտեսական վարչություններով փոխարինվելուց հետո, զգալիորեն բարձրացավ սովետների ներգործությունը գյուղատնտեսական արտադրության զարգացման վրա, առավել կոնկրետ դարձավ կոլտնտեսությունների նկատմամբ նրանց ղեկավարությունը։

ՍՄԿԿ Կենտկոմը 1971 թ. մարտին ընդունեց «Աշխատավորների դեպուտատների շրջանային և քաղաքային սովետների աշխատանքի հետագա բարելավման միջոցառումների մասին» որոշումը, որտեղ տրվեց սովետների գործունեության վերլուծությունը և նշվեցին դրանց առջև դրված խնդիրների հետագա պարզեցման և լավագույն լուծման կոնկրետ ուղիները։ Ընդգծելով, որ քաղաքային և շրջանային սովետների գործունեության մեջ իրենց հետագա զարգացումն են ստացել դեմոկրատական սկզբունքները, բարելավվել է մասսաների շրջանում տարվող նրանց աշխատանքը, ամրապնդվել ընտրողների հետ դեպուտատների կապը, ՍՄԿԿ Կենտկոմը միաժամանակ նշեց սովետների աշխատանքում տեղ գտած թերությունները ու վրիպումները, չլուծված պրոբլեմները և նշեց դրանց հաղթահարման կոնկրետ ուղիները։



Տնտեսական և սոցիալ-կուլտուրական շինարարության բնագավառում զգալի չափով ընդլայնելով տեղական սովետների իրավունքները և ամրապնդելով նրանց նյութական ֆինանսական բազան, կուսակցությունը քաղաքային և շրջանային սովետներին առաջադրում է նոր, ավելի բարձր պահանջներ։ Ամենից առաջ, նրանց առաջարկվում է ակտիվացնել գործունեությունն իրենց տերիտորիայում գտնվող բնակարանային, կոմունալ, սոցիալ-կուլտուրական և կենցաղային նշանակության օբյեկտների շինարարության, ձեռնարկությունների, հիմնարկությունների և կազմակերպությունների աշխատանքների կոորդինացման և բնակչության սպասարկման ու այլ միջոցառումների կիրառման ասպարեզում։ Նշված են համապատասխան միջոցառումներ սովետների կազմակերպական գործունեության հետագա բարելավման, մասսաների մասնակցության մշտական ընդլայնման համար։ Սովետների աշխատանքում հատուկ նշանակություն է տրվում հրապարակայնության սկզբունքի հետագա ամրապնդման անհրաժեշտությանը։ Ընտրողները, յուրաքանչյուր շրջանի, քաղաքի բնակիչները պետք է տեղյակ լինեն սովետների պրակտիկ բոլոր գործերին, ակտիվ մասնակցեն նրանց կիրառվող միջոցառումներին։ Գործնական խնդիր է առաջադրվել՝ շրջանի և քաղաքի կյանքի բոլոր կարևոր հարցերը դնել աշխատավորների քննարկմանը։

Սովետական Միության ժողովուրդները ՍՄԿԿ ղեկավարությամբ ամրապնդելով ու կատարելագործելով սովետները և սոցիալիստական դեմոկրատիայի սիստեմի մնացած բոլոր օղակները, առաջին հերթին՝ արհմիություններն ու կոմերիտմիությունը, հաջողությամբ պայքարում են կոմունիզմի նյութա-տեխնիկական բազայի ստեղծման համար։

Սոցիալիստական դեմոկրատիայի հետագա ծավալումն անհնար է առանց պետական ապարատի աշխատանքի կառավարման ողջ գործի արդյունավետ կազմակերպման։ Պետական ապարատի կատարելագործման հետ կապված հարցերը միշտ եղել են կոմունիստական կուսակցության և սովետական պետության ուշադրության կենտրոնում։ Դա ինքնըստինքյան հասկանալի է, քանի որ կառավարման հիմնական ծանրությունն ընկնում է պետական ապարատի վրա, որի գործունեությունից, ինչպես նշված է ՍՄԿԿ ծրագրում, «մեծապես կախված է երկրի բոլոր ռեսուրսների ճիշտ օգտագործումը, աշխատավորների կուլտուր-կենցաղային սպասարկման հարցերի ժամանակին լուծումը»։

ՍՄԿԿ ծրագրում նախատեսված խնդիրներն իրականացնելիս, կուսակցությունը ձեռք առավ մի շարք միջոցառումներ, որոնք ուղղված էին պետական ապարատի աշխատանքի մակարդակի, նրա կուլտուրայի բարձրացմանը։ Կուսակցությունը հսկայական աշխատանք կատարեց կադրերի ընտրության, տեղաբաշխման և դաստիարակության բնագավառում, լուրջ ուշադրություն նվիրեց կոմունիստական գիտակցության դաստիարակմանը, աշխատանքի հանդեպ կոմունիստական վերաբերմունքի բարձրացմանը, կարգապահությանն ու

կազմակերպվածությանը։ Շնորհիվ դրա ապարատի անձնակազմը զգալի չափով բարելավվեց։

Կառավարման ապարատի կատարելագործման և էժանացման կարևորագույն միջոցներից են դրա կառուցվածքի բարելավումը, ավելորդությունների վերացումը։ Վերջին տարիներին կուսակցության և կառավարության ձեռք առած միջոցառումների շնորհիվ հնարավոր դարձավ վերացնել ապարատի աշխատանքի շատ թերություններ։ Սակայն դեռ շատ բան կա անելու, որպեսզի ապարատը համապատասխանի կոմունիստական շինարարության ներկա փուլի պահանջներին։ Անհրաժեշտ է է՛լ ավելի բարձրացնել կառավարման կուլտուրան։ «Մեր հասկացողությամբ,— ասված է ՍՄԿԿ Կենտկոմի հաշվետու զեկուցման մեջ,— կառավարման կուլտուրայի մեջ օրգանապես մտնում են նաև ուշադիր, հոգատար վերաբերմունքը աշխատավորների կարիքների ու հոգսերի նկատմամբ, նրանց դիմումների ու խնդրանքների օպերատիվ քննարկումը» (ՍՄԿԿ XXIV համագումարի նյութերը, էջ 103—104)։

Սոցիալիստական դեմոկրատիայի զարգացման ասպարեզում հատկապես մեծ է աշխատանքային կոլեկտիվների դերը, քանի որ այնտեղ է լուծվում աշխատանքային և հասարակական ակտիվության բարձրացման հարցը, ամրապնդվում են մարդկանց միջև սոցիալիստական հարաբերությունները, ծավալվում է սոցիալիստական մրցությունը, ձևավորվում են աշխատավորների բարեկամության և ընկերական փոխօգնության հարաբերությունները։

Սովետական ապրելակերպի անբաժանելի գիծը, ինչպես նշվեց XXIV համագումարում, համաժողովրդական թափ ստացած աշխատանքային մրցությունն է։ Համագումարի որոշումները աշխատանքային էնտուզիազմի՝ աշխատանքի նկատմամբ սովետական մարդկանց, հիրավի, կոմունիստական վերաբերմունքի, հետագա վերելքի նոր փուլ բացեցին։ ՍՄԿԿ XXII համագումարի պատմական որոշումների կատարման մեջ գործնական ներդրում էր 1971 թ. ապրիլի 17-ի համամիութենական կոմունիստական շաբաթօրյակը, որին մասնակցեց ավելի քան 120 միլիոն մարդ։ Դրա շնորհիվ նոր հնգամյակի ֆոնդին հանձնվեց 125 միլիոն ռուբլի։

Կուսակցության XXIV համագումարում նշվեց, որ սոցիալիստական դեմոկրատիայի սիստեմում կարևոր տեղ է հատկացվում ժողովրդական վերահսկողության օրգաններին։ Դրանց ստեղծման գաղափարը Վ. Ի. Լենինինն է։ Նա նշում է, որ ժողովրդական վերահսկողությունը պետք է կրի մշտական, ամենօրյա բնույթ, որ դրա հիմնական խնդիրն է՝ պետական ապարատի կատարելագործումը, աշխատանքում թերությունների ժամանակին հայտաբերումը, դրանց պատճառների բացահայտումն ու վերացումը։

Պետական ապարատի կատարելագործման ոլորտում ժողովրդական վերահսկողության օրգանների գործունեության հաջողության գրավականը, նրանում աշխատավորության լայն զանգվածների ընդգրկումն է։ Նշելով ժողովրդական վերահսկողության զարգացման ուղիները Վ. Ի. Լենինը գրում էր՝ հաշվառումն ու վերահսկողությունը, որոնք անհրաժեշտ են սոցիալիզմին անցնելու համար, կարող են միայն մասսայական լինել։

Մշտական և մասսայական վերահսկողության մասին լենինյան գաղափարներն իրենց հետագա զարգացումն ստացան ՍՄԿԿ ծրագրում, որտեղ նշվում է. «Լենինի ցուցումներին համապատասխան պետք է մշտապես գործեն վերահսկողության օրգանները, որոնք պետական վերահսկողությունը զուգորդում են կենտրոնում ու տեղերում հասարակական տեսչության հետ։ Կուսակցությունը ժողովրդական վերահսկողության տեսչությունները դիտում է որպես պետության գործերի կառավարմանը, օրինականության խստիվ կիրառման նկատմամբ վերահսկողության իրականացմանը ժողովրդական լայն մասսաների ներգրավման ազդու գործիք, պետական ապարատի կատարելագործման, բյուրոկրատիզմը արմատախիլ անելու, աշխատավորների առաջարկների ժամանակին իրականացման գործիք» (ՍՄԿԿ XXII համագումարի նյութերը, 1962, էջ 526—527)։

Կենսագործելով կուսակցության ծրագրում և ՍՄԿԿ Կենտկոմի պլենումների որոշումներում նշված խնդիրները, ժողովրդական վերահսկողության օրգանները մեծ գործ են արել պետական ապարատի կատարելագործման համար, իրենց աշխատանքներում ընդգրկել միլիոնավոր բանվորների, կոլտնտեսականների, ծառայողների։

ՍՄԿԿ XXIV համագումարը մեծ ուշադրություն նվիրեց ժողովրդական վերահսկողության օրգանների գործունեությանը։ ՍՄԿԿ Կենտկոմի հաշվետու զեկուցման մեջ նշվեց. «Կուսակցությունը այսուհետև ևս հոգ կտանի, որպեսզի լայն մասսաների մշտական ու գործուն վերահսկողության վերաբերյալ լենինյան գաղափարներն անշեղորեն կենսագործվեն» (ՍՄԿԿ XXIV համագումարի նյութերը, էջ 104)։

Ժողովրդական վերահսկողության համար կարևոր է սովետական օրենքների կատարման հսկողությունը։ Վ. Ի. Լենինը բացառիկ կարևոր նշանակություն էր տալիս սոցիալիստական օրինականության ամրապնդմանն ու զարգացմանը, սովետական օրենքների անշեղ կենսագործմանը։ Վ. Ի. Լենինը նշում էր. «Ամենափոքր օրինազանցությունը, սովետական կարգի ամենափոքր խախտումն արդեն սողանցք է, որ անմիջապես կօգտագործեն աշխատավորների թշնամիները» (Երկեր, հ. 29, էջ 692)։

Սոցիալիստական օրինականության խստագույն պահպանումը դարձել է սահմանադրային սկզբունք։ ՍՍՀՄ, միութենական և ինքնավար հանրապետությունների սահմանադրություններում կան հոդվածներ, որոնք պարտադրում են քաղաքացիներին կատարելու օրենքները, պահպանելու աշխատանքային կարգապահությունը, ազնվորեն վերաբերվելու հասարակական պարտքին, հարգելու սոցիալիստական համակեցության կանոնները։ Սոցիալիստական օրինականությունը չի հակասում դեմոկրատիային, ինչպես այն ջանում են ապացուցել մեր գաղափարական հակառակորդները։ Բնական է, նրանց համար ցանկալի էր, որ դեմոկրատիայի դրոշի տակ մեր երկրում տիրեին անկարգապահությունը, սանձարձակությունը, անկազմակերպվածությունը, անպատասխանատվությունը, այսինքն՝ կեղծ դեմոկրատիան, դեմոկրատիան չարաշահվեր ի վնաս հասարակության, կոմունիստական շինարարության։ Օրինականության բացակայության պայմաններում չկա ճշմարիտ դեմոկրատիա։ Օրենքների կատարման, աշխատանքային կարգապահության պահպանման, սոցիալիստական համակեցության կանոնները հարգելու պահանջները ո՛չ միայն չեն հակասում սովետական կարգերի դեմոկրատական հիմունքներին, դեմոկրատիային, այլ ընդհակառակը, պայմանավորում են նրա լայն զարգացումը։

Սոցիալիստական օրինականության մշտական ամրապնդումն անհրաժեշտ է որպես սոցիալիստական հասարակության քաղաքական կազմակերպման

զարգացման, կոմունիստական շինարարության խնդիրների կատարման կարևոր պայմաններից մեկը։ Այդ իսկ պատճառով կոմունիստական կուսակցությունը և սովետական պետությունը վերջին տարիներին իրականացրել են մի շարք նոր միջոցառումներ՝ օրինականության և իրավակարգի ամրապնդման, սովետական օրենքները հարգելու ոգով քաղաքացիներին դաստիարակելու նպատակով։ Սոցիալիստական օրինականության ամրապնդման համար մեծ աշխատանք են կատարում տեղական սովետները։ Վերջիններիս սեսիաներում, գործադիր կոմիտեների նիստերում քննարկվում են աշխատանքային օրենսդրության, գյուղատնտեսական արտելի կանոնադրության և օրենքների պահպանման այլ հարցեր։ Քննարկվող նյութերի նախապատրաստմանը մասնակցում են սովետների սոցիալիստական օրինականության հանձնաժողովները։

Սովետների գործունեության մեջ սոցիալիստական օրինականության ամրապնդմանն են ուղղված ՍՍՀՄ Գերագույն սովետի նախագահության աշխատավորների դեպուտատների շրջանային, քաղաքային և շրջանային բաժանում ունեցող քաղաքային սովետների հիմնական իրավունքների և պարտականությունների վերաբերյալ վերոհիշյալ հրամանագրերը։ Սովետական օրգաններին պարտավորեցվում են՝ ապահովել օրենքների և պետական իշխանության ու կառավարման օրգանների այլ ակտերի կիրառումը, պետական և հասարակական կարգի, սոցիալիստական սեփականության, քաղաքացիների, պետական հիմնարկությունների, ձեռնարկությունների, կոոպերատիվ և այլ հասարակական կազմակերպությունների իրավունքների և օրինական շահերի պաշտպանությունը։ Նրանք պարտավոր են կազմակերպել օրենսդրության պարզաբանումը բնակչությանը։

Նշված պարտականությունների իրականացման համար աշխատավորների դեպուտատների շրջանային և քաղաքային սովետներն օժտվում են լայն իրավունքներով։ Մասնավորապես դրանք կարող են չեղյալ հայտարարել կոլտնտեսության անդամների ընդհանուր ժողովի օրենքին հակասող որոշումները, կասեցնել ձեռնարկությունների, կազմակերպությունների և հիմնարկությունների ղեկավարների հրամաններն ու կարգադրությունները մի շարք հարցերում՝ հողօգտագործման, բնակավայրերի կառուցապատման, բարեկարգման, բնության և կուլտուրայի հուշարձանների պահպանության, բնակչության սոցիալ-կուլտուրական և կենցաղային սպասարկման և այլն։

«Օրինականության ամրապնդումը,— նշեց կուսակցության XXIV համագումարում Բրեժնևը,— միայն պետական ապարատի խնդիրը չէ։ Կուսակցական կազմակերպությունները, արհմիությունները, կոմերիտմիությունը պարտավոր են ամեն ինչ անել՝ ապահովելու օրենքների խստիվ կիրառումը, բարելավելու աշխատավորների իրավական դաստիարակությունը։ Իրավունքի, օրենքի նկատմամբ հարգանքը պետք է յուրաքանչյուր մարդու անձնական համոզմունքը դառնա։ Դա առավել ևս վերաբերում է պաշտոնատար անձանց գործունեությանը։ Անհանդուրժելի են օրենքից նահանջելու կամ այն շրջանցելու ամեն տեսակ փորձերը, ինչով էլ դրանք պատճառաբանվեն» (ՍՄԿԿ XXIV համագումարի նյութերը, էջ 107)։

Յուրաքանչյուր կոմունիստի, քաղաքացու, պաշտոնատար անձի պարտքն է՝ բոլոր ուժերն ու կարողությունները ի սպաս դնել օրինականության պահպանմանը։

# ՍՈՑԻԱԼԻՍՏԱԿԱՆ ԻՆՏԵԳՐԱՑՄԱՆ ՈՒՂԻՈՎ

Մ. Ս. ԱՌՈՒՍՏԱՄՅԱՆ

Արդի դարաշրջանի բնորոշ գծերից մեկը սոցիալիզմի համաշխարհային սիստեմի տնտեսական և քաղաքական հզորության, միջազգային իրադարձությունների վրա նրա ազդեցության անշեղ աճն է։ Տեղի է ունենում այդ սիստեմի համակողմանի բուռն զարգացման և ամրապնդման անկասելի պրոցես։ Սոցիալիստական երկրները, հատկապես տնտեսական փոխօգնության խորհրդի անդամ երկրները, առաջընթաց մեծ քայլ են կատարել էկոնոմիկայի, նյութական և հոգևոր կուլտուրայի զարգացման ուղղությամբ։

Սոցիալիզմի համաշխարհային սիստեմը թևակոխել է իր զարգացման մի այնպիսի փուլ, երբ հնարավորություն է ստեղծվել առավել լիակատար չափով օգտագործելու նոր հասարակարգի ընդերքում եղած հուժկու ուժերը, օրգանապես զուգակցելու գիտա-տեխնիկական հեղափոխության արդի նվաճումները տնտեսության սոցիալիստական սիստեմի առավելությունների հետ։

Պրակտիկան լիովին ապացուցել է, որ սոցիալիզմի համաշխարհային սիստեմի առաջադիմությունը և միջազգային ազդեցությունը մեծ չափով որոշվում են ոչ միայն սոցիալիստական յուրաքանչյուր երկրի անվիճելի հաջողություններով, այլև այդ սիստեմի բոլոր երկրների ամենասերտ ու բազմակողմանի համագործակցության ու փոխօգնության զարգացմամբ, նրանց միասնության ամրապնդմամբ։ Այդ հիմնական հարցերը վերջին տարիներին գտնըվում են եղբայրական կուսակցությունների ուշադրության կենտրոնում։

Հանգուցային հարցը, որի լուծմանն են ուղղված նրանց համատեղ ակտիվ ջանքերը՝ սոցիալիստական տնտեսական ինտեգրացման զարգացումն է։ «Պրակտիկան մեզ հանգեցրել է այն ընդհանուր հետևության,— ասաց Լ. Ի. Բրեժնևը ՍՄԿԿ XXIV համագումարում,— որ անհրաժեշտ է խորացնել արտադրության մասնագիտացումն ու կոոպերացումը, է՛լ ավելի սերտորեն համաձայնեցնել ժողովրդատնտեսական պլանները, մի խոսքով՝ առաջ ընթանալ սոցիալիստական պետությունների տնտեսական ինտեգրացման ուղիով։ Դա կարևոր և անհրաժեշտ գործ է» (ՍՄԿԿ XXIV համագումարի նյութերը, էջ 11)։

Սոցիալիզմի և կոմունիզմի հաջող կառուցման, կապիտալիզմի հետ մրցության և նրա դեմ պայքարի շահերը առաջ են քաշել սոցիալիստական երկրների է՛լ ավելի սերտ տնտեսական, քաղաքական ու գաղափարական մեր-

ձեցման, ջանքերի, ռեսուրսների միավորման, նրանց բազմակողմանի ինտեգրացման պահանջը:

Սոցիալիստական երկրների տնտեսական ինտեգրացումը ծավալելու կուրսը վերցրեց ՏՓԽ-ի XXIII հատուկ նստաշրջանը, որը կայացավ 1969 թվականի ապրիլին: Այդ նստաշրջանը դրեց ՏՓԽ-ի անդամ երկրների բազմակողմանի համագործակցության նոր փուլի սկիզբը, որոշեց ձեռնամուխ լինել եղբայրական երկրների տնտեսական ու գիտա-տեխնիկական համագործակցության հետագա զարգացման հիմնական ուղղությունների և դրանց իրագործման կոնկրետ միջոցառումների մշակմանը՝ հեռանկարային տևական ժամանակաշրջանի համար, տվեց սոցիալիստական տնտեսական ինտեգրացման հեռանկարային ծրագրի սկզբունքային կողմնորոշիչներն ու ուղղությունները:

1971 թվականի հուլիսին Բուխարեստում կայացավ ՏՓԽ-ի XXV հոբելյանական նստաշրջանը, որի մասնակիցները միաձայն ընդունեցին ՏՓԽ-ի անդամ երկրների համագործակցության հետագա խորացման ու կատարելագործման, սոցիալիստական տնտեսական ինտեգրացման կոմպլեքսային ծրագիրը: Դա շատ կարևոր փաստաթուղթ է, որի մեջ հիմնավորված են ինտեգրացման անհրաժեշտությունը, հիմնական սկզբունքները, նպատակները, նրա իրականացման ձևերը, ինչպես նաև կազմակերպական և իրավական հիմքերը:

Կոմպլեքսային ծրագիրը, որը նախատեսված է 15—20 տարիների ընթացքում հաջորդական էտապներով իրականացնելու համար, սոցիալիստական երկրների բազմակողմանի համագործակցության և ինտեգրացման կենսագործման գիտական և կազմակերպական հուսալի հիմքն է:

Ի՞նչ է սոցիալիստական տնտեսական ինտեգրացումը:

Այն, ըստ կոմպլեքսային ծրագրի, ՏՓԽ-ի երկրների «կոմկուսակցությունների և կառավարությունների կողմից գիտակցաբար ու պլանաչափորեն կանոնավորվող աշխատանքի միջազգային սոցիալիստական բաժանման, նրանց էկոնոմիկաների մերձեցման ու ազգային տնտեսությունների արդիական բարձրարդյունավետ կառուցվածքի ձևավորման, նրանց տնտեսական զարգացման մակարդակների աստիճանական մերձեցման ու հավասարեցման, էկոնոմիկայի, գիտության ու տեխնիկայի հիմնական ճյուղերում խոր ու կայուն կապերի ձևավորման, այդ հիման վրա միջազգային սոցիալիստական շուկայի ընդլայնման ու ամրապնդման, ապրանքա-դրամական հարաբերությունների կատարելագործման պրոցես է»: Տնտեսական ինտեգրացումը ենթադրում է երկրների տնտեսական կյանքի և կապերի փոխկախվածություն, ազգային էկոնոմիկաների մերձեցում, միահյուսում, իսկ հեռանկարում՝ նրանց միավորում միասնական տնտեսական համալիրի մեջ: Նրա վերջնական արդյունքը կլինի, ինչպես կանխատեսել է Վ. Ի. Լենինը, միասնական պլանով կարգավորվող համաշխարհային կոմունիստական տնտեսության ստեղծումը:

Ինտեգրացումը և՛ օբյեկտիվ պրոցես է և՛ սոցիալիստական երկրների քաղաքականության որոշակի ուղղություն: Տնտեսական ինտեգրացման օբյեկտիվ հիմքը արդի արտադրաուժերի զարգացումն է, երկրների տնտեսական կյանքի բոլոր կողմերի ինտերնացիոնալացումը: «...մարդկության ամբողջ տնտեսական, քաղաքական և հոգևոր կյանքը,— գրել է Լենինը,— շարունակ ավելի ինտերնացիոնալացվում է արդեն կապիտալիզմի օրոք: Սոցիալիզմն այն ինտերնացիոնալացնում է ամբողջովին» (Երկեր, հ. 19, էջ 294): Արտադրաուժերի արագ զարգացումը և գիտա-տեխնիկական բուռն հեղափոխությունը պահանջում են արագացնել երկրների տնտեսական ինտեգրացումը:



Միաժամանակ պետք է նշել, որ ինտեգրացման պրոցեսները միայն արտադրաուժերի զարգացման պահանջմունքներով չեն կյանքի կոչվում: Մարքսիստ-լենինյանները ելնում են այն բանից, որ ինտեգրացման սոցիալ-տնտեսական էությունը, մերձավոր և վերջնական նպատակները, իրականացման ձևերը և հետևանքները որոշվում են հասարակարգի, արտադրահարաբերությունների բնույթով: Այս իմաստով էլ սոցիալիստական տնտեսական ինտեգրացումը սկզբունքորեն տարբերվում է կապիտալիստականից:

Ինտեգրացման պրոցեսները իմպերիալիզմի պայմաններում անբաժան են կապիտալի իշխանությյան, մասնավոր սեփականության տիրապետությունից և ինչ ձևով էլ իրականացվեն (մասնավոր-մոնոպոլիստական կամ պետական-մոնոպոլիստական), միշտ ծառայում են մոնոպոլիաների, կապիտալիստական հասարակարգի պահպանման շահերին: Գիտա-տեխնիկական հեղափոխության արդի ժամանակաշրջանում կապիտալիստական ինտեգրացումն է՛լ ավելի է ուժեղացնում բանվորների, աշխատավոր լայն զանգվածների շահագործումը, ստվարացնում գործազուրկների բանակը: Կապիտալիստական երկրներում ստեղծված տնտեսական միավորումներում և կազմակերպություններում գոյություն ունեն ընդգծված խտրականություն և անիրավահավասարություն, թույլ զարգացած երկրները միշտ մնում են ուժեղ տերությունների հումքավառելիքային կցորդը, նրանց կամակատարը:

Իմպերիալիստներն ամեն կերպ ձգտում են համաշխարհային սոցիալիզմի աճող հեղինակությանն ու ազդեցությանը, բանվորական ու դեմոկրատական շարժումներին, ազգային-ազատագրական պայքարին հակադրել իրենց միացյալ ճակատը, դիմում են տնտեսական և ռազմա-քաղաքական ինտեգրացման զանազան ձևերի:

Սոցիալիստական տնտեսական ինտեգրացումը զերծ է կապիտալիստական ինտեգրացման նշված բացասական գծերից և հետևանքներից: Սոցիալիստական երկրների համագործակցությունը և տնտեսական ինտեգրացումը խարսխվում են մասնակից երկրների պետական սուվերենությունը, անկախությունն ու ազգային շահերը հարգելու, փոխադարձ շահավետության, լիակատար իրավահավասարության և կամավորության, եղբայրական փոխօգնության սկզբունքների վրա: Սոցիալիստական ինտեգրացման պրոցեսներն իրականացվում են լիովին հաշվի առնելով այն իրողությունը, որ սոցիալիզմի համաշխարհային սիստեմը արդի փուլում միասնական տնտեսական ամբողջություն չէ, այլ ինքնուրույն ազգային տնտեսությունների, սուվերեն պետությունների կամավոր համագործակցություն՝ նկատի ունենալով յուրաքանչյուր երկրի պահանջները, արմատական շահերը, հնարավորություններն ու առանձնահատկությունները: Սոցիալիստական ինտեգրացումը չի ուղեկցվում վերազգային մարմինների ստեղծմամբ:

Սոցիալիստական երկրների համագործակցության, ՏՓԽ-ի գործունեության պրակտիկան լիովին հերքում է բուրժուական պրոպագանդիստների զրպարտություններն այն մասին, թե իբր սոցիալիստական ինտեգրացումը խանգարում է սոցիալիստական առանձին երկրներում համակողմանի ազգային էկոնոմիկայի ստեղծմանը, հակասում է նրանց շահերին, հենվում «սովետական հեգեմոնիզմի», համագործակցող երկրների «սահմանափակ սուվե-

բերության» վրա և այլն։ Մինչդեռ սոցիալիստական տնտեսական ինտեգրացումը չի բացառում առանձին երկրների ժողտնտեսությունների կոմպլեքսային զարգացումը, բազմաճյուղ էկոնոմիկայի ստեղծումը, որը օպտիմալ համամասնության մեջ միավորում է արդյունաբերությունը, գյուղատնտեսությունը, տրանսպորտը, արդյունահանող և վերամշակող արդյունաբերության ճյուղերը, արտադրամիջոցների և սպառման առարկաների արտադրությունը և այլն։ Ազգային տնտեսությունների կոմպլեքսային զարգացումը, չի կարելի հասցնել ունիվերսալիզմի և հակադրել արտադրության միջպետական խելացի մասնագիտացմանը, ձգտել «արտադրել ամեն ինչ» որը ո՛չ հնարավոր է, ո՛չ էլ ձեռնտու։

Սոցիալիստական ինտեգրացման, աշխատանքի միջազգային սոցիալիստական բաժանման կարևոր սկզբունքներից մեկը արտադրության միջազգային մասնագիտացման և առանձին սոցիալիստական երկրների էկոնոմիկայի կոմպլեքսային զարգացման խելացի զուգակցումն է։ Սոցիալիստական ինտեգրացումը բոլորովին չի հակասում կամ վնասում սոցիալիստական որևէ երկրի սուվերենությանը։ Ընդհակառակը, միայն սոցիալիզմի համաշխարհային սիստեմի երկրների համագործակցությունն ու փոխօգնությունը կարող են ապահովել յուրաքանչյուր երկրի տնտեսական ու քաղաքական ինքնուրույնությունը։ «Սոցիալիստական բոլոր երկրները լիովին իրավահավասար և սուվերեն են,— գրում է գերմանական տնտեսագետ Զ. Կվիլիտցշը (ԳԴՀ),— նրանք բարձր պատասխանատվություն են կրում սոցիալիզմի ճակատագրի համար։ Փորձը ցույց է տալիս, որ յուրաքանչյուր երկրի դիրքերը ավելի ուժեղանում են, նրա սուվերենությունը ամրապնդվում է, եթե նա մշտապես զարգացնում է համագործակցությունը և բարեկամությունը Սովետական Միության հետ» («Проблемы мира и социализма», № 10. 1971, стр. 14)։

Տնտեսական փոխօգնության խորհուրդը ժողովուրդներին ցույց է տալիս բոլոր, այդ թվում մեծ ու փոքր, ավելի կամ պակաս զարգացած երկրների իրավահավասար և փոխադարձաբար շահավետ համագործակցության ուսանելի օրինակ. «Մեր տնտեսական հարաբերությունները Սովետական Միության հետ,— ասաց Լեհաստանի Ժողովրդական Հանրապետության Մինիստրների սովետի նախագահ Պ. Յարոշևիչը ԼՄԲԿ VI համագումարում,— ինտերնացիոնալ համերաշխության, համագործակցության և եղբայրական փոխօգնության օրինակ են։ Մենք բազմիցս համոզվել ենք դրանում»։

Ինտեգրացումը սոցիալիզմի աշխարհում չի կարող իրականացվել ի վնաս համագործակցության անդամ որևէ երկրի արմատական շահերի։ Ծավալելով ինտեգրացման պրոցեսները էկոնոմիկայում՝ Սովետական Միությունը և եղբայրական մյուս երկրները չեն ձգտում ստեղծել ինչ-որ ներփակ մեկուսացված խմբավորում։ Նրանք հանդես են գալիս հանուն այն բանի, որ ինտեգրացումը կրի բաց բնույթ և ապահովի իրենց տնտեսական և գիտա-տեխնիկական կապերի զարգացումը շահագրգռված բոլոր երկրների հետ։ ՏՓԽ-ի XXV նստաշրջանի մասնակիցներն իրենց ընդունած կոմյունիկեում ուղղակի նշեցին, որ կոմպլեքսային ծրագրով նախատեսված միջոցառումների իրականացմանը կարող է լիովին կամ մասնակիորեն մասնակցել ՏՓԽ-ի անդամ չհանդիսացող ամեն մի երկիր։ ՏՓԽ-ի գործունեության սկզբունքները չեն հակասում ՄԱԿ-ի կանոնադրությանը, նպաստում են խաղաղության ամրապնդմանը։

Համագործակցության և տնտեսական ինտեգրացման կոմպլեքսային ծրա-



գրում ասված է, որ զարգացնելով սոցիալիստական ինտեգրացումը, ՏՓԽ-ի երկրները նպատակ ունեն աջակցելու, որ ավելի արագ զարգանան արտադրաուժերը բոլոր երկրներում, լիովին ապահովվեն նրանց ժողովրդական տնտեսությունների աճող պահանջմունքները, անընդհատ բարձրանա ժողովուրդների կյանքի նյութական և կուլտուրական մակարդակը, մերձենան և հավասարվեն երկրների տնտեսական ու կուլտուրական զարգացման մակարդակները, ավելի ամրապնդվեն եղբայրական երկրների դիրքերը արդի գիտա-տեխնիկական հեղափոխության և երկու սիստեմների տնտեսական մրցության մեջ։

«Երկու սիստեմների միջև պայքարի սրման պայմաններում այդ մրցությունը պահանջում է,— ասված է կոմկուսակցությունների ներկայացուցիչների 1969 թվականի միջազգային խորհրդակցության Հիմնական Փաստաթղթում,— որ սոցիալիստական սիստեմը, ելնելով սոցիալիստական պետությունների հիմնական շահերի ու նպատակների ընդհանրությունից, նրանց քաղաքականության հիմքում ընկած մարքսիզմ-լենինիզմի սկզբունքներից, ավելի ու ավելի մեծ չափով հենվի աշխատանքի միջազգային սոցիալիստական բաժանման և այդ պետությունների այնպիսի կամավոր կոոպերացման վրա, որը բացառում է ազգային շահերի որևէ սահմանափակում, ապահովում է յուրաքանչյուր առանձին երկրի վերելքը և ամբողջությամբ վերցրած սոցիալիզմի համաշխարհային սիստեմի հզորության ամրապնդումը»։

Ինտեգրացման համար կարևոր նշանակություն ունեն եղբայրական երկրների տնտեսական զարգացման մակարդակների աստիճանական մերձեցումն ու հավասարեցումը։ Կոմպլեքսային ծրագրում նշված է, որ սոցիալիստական և կոմունիստական շինարարության կարևորագույն խնդրի (կապիտալիստական երկրների համեմատությամբ սոցիալիստական երկրներում հասարակական աշխատանքի արտադրողականության ավելի բարձր մակարդակի ապահովումը) լուծումը սերտորեն զուգակցվում է եղբայրական երկրների տնտեսական զարգացման մակարդակների մերձեցման և հավասարեցման պրոցեսի հետ։ Սոցիալիստական երկրների զարգացման մակարդակների հավասարեցումը աստիճանաբար տանում է դեպի նրանց էկոնոմիկայի ինտեգրացում։ Վերջինս, իր հերթին, լավագույն պայմաններ է ստեղծում հավասարեցման պրոցեսն արագացնելու և ավարտելու համար։

Եղբայրական երկրների միատիպ պետական սեփականության սոցիալիստական բովանդակությունը նրանց մերձեցման և ինտեգրացման կարևոր նախադրյալներից մեկն է։ Այդ երկրների միջև հաստատված տնտեսական հարաբերությունների հիմքում ընկած են սոցիալիստական ինտերնացիոնալիզմի սկզբունքները։ Իսկ Սոցիալիզմը մերձեցնում է ժողովուրդներին և երկրները։

Սոցիալիստական տնտեսական ինտեգրացման կարևորագույն գործոններից մեկը երկրների համագործակցության և փոխօգնության բոլոր ձևերի խորացումը, զարգացումը և կատարելագործումն է։

Սոցիալիստական երկրների տնտեսական համագործակցությունն արդի էտապում նրանց արտադրաուժերի զարգացման կարևոր արտաքին գործոնն է։ Նոր աշխարհի կառուցման պրակտիկան ցույց է տալիս, որ աստիճանաբար մեծանում է ինտեգրացման արտաքին (առանձին երկրների համար) գործոնների, հատկապես երկրների բազմակողմանի համագործակցության դերը, բայց, հասկանալի է, ոչ ներքին գործոնների թերագնահատման հաշվին։

Երկրների բազմակողմանի (տնտեսական, քաղաքական, ռազմական, գի-

տատեխնիկական, կուլտուրական, գաղափարական) համագործակցությունը նրանց առաջընթացի, ինտեգրացման իրականացման սովորական գործոն չէ, այլ այնպիսին, որը իր ներքին կյանքի է կոչում նոր գործոններ, դառնում լրացուցիչ միջոցների և հնարավորությունների աղբյուր, դրական ազդեցություն թողնում մի շարք ներքին (առանձին երկրների համար) գործոնների վրա, ավելի նպաստավոր պայմաններ ստեղծում դրանց գործողության, ներքին հնարավորությունների արդյունավետ օգտագործման համար: Պատահական չէ, որ կոմպլեքսային ծրագրում համագործակցության հետագա կատարելագործումը և ինտեգրացման զարգացումը դիտվում են անբաժան միասնության մեջ, նույնիսկ միասին են տրված նրանց սահմանումը, նպատակը, իրականացման ուղիները և միջոցները։ Կոմպլեքսային ծրագիրը, կարելի է ասել, հենց եղբայրական երկրների համագործակցության կազմակերպման, խորացման և կատարելագործման ծրագիր է։

Մինչև վերջերս եղբայրական երկրների սոցիալիստական շինարարության պրոցեսում գոյություն ուներ ունիվերսալիզմի, ամեն ինչ արտադրելու միտում, համեմատաբար քիչ ուշադրություն էր դարձվում արտադրության միջպետական մասնագիտացմանն ու կոոպերացմանը, աշխատանքի ներպետական բաժանումը չափից ավելի գերակշռում էր միջպետականի, արտադրության էքստենսիվ զարգացումը՝ ինտենսիվի նկատմամբ։ Սոցիալիզմի համաշխարհային սիստեմի զարգացման այդ սկզբնական էտապի համար բնորոշ էին համագործակցության այն ձևերը, որոնք սահմանափակվում էին արտաքին առևտրով, ավելի զարգացած երկրների կողմից պակաս զարգացածներին օգնություն ցույց տալով և անհատույց գիտատեխնիկական զանազան փաստաթղթեր մատակարարելով։ Վաթսունական թվականների երկրորդ կեսից ՏՓԽ-ի երկրների սոցիալ-տնտեսական առաջադիմությունն առաջադրեց խոշոր մասշտաբի այնպիսի խնդիրներ, որոնց լուծման համար երկրների համագործակցության նախկին մի քանի ձևեր և մեթոդներ լրիվ արդյունավետ չգտնվեցին։

Սոցիալիստական համագործակցության երկրների առջև ծառացան այնպիսի կարևոր, արմատական պրոբլեմներ, որոնց լուծումն առանձին երկրների ուժերով ո՛չ հնարավոր է, ո՛չ էլ շահավետ։ Մենք նկատի ունենք առաջին հերթին գիտա-տեխնիկական առաջադիմության ապահովումը, արտադրության արդյունավետության զգալի բարձրացումը, երկրներն անհրաժեշտ հումքով, վառելանյութով և էներգիայով ապահովելը և այլն։ Այդ և նման ուրիշ պրոբլեմներ ժամանակակից մակարդակով կարելի է լուծել երկրների համատեղ ուժերով ու ջանքերով, միավորելով նրանց նյութական, աշխատանքային և ֆինանսական ռեսուրսները, այսինքն՝ ընթանալով սոցիալիստական տնտեսական ինտեգրացման ուղիով:

Հայտնի է, որ արտադրության տեխնիկա-տնտեսական լավագույն ցուցանիշները ձեռք են բերվում արտադրանքի սերիական, զանգվածային թողարկման ժամանակ։ Սակայն ոչ բոլոր սոցիալիստական երկրներում, առավել ևս նրանց ժողովրդական տնտեսության ոչ բոլոր ճյուղերում կան նպաստավոր պայմաններ այդպիսի խոշոր ձեռնարկությունների ստեղծման համար։ Կան երկրներ, որոնք լրիվ ապահովված չեն ներքին շուկայով, հումքով, վառելիքով, բանվորական ուժով, անհրաժեշտ մասնագետներով։ Ժամանակակից գիտա-տեխնիկական հեղափոխությունը պահանջում է մեծ ծախսեր, գիտության ու տեխնիկայի բարձր մակարդակ, որակյալ կադրեր։



Վերցնենք օրինակ, հումքի-վառելիքի պրոբլեմը։ Սովետական Միությունն ավելի քան 70 տոկոսով բավարարում է ՏՓԽ-ի երկրների, Կուբայի, ինչպես նաև զգալի չափով՝ ՎԴՀ-ի և ԿԺԴՀ-ի պահանջմունքները հումքի ու վառելիքի բնագավառում։ Բայց հումքի արդյունահանումը շատ աշխատատար և մեծ կապիտալ ներդրումներ պահանջող, դանդաղ հատուցվող պրոցես է, ուստի հումք մատակարարող երկրի համար ստեղծում են մի շարք դժվարություններ։ Իսկ համագործակցությունը մասնակից բոլոր երկրների համար պետք է փոխադարձաբար շահավետ լինի։ Հասկանալի է, որ հումքա-վառելիքային պրոբլեմը չի կարելի լուծել առաջվա պես, արտաքին առևտրի, ապրանքափոխանակության ընդլայնման ճանապարհով, համագործակցության միայն հին ձևերով: Այն կարող է լուծվել միայն կոմպլեքսային և երկարաժամկետ նպատակային ծրագրի հիման վրա, որն ընդգրկի ինչպես հետազոտական և նախագծային-կոնստրուկտորական աշխատանքների փուլը, այնպես էլ համապատասխան սարքավորումների արտադրության բնագավառում միջպետական մասնագիտացման և կոոպերացման կազմակերպումը, արտադրական կարողությունների ֆինանսավորումը, կառավարումը և օգտագործումը՝ շահագրգռված երկրների միացյալ ջանքերով: Դեռևս կոմինտերնի II կոնգրեսն իր փաստաթղթերից մեկում նշեց, որ վառելիքի և հումքի հարցը ինտերնացիոնալ հարց է, որը կարող է լուծվել երկրների համատեղ ջանքերով՝ սոցիալիստական արտադրության հիմքի վրա։

Սոցիալիզմի համաշխարհային սիստեմի զարգացման արդի փուլում, երբ երկրները կիրառում են սոցիալիստական տնտեսավարման առավել կատարյալ մեթոդներ, լուծում գիտա-տեխնիկական հեղաշրջման նվաճումների լիակատար օգտագործման, հանրային արտադրության արդյունավետության առավելագույն բարձրացման, ժողովուրդների բարեկեցության վերելքի խոշոր և կարևոր խնդիրներ, անհրաժեշտ է կատարելագործել տնտեսական համագործակցության ձևերն ու մեթոդները։ Այդ համագործակցությունը պետք է ավելի գործուն դառնա, ավելի լավ նպաստի ՏՓԽ-ի անդամ յուրաքանչյուր երկրի և ամբողջ համագործակցության առջև դրված խնդիրների, սոցիալիստական և կոմունիստական շինարարության հանգուցային պրոբլեմների լուծմանը:

Սոցիալիստական երկրների տնտեսական համագործակցությունը իրականացվում է բազմազան ձևերով՝ արտաքին առևտուր, ժողովրդատնտեսական պլանների կոորդինացում, արտադրության միջպետական մասնագիտացում և կոոպերացում, գիտա-տեխնիկական փոխօգնություն, կարևոր օբյեկտների համատեղ շինարարություն և այլն։ Այժմ պահանջվում է նշված բոլոր ձևերի հետագա խորացում, զարգացում և կատարելագործում: Միաժամանակ կյանքի են կոչվում երկրների համատեղ պլանային գործունեության, նրանց համագործակցության նոր տարրեր, ձևեր, այսինքն՝ էկոնոմիկայի, գիտության և տեխնիկայի կարևորագույն բնագավառներում համատեղ պրոգնոզավորում, ժողովրդական տնտեսության պլանների կոորդինացում՝ ավելի տևական ժամանակաշրջանի համար, տեխնիկական առաջադիմության արագացման համար կարևոր նշանակություն ունեցող արտադրության առանձին ճյուղերի և տեսակների համատեղ պլանավորում, տնտեսական քաղաքականության և շինարարության հիմնական հարցերի վերաբերյալ փոխադարձ սիստեմատիկ կոնսուլտացիաների, ինֆորմացիայի և փորձի փոխանակման կազմակերպում և այլն։ Բանն այն է, որ սոցիալիստական տնտեսական ինտեգրացումը են-

թադրում է եղբայրական երկրների համագործակցության ամենից ավելի կարևոր, բարձր, հեռանկարային ձևերի արագ զարգացում։ Ինտեգրացումն ինքը այլ բան չէ, քան երկրների բազմակողմանի համագործակցության որակապես նոր փուլ, ավելի բարձր ձև։

Նրա իրականացումը պահանջում է պետությունների համատեղ պլանային գործունեություն, համապատասխան միջպետական զանազան (արտադրական, գիտա-տեխնիկական, տրանսպորտային, կապի, առևտրական, վարկային-ֆինանսական) կազմակերպությունների, հիմնարկությունների և ձեռնարկությունների ստեղծում, ինչպես նաև տնտեսական, քաղաքական և կազմակերպական բնույթի միջոցառումներ։ Սոցիալիստական երկրների տնտեսական համագործակցությունն արդեն այժմ հենվում է միջպետական տնտեսական և գիտա-տեխնիկական կազմակերպությունների, հիմնարկությունների, ձեռնարկությունների բավականաչափ լայն ցանցի վրա։ Ստեղծվում են մի շարք կոորդինացիոն կենտրոններ, միջպետական արտադրական համալիրներ և այլն։

Սոցիալիստական երկրների մերձեցման և աստիճանական ինտեգրացման զարգացումը պայմանավորված է ոչ միայն որոշակի նյութական, տնտեսական նախադրյալներով և գործոններով, այլև նրանց միջպետական համագործակցության և փոխօգնության համապատասխան մեխանիզմով։ Այդ մեխանիզմը ներառում է տնտեսական մեթոդների, պլանային և շուկայական լծակների, կազմակերպական-իրավական հիմքերի խելացի զուգակցում և պետք է անընդհատ զարգանա, կատարելագործվի։

Սոցիալիստական երկրների տնտեսական ինտեգրացման ձևավորման մեջ վճռական դերը պատկանում է նրանց համատեղ պլանային գործունեությանը և, առաջին հերթին, ժողովրդական տնտեսության պլանների կոորդինացմանը։ Պետական պլանը ինտեգրացման պրոցեսի զարգացման ամենից ավելի գործուն լծակն է։ Պլանային գործունեության ոլորտում երկրների համագործակցությունն է՛լ ավելի խորացնելու և կատարելագործելու նպատակով ՏՓԽ-ի XXV նստաշրջանը կազմեց ՏՓԽ-ի պլանային գործունեության բնագավառի համագործակցության կոմիտե։ Սոցիալիստական պետությունների ժողովրդա-տնտեսական պլանների կամավոր կոորդինացումը նպաստում է սոցիալիստական սիստեմի տնտեսական և քաղաքական առավելությունների համակողմանի օգտագործմանը, նոր հասարակարգի հաջող կառուցմանը։

Պլանների կոորդինացումը համագործակցության շատ լայն ձև է, որն ընդգրկում է և՛ արտադրության, և՛ շրջանառության ոլորտները։ Կոորդինացումը երկրների կայուն կապերը և համագործակցությունն ընդլայնելու ու զարգացնելու, համագործակցության այլ ձևեր ստեղծելու շատ կարևոր միջոց է։ Այն լայն ճանաչում է գտել և դարձել է ՏՓԽ-ի գործունեության հիմնական մեթոդը, աշխատանքի միջազգային սոցիալիստական բաժանումը պլանաչափորեն խորացնելու, յուրաքանչյուր երկրի ազգային շահերը ամբողջ համաշխարհային սիստեմի ընդհանուր շահերի հետ խելացիորեն զուգակցելու գլխավոր միջոցը։ Գնալով լայն չափով տարածվում և ճանաչվում են աշխատանքի միջազգային սոցիալիստական բաժանման առաջադեմ ձևերը՝ արտադրության մասնագիտացումը և կոոպերացումը։ Աշխատանքի սոցիալիստական բաժանման այդ ձևերի տարածումը ուժեղացնում է առանձին երկրների տնտեսական և գիտա-տեխնիկական զարգացման փոխկախվածությունը, նրանց ազգային



տնտեսություններն սկսում են ավելի մեծ չափով լրացնել միմյանց։ Այս ամենը խթանում է ինտեգրացիոն պրոցեսների ծավալումն ու զարգացումը։

Սոցիալիստական տնտեսական ինտեգրացման ձևավորման և զարգացման գործում վճռական կազմակերպող դերը պատկանում է Տնտեսական Փոխօգնության Խորհրդին, որը ստեղծվել է 1949 թվականին։ Անցած երկու տասնամյակների ընթացքում այն մեծ դեր է խաղացել եղբայրական երկրների սերտ համագործակցության և փոխօգնության կազմակերպման գործում։ Ինչպես նշվեց ՏՓԽ-ի XXV նստաշրջանում, սոցիալիստական երկրների ձեռք բերած մեծ «հաջողություններում դրսևորվում է ՏՓԽ-ի ակտիվ դերը, որպես նոր տիպի տնտեսական համագործակցության կազմակերպության, որը միավորում է իրավահավասար, սուվերեն սոցիալիստական պետությունների ջանքերը» («Սովետական Հայաստան», 31 հուլիսի, 1971 թ.)։

Սոցիալիստական տնտեսական ինտեգրացումն իրականացնելու գործում մեծ նշանակություն ունեն նաև քաղաքական և գաղափարական նախադրյալներն ու գործոնները։ Այստեղ մենք նկատի ունենք սոցիալիստական երկրների քաղաքական համագործակցությունը, մասնավորապես պաշտպանական համագործակցությունը՝ Վարշավայի պայմանագրի կազմակերպության շրջանակներում, ինչպես նաև՝ սոցիալիզմի երկրների աշխատավորների դաստիարակությունը սոցիալիստական ինտերնացիոնալիզմի, եղբայրական փոխօգնության ոգով։ Ինտեգրացման կուրսն իրականացնելու համար, այսպիսով, կարևոր են նաև սուբյեկտիվ գործոնները։ Սխալ կլիներ ինտեգրացումը համարել միայն նեղ տնտեսական պրոցես։ Սոցիալիստական պետությունների մերձեցման պրոցեսը բազմակողմանի և բազմաասպեկտ է, ընդգրկում է տնտեսական, սոցիալ-քաղաքական, կուլտուրական և գաղափարական բնագավառները։

Սոցիալիզմի երկրների տնտեսական ինտեգրացումը սերտորեն կապված է նրանց քաղաքական համախմբման հետ։ Այդ երկու պրոցեսները գտնվում են դիալեկտիկական միասնության մեջ։ Եղբայրական երկրների մերձեցումը և տնտեսական հզորությունը նպաստում են նրանց քաղաքական համախմբմանը, իսկ վերջինս հեշտացնում է նրանց տնտեսական համագործակցությունը և ինտեգրացումը։

Տնտեսական ինտեգրացման, նրա կոմպլեքսային ծրագրի հաջող կենսագործումը հսկայական քաղաքական նշանակություն ունի։ ՏՓԽ-ի XXV նստաշրջանի մասնակիցները նշեցին, որ կոմպլեքսային ծրագրի իրականացումը «է՛լ ավելի կամրապնդի սոցիալիզմի եղբայրական երկրների քաղաքական միասնությունն ու համախմբվածությունը, որն առանձնահատուկ նշանակություն ունի իմպերիալիզմի դեմ, համաշխարհային սոցիալիզմի դիրքերը խարխլելու նրա քաղաքականության դեմ մղվող պայքարում, հասարակական կյանքի բոլոր բնագավառներում կապիտալիզմի նկատմամբ նոր հասարակարգի գերազանցության, աշխարհում սոցիալիզմի հեղինակության ու ազդեցության բարձրացման, ամբողջ հակաիմպերիալիստական ճակատի ամրապնդման համար մղվող պայքարում։

# Նշանավոր ՏԱՐԵԹՎԵՐ

## ՄԻՋԱԶԳԱՅԻՆ ԲԱՆՎՈՐԱԿԱՆ ՇԱՐԺՄԱՆ ԱԿԱՆԱՎՈՐ ԳՈՐԾԻՉԸ

(Գ. ԴԻՄԻՏՐՈՎԻ ԾՆՆԴՅԱՆ 90-ԱՄՅԱԿԻ ԱՌԹԻՎ)



Գեորգի Դիմիտրովի անունը չի կարելի արտասանել առանց հմայքի և խոր ակնածանքի: Նրա իմաստալից կյանքը, հեղափոխական անխոնջ պայքարը մարքսիզմ-լենինիզմի ամենահաղթ գաղափարներին անձնվիրաբար ծառայելու փայլուն օրինակ է: Հեղափոխության անվեհեր մարտիկն ու բոցաշունչ տրիբունը իր կյանքի ամբողջ իմաստը տեսել է աշխատավորների ազատագրման համար մղվող պայքարում:

Գեորգի Դիմիտրովը ծնվել է 1882 թվականի հունիսի 18-ին, բուլղարական Կովաչևցի գյուղում, բանվորի ընտանիքում: Նրա հայրը՝ Միխայիլ Դիմիտրովը հեղափոխական բանվոր էր, որն իր որդուն դեռ վաղ հասակից հաղորդակից է դարձնում սոցիալական անարդարության դեմ բանվոր դասակարգի մղած ազատագրական պայքարին: 1894 թվականին 12-ամյա Դիմիտրովը նյութական ծանր պայմանների հետևանքով թողնում է դպրոցը և նետվում կյանքի հորձանուտը:

Քիչ ժամանակ էր պահանջվում, որպեսզի Սոֆիայի տպագրիչ բանվոր Գեորգի Դիմիտրովը դառնար ոչ միայն ճանաչված հեղափոխական մարտիկ, այլև Բուլղարիայում մարքսիզմի գաղափարների ակտիվ տարածողներից ու մարքսիստական հեղափոխական խմբակների կազմակերպիչներից մեկը: Տակավին 18 տարեկան էր նա, երբ ուսումնասիրում ու բանվորական շրջաններում անլեգալ կերպով տարածում էր «Կոմունիստական Մանիֆեստի», «Կապիտալի» և Մարքսի ու Էնգելսի այլ աշխատությունների գաղափարները: Նա ակնապիշ հետևում էր Ռուսաստանում ծավալվող բանվորական հեղափոխական շարժմանը և նրա հաղթանակի մեջ էր տեսնում Բուլղարիայի ազատագրման հեռանկարները: Մարքսիստական գրականությանը լավատեղյակ լինելը, բանվորական շարժումը գիտական սոցիալիզմի գաղափարներին միացնելու համար նրա մղած պայքարը, Դիմիտրովին շուտով դարձնում են բուլղարական բանվոր դասակարգի և նրա ավանգարդ սոցիալ-դեմոկրատական բանվորական կուսակցության ղեկավարներից մեկը: Արդեն 1902 թվականից Դիմիտրովին տեսնում ենք Բուլղարիայում մարքսիստական առաջին կուսակցության ստեղծող, մեծ մտածող Դմիտրի Բլագոևի կողքին՝ բանվորական շարժման մեջ ռևիզիոնիզմի և օպորտունիզմի դեմ պայքարելիս: Բլագոևի հետ նա ղեկավարում է բանվորական սոցիալ-դեմոկրատական կուսակցության հեղափոխական մարքսիստական թևը, ինչպես իրենք են անվանում՝ տեսնյակներին: 1909 թվականին կուսակցության համագումարում Դիմիտրովն ընտրվում է Կենտկոմի անդամ և մինչև իր կյանքի վերջը մնում կուսակցական ղեկավար պոստերում:

900-ական թվականներին Բուլղարիայի բանվորական շարժման մեջ կարևոր նշանակություն է ստանում արհմիություններում տարվող աշխատանքը: Դեռևս 1904 թվականից ղեկավար մասնակցություն ունենալով Բուլղարիայի արհմիութենական շարժման կազմակերպմանը, Դիմիտրովը հսկայական տեսական ու պրակտիկ գործ է կատարում հեղափոխական արհմիությունների միավորման համար: 1909 թվականին նա ընտրվում է ընդհանուր բանվորական արհմիությունների քարտուղար և անփոփոխ ղեկավարում նրանց գործունեությունը մինչև 1923 թվականը: Այդ տարիներին տեղի ունեցած բանվորական ելույթները, գործադուլները ու ցույցերը, ինչպես նաև բանվորական-սոցիալիստական շարժման կադրերի պատրաստումն ամբողջովին կապված են Դիմիտրովի անվան հետ:

Դիմիտրովը շատ լավ էր հասկանում, որ բուրժուազիայի նկատմամբ բանվոր դասակարգի հաղթանակը միջազգային մասշտաբով կարող է ձեռք բերվել միայն բոլոր երկրների բանվորների սերտ համագործակցության և ինտերնացիոնալ համախմբվածության պայմաններում: Ահա թե ինչու, ղեկավարելով Բուլղարիայի բանվոր դասակարգի հեղափոխական պայքարը, նա միաժամանակ գաղափարական և կազմակերպական հսկայական աշխատանք է ծավալում բալկանյան բոլոր երկրների բանվորների սերտ համագործակցության համար, հանդես է գալիս Երկրորդ Ինտերնացիոնալի և արհմիությունների Ամստերդամյան ինտերնացիոնալի օպորտունիստական ղեկավարության քայքայիչ գործունեության դեմ: Նրա ելույթները բալկանյան սոցիալ-դեմոկրատների կոնֆերանսներում (1909 և 1915 թվականներին), Բուդապեշտում կայացած արհմիությունների միջազգային կոնֆերանսում (1911 թվականին), ռումինա-

կան սոցիալ-դեմոկրատական կուսակցության համագումարում (1912 թվականին) և այլ տեղերում— մեղադրական ակտ են միջազգային բանվորական շարժման պառակտիչների դեմ: Նրա այդ ելույթները ցայսօր էլ չեն կորցրել իրենց նշանակությունը և ժամանակակից օպորտունիզմի ու ռևիզիոնիզմի դեմ մղվող պայքարում կարող են ծառայել որպես ուսանելի օրինակ:

Երբ սկսվեցին Բալկանյան պատերազմները, Դիմիտրովը անվախ հանդես եկավ իմպերիալիստական պետությունների դիտավորությունների մերկացմամբ, իսկ առաջին համաշխարհային իմպերիալիստական պատերազմի տարիներին, մինչև վերջ հավատարիմ մնալով պատերազմի նկատմամբ բոլշևիկների վարած լենինյան տակտիկային, հսկայական աշխատանք ծավալեց Բուլղարիայում և ամբողջ բալկաններում իմպերիալիստական պատերազմը քաղաքացիականի վերածելու ուղղությամբ: Վտանգի ենթարկելով իր կյանքը, նա խիզախորեն հանդես էր գալիս իմպերիալիստական պատերազմին Բուլղարիայի մասնակցելու դեմ: Դիմիտրովի անունը դառնում է իմպերիալիստական պատերազմի դեմ պայքարի դրոշ, որից սոսկում էին բանվոր դասակարգի թշնամիները:

1919—1923 թվականներին Դիմիտրովը բուլղարական պառլամենտի անդամ էր: Այդ տարիներին Բուլղարիայի ռեակցիոն կառավարողները բազմիցս մահափորձեր են կատարում նրա դեմ, և միայն երջանիկ պատահականություններն ու կոնսպիրատիվ աշխատանքի հմտությունը փրկում են նրա կյանքը:

Հոկտեմբերյան սոցիալիստական մեծ հեղափոխության հաղթանակը ողջունեցին և նրա պաշտպանությամբ հանդես եկան աշխարհի բանվորական բոլոր կուսակցությունները, այդ թվում և բուլղարական տեսնյակները՝ Գեորգի Դիմիտրովի ղեկավարությամբ: Երկրում ծավալվեց հեղափոխական հզոր ալիք, որի դեմն առնելու նպատակով Բուլղարիայի ռեակցիոն ղեկավարողները ուժեղացրին հալածանքները տեսնյակների նկատմամբ և ձերբակալեցին ու բանտ նետեցին Դիմիտրովին: Սակայն նրա ձերբակալումը հակառակ արդյունք տվեց: Երկրում ծավալվեցին բանվորական հզոր ցույցեր՝ Դիմիտրովին ազատելու նշանաբանով: Բանվորական մասսաների ճնշման տակ 1918 թվականի դեկտեմբերին Դիմիտրովն ազատ արձակվեց:

Կոմունիստական շարժումը նոր թափ ստացավ: 1919 թվականին Տեսնյակները ձևավորվեցին որպես կոմունիստական կուսակցություն, որը և մտավ կոմունիստական III ինտերնացիոնալի մեջ: 1921 թվականի հունվարին Դիմիտրովը Մոսկվայում էր: Նրան ընդունեց Լենինը և երկար զրույց ունեցավ, որը հսկայական դեր խաղաց Դիմիտրովի հեղափոխական հետագա գործունեության մեջ: Հունիսին, որպես բուլղարական կոմունիստական կուսակցության պատգամավոր, Դիմիտրովը մասնակցեց կոմինտերնի III կոնգրեսին: Այս շրջանից արդեն Դիմիտրովը դարձավ միջազգային բանվորական շարժման ճանաչված գործիչներից մեկը:

1921 թվականին բուլղարական բանվորական շարժումը նոր վերելք ապրեց: Հեղափոխական բանվորները վճռականորեն հանդես եկան ֆաշիստական տարրերի դեմ, որոնք ձգտում էին զավթել իշխանությունը: Դիմիտրովը ղեկավարում էր բանվորական այդ ելույթները: 1923 թվականին բուլղարական բանվորական շարժմանը լուրջ հարված հասցվեց: Հունիսի 9-ին երկրում տեղի ունեցավ ֆաշիստական հեղաշրջում, իշխանությունն անցավ բուլղար ժողովրդի դահիճ Ցանկովի ձեռքը: Կոմունիստական կուսակցության գործունեու-



թյունն արգելվեց: Երկրում շարժում ծավալվեց ֆաշիստական դիկտատուրայի տապալման համար: Կոմունիստներն անցան ընդհատակ: Դիմիտրովի ղեկավարությամբ ստեղծվեց հեղափոխական գլխավոր կոմիտե: Սեպտեմբերին տեղի ունեցավ հերոսական զինված ապստամբություն, որը, սակայն, շուտով արյան մեջ խեղդվեց: Ֆաշիստական դատարանը, զինված ապստամբությունը գլխավորելու համար, Դիմիտրովին դատապարտեց մահվան: Երկրում դաժան տեռոր սկսվեց կոմունիստական կուսակցության անդամների դեմ: Դիմիտրովը ստիպված եղավ վտարանդի դառնալ: Երկու տարվա ընթացքում ֆաշիստները բանտեր նետվեցին ու գնդակահարվեցին հազարավոր հեղափոխականներ: 1926 թվականին ֆաշիստները պրովոկացիոն պրոցես սկսեցին կոմունիստների դեմ: Դիմիտրովը հեռակա կարգով կրկին դատապարտվեց գնդակահարության՝ 1924 թվականին արտասահմանյան հեղափոխական կոմիտե ստեղծելու համար: Գտնվելով էմիգրացիայում (Հարավսլավիայում, Ավստրիայում, Ամստերդամում, Փարիզում), Դիմիտրովը ակտիվ աշխատանք է տանում միջազգային կոմունիստական շարժման ամրապնդման համար:

1933 թվականին Գերմանիայում իշխանությունը զավթեցին ֆաշիստները, որոնք նպատակ էին դրել արշավանք սկսել համաշխարհային կոմունիզմի դեմ, ոչնչացնել Գերմանիայի կոմունիստական կուսակցությունը, այն կուսակցությունը, որը 1932 թվականի նոյեմբերին Ռայխստագի ընտրությունների ժամանակ ստացել էր 6 միլիոն ձայն: Ֆաշիստները կոմունիստներին մեղադրում էին այն բանում, որ, իբր թե Կարլ Լիբկնեխտի բնակարանի խուզարկության ժամանակ հայտնաբերվել են փաստաթղթեր կոմունիստների կողմից նախապատրաստվող ապստամբության մասին: Սակայն այս մեղադրանքներն այնքան փաստազուրկ էին, որ ֆաշիստական պարագլուխները որոշեցին ավելի ազդու պրովոկացիայի դիմել: 1933 թվականի փետրվարի 27-ին նրանք հրդեհեցին Ռայխստագը և ամբողջ մեղքը բարդեցին կոմունիստների վրա: Կոմունիստների դեմ ծավալվող ֆաշիստական տեռորի դաժան պայմաններում, 1933 թվականին, Գերմանիայում ձերբակալվեց Դիմիտրովը: Ֆաշիստական բախտախնդիրները կառափնարան էին տանում Դիմիտրովին՝ նրա արյան գնով սրբագործելու մարդկության դեմ ուղղված իրենց չարագործությունները:

Մարտի 9-ին Դիմիտրովի հետ միասին ձերբակալվեցին նաև բուլղարական կոմունիստներ Պոպովը և Տանեվը: Նրանք նետվեցին Մոաբիտի մահվան խցիկները: Այդ երեք կոմունիստներին վերագրվեց Ռայխստագի հրկիզումը: Միջազգային հասարակայնությանը նախապատրաստվող պրովոկացիայի մասին տեղյակ պահելու նպատակով Դիմիտրովը նամակներ է գրում ականավոր մի շարք հասարակական գործիչների: Այսպես՝ 1933 թվականի մարտի 28-ին Հանրի Բարբյուսին բանտից գրած նամակում նա հայտնում էր, որ առողջությունը խիստ քայքայվել է, որ իրեն զրկել են արտաքին աշխարհի հետ որևէ կապից, որ իրենից խլել են բոլոր փողերը և, նույնիսկ, ակնոցները, որ ինքը մնացել է առանց որևէ կոպեկի: Դիմիտրովը խնդրում է իր բարեկամին այս մասին հայտնել նաև Ռոմեն Ռոլանին: Ապրիլի 4-ից ֆաշիստները Դիմիտրովի ձեռքերն ու ոտքերը շղթայակապում են, նրան ենթարկելով անասելի խոշտանգումների: Գեստապոյական սպան ամեն օր ստուգում էր ոտնակապանդների և ձեռնակապանդների ամրությունը: Ոտքերին ու ձեռքերին առաջացած վերքերը սոսկալի ցավեր էին պատճառում նրան: Դիմիտրովը ներվերի մեծ լարվածու-

թյամբ պայքարում էր իր նկատմամբ կիրառվող անարդարությունների դեմ, բայց չէր ընկճվում:

Դիմիտրովի նկատմամբ բանտում կիրառվող գազանությունների մասին միջազգային հասարակայնությունը մեծ մասամբ տեղեկանում էր նրա մոր զառամյալ Պարասկեվա Դիմիտրովայի միջոցով, որը կորցնելով իր երեք հեղափոխական որդիներին, չէր կորցրել հավատը նրանց պայքարի հաղթանակի նկատմամբ: Դիմիտրովի մայրը, քույրերը՝ Ելենան և Մագդալինան, կինը՝ պրոլետարական տաղանդավոր բանաստեղծուհի Լյուբով Իվաշեվիչը եվրոպական բազմաթիվ երկրներում հանդես եկան ի պաշտպանություն Գեորգի Դիմիտրովի: Նրա պաշտպանությամբ հանդես եկան Ռոմեն Ռոլանն ու Հանրի Բարբյուսը, Մաքսիմ Գորկին ու Ժան-Ռիշար Բլոկը...

Միջազգային դեմոկրատական հասարակայնությունը անտարբեր չմնաց դարի խոշորագույն պրովոկացիոն ակտի դեմ, ստեղծվեց միջազգային հետաքննող հանձնաժողով, որի մեջ մտան աշխարհի մի շարք նշանավոր հասարակական գործիչներ: Աշխարհի կոմունիստական բոլոր կուսակցությունները ամենուրեք կազմակերպեցին բողոքի մասսայական ցույցեր ու ելույթներ, որոնց մասնակցեցին միլիոնավոր բանվորներ:

Փարիզում գործող միջազգային հետաքննող հանձնաժողովը հրատարակեց «Դարչնագույն գիրքը», որտեղ բազմաթիվ անհերքելի փաստերով ապացուցվում էր, որ Ռայխստագի հրկիզումը կազմակերպել էին ֆաշիստները՝ Գյորինգի գլխավորությամբ: Այդ բանը հաստատվեց նաև հետագայում՝ Նյուրնբերգի դատավարության ընթացքում:

Ֆաշիստական բանդիտները տեռորի էին ենթարկում բոլոր նրանց, ովքեր համարձակվում էին հանդես գալ Դիմիտրովի պաշտպանությամբ: Այսպես, տեռորի սպառնալիքով ֆաշիստական դատարանը ստիպեց դատապաշտպան Վիլլի Ռոզենֆելդին հրաժարվելու Դիմիտրովի պաշտպանությունից: Դիմիտրովի դիմումները՝ իրեն դատապաշտպան նշանակելու մասին, մերժվեցին: Կայսերական դատարանի սենատը Դիմիտրովին «դատապաշտպան» նշանակեց ֆաշիստական վարձկան Տեյխերդին: Բանտարկությունից միայն հինգ ամիս հետո Դիմիտրովն ստացավ Ռայխստագը հրկիզող ֆաշիստական մարդասպանների կողմից թխած մեղադրական եզրակացությունը: Ըստ այդ եզրակացության Դիմիտրովին սպասվում էր պատժի առավելագույն չափը՝ գնդակահարություն: Անօրինականության այս մթնոլորտում Դիմիտրովն ստիպված էր հանդես գալ ինքնապաշտպանությամբ:

1933 թվականի սեպտեմբերի 21-ին սկսվեց այդ չարանենգ դատավարությունը: Վեց ամիս ֆաշիստները մեղադրանքներ էին հորինում կոմունիստների դեմ, վարձում լրտեսներ ու դիվերսանտներ, վարժեցնում «վկաներ»: Ամբողջ աշխարհը լարված հետևում էր Լայպցիգի դատավարությանը, որը դարձավ երկու աշխարհների՝ սոցիալիզմի և կապիտալիզմի, երկու հակամարտ դասակարգերի՝ բանվորների և բուրժուաների մենամարտի դաշտ, որտեղ գաղափարական համոզվածությունը հաղթանակ տարավ ֆաշիզմի պետական հզոր մեքենայի դեմ:

Դատավարության ընթացքում ֆաշիստները հարակից մեղադրանքներ էին հարուցում գերմանական կոմունիստների դեմ: Ֆաշիստական թերթերը տպագրեցին գեստապոյի կողմից թխված փաստաթղթեր, թե, իբր, Դիմիտրովը մասնակցել է Սոֆիայի մայր տաճարի պայթեցմանը: Այդ արվեց Դիմիտրովին բուլ-



ղար ժողովրդի պաշտպանությունից զրկելու համար: Լայպցիգյան դատավարությունը վերածվեց կոմունիզմի և ամբողջ աշխարհի քաղաքակրթության դեմ ուղղված ֆաշիստական խաչակրած արշավանքի: Հազարավոր կոմունիստներ այդ դատավարության ընթացքում գնդակահարվեցին ֆաշիստական զնդաններում:

Դիմիտրովը և նրա ընկերները մեկուսացված լինելով արտաքին աշխարհից, անտեղյակ էին այս ամենին: Դիմիտրովի հեղափոխական կամքն ու գաղափարական համոզվածությունն էր, որ հնարավորություն տվեց նրան ճակատ առ ճակատ մարտնչել ֆաշիզմի դեմ և հաղթանակով դուրս գալ այդ մարտերից: Նրա ելույթները ոչ թե պաշտպանական ճառեր էին, ոչ թե մեղայականներ, այլ մեղադրական ակտ՝ ուղղված ֆաշիզմի և կապիտալիզմի ամբողջ սիստեմի դեմ: Նա պաշտպանում էր ոչ թե իրեն, այլ այն կուսակցությանն ու դասակարգին, որոնց պատկանում էր: Եվ դա ավելի շատ էր կատաղեցնում ֆաշիստներին և, ընդհակառակը, հիացմունք առաջացնում ամբողջ աշխարհի աշխատավորների մեջ:

Սոցիալ-դեմոկրատական «Արբայտերցայտունգ»-ը (Վիեննա) այսպես է նկարագրում Գյորինգի հետ Դիմիտրովի ունեցած մենամարտը.

«Այն մարդը, որն այստեղ, Լայպցիգում, այնպես հպարտորեն, խիզախորեն, անվեհեր կերպով կանգնած է ստոր դատարանի առաջ, որը կարող է որպես այդ մռայլ ժամանակի հերոսներից մեկը,— բուլղար կոմունիստ Դիմիտրովն է: Նրա յուրաքանչյուր հարցը նեղք է բացում տխմարության, ստորության ու ցածրության այն պատի մեջ, որը գերմանական տիրակալները կանգնեցնում են փլուզվող կապիտալիզմի շուրջը: Այդ նեղքով փչում է ազատությամբ, վեհությամբ և մարդկային արժանապատվությամբ լի ապագայի շունչը: Նրա յուրաքանչյուր հարցը գրոհ է, և նրա հարցերից ոչ մեկը նրա անձնական պաշտպանությանը չի ծառայում. այդ մահապարտը պայքարում է ոչ թե իր կյանքի, այլև այն բարձր գործի համար, որին նա ենթարկում է իր կյանքը, պայքարում է սոցիալիզմի համար, որը նրան ինքնագիտակցություն, հաղթանակի վստահություն է տալիս:

Հազվադեպ է պատահել տեսնել այնպիսի ցնցող բան, ինչպիսին այդ մարդու պայքարն է գերմանական տիրակալների դեմ: Նրանք, արյան մեջ թաթախված այդ նվաճողները, ունեն պրոպագանդայի մինիստրություն, նրանք ունեն հսկայական հրատարակություններ... Նրանց են պատկանում բոլոր բարձրախոսներն ու բոլոր գնդացիրները, ժողովների բոլոր դահլիճներն ու բոլոր դատարանները, իսկ այս մեղադրյալ բուլղարը, այդ միայնակ Դիմիտրովը ոչինչ չունի, բացի իր շուրթերից, իր արիությունից ու ֆանատիզմից: Եվ, այնուամենայնիվ, գերմանական դատավորները, կրճտացնելով ատամները, զգում են, որ այդ մահապարտն ավելի ուժեղ է, քան իշխանության իրենց ողջ ապարատը, որ նրա յուրաքանչյուր հարցն ավելի մեծ ազդեցություն է գործում, քան դիվայնորեն գործող իրենց ամբողջ պրոպագանդան:

Այս բոլորը պարզվեց երեկ, վերածվելով մի տեսարանի, որտեղ պրոլետարական հեղափոխության էությունը բախվեց ֆաշիստական դիկտատուրայի զարշանքի հետ: Մարդասպան, հրձիգ և մորֆինիստ, տեռորի և մահվան գործերի ամենազոր մինիստր ԳՅՈՐԻՆԳԸ երեկ հանդես եկավ դատարանում որպես վկա: Գ-րն մինիստրը չքաշվեց հայհոյելու անպաշտպան մեղադրյալին, նրան անվանելով «կոմունիստական հանցագործ»: Այն ժամանակ Դիմիտրովը

տեղից բարձրացավ, և նրա ձայնը խախտեց դիկտատուրայի մեռելային լռությունը. «Հայտնի՞ է արդյոք, պ-րն պրեմիեր-մինիստրին, որ այդ կուսակցությունն իշխում է երկրագնդի մեկ վեցերորդ մասում, այն է՝ Սովետական Միությունում»: Նախագահը, թեքվելով դեպի մինիստրը, բղավեց մեղադրյալի վրա. «Ես արգելում եմ ձեզ այստեղ կոմունիստական պրոպագանդա մղել»: Դիմիտրովը հեգնանքով պատասխանեց. «Պ-րն Գյորինգն էլ այստեղ նացիոնալ-սոցիալիստական պրոպագանդա է մղում»:

Մորֆինիստի նյարդերը չդիմացան այդ առարկությանը. կատաղությունից գունատվելով, փրփուրը բերանին, մինիստրը պատասխանեց ամենաանվայել վիրավորանքներով: Պրուսիայի ամենազորեղ մարդը, այն մարդը, որից Գերմանիայում բոլորից ավելի շատ են սարսափում, կորցրեց իրեն, սկսեց գոռալ ու ճղճղալ որպես խելագար»:

Այսպիսին է եղել միջազգային պրոլետարիատի պարծանք Գեորգի Դիմիտրովը:

Այդ դատավարության ընթացքում Դիմիտրովը լենինյան տիպի գործչին հատուկ կրքոտությամբ պաշտպանեց բանվոր դասակարգի գործը, հեղափոխության գործը: Նա դատարանի ամբիոնից համարձակորեն դիմեց ամբողջ աշխարհի աշխատավորներին՝ ֆաշիզմը տապալելու կոչով: Դիմիտրովը ցույց տվեց, որ Ռայխստագի հրկիզումը կատարել են պրովոկատորները, որն ուղղված էր գերմանական պրոլետարիատի ու կոմունիզմի դեմ և նպատակ ուներ ամրապնդել ֆաշիզմի դիրքերը:

Ֆաշիզմն անընդունակ գտնվեց իրագործելու իր պլանները:

Դեկտեմբերի 16-ին Դիմիտրովը դատարանում հանդես եկավ վերջին խոսքով: Դա դատավարության ընթացքում ֆաշիզմի դեմ Դիմիտրովի մղած պայքարի կուլմինացիոն կետն էր: Այդ ելույթում ֆաշիստական պրովոկացիոն մեղադրանքի փաստական և իրավաբանական հիմնավորված մերկացումը զուգակցվում էր օրինակելի ինքնապաշտպանության և Կոմունիստական Ինտերնացիոնալի քաղաքականության հիանալի շարադրանքով: «Ես պաշտպանում եմ ինձ որպես մեղադրված կոմունիստ,— հայտարարել է Դիմիտրովը:

Ես պաշտպանում եմ իմ սեփական կոմունիստական հեղափոխական պատիվը:

Ես պաշտպանում եմ իմ գաղափարները, կոմունիստական իմ համոզմունքները:

Ես պաշտպանում եմ իմ կյանքի իմաստն ու բովանդակությունը»:

Դատարանը միջազգային հասարակայնության ճնշման տակ, Դիմիտրովի հերոսական ինքնապաշտպանության ճնշման տակ ստիպված եղավ արդարացնող դատավճիռ ընդունել: Սակայն, չնայած դրան, Դիմիտրովը դեռևս ազատ չարձակվեց: Նա փոխադրվեց Բեռլին և նետվեց մահվան դատապարտվածների խցիկը, որտեղ երկու ամիս Դիմիտրովը շարունակեց իր մենամարտը ֆաշիզմի դեմ: Ամբողջ աշխարհում սկսվեց նոր կամպանիա Դիմիտրովին ազատելու համար: Բուլղարական կառավարությունը հրաժարվեց Դիմիտրովին ճանաչել բուլղարական քաղաքացի: 1934 թվականի փետրվարի 15-ին սովետական կառավարությունը որոշում ընդունեց Դիմիտրովին սովետական քաղաքացիություն տալու մասին և պահանջեց անհապաղ ազատ արձակել նրան: Ֆաշիստական իշխանությունները միայն դրանից հետո ստիպված եղան Դիմիտրովին դուրս թողնել բանտից: Մոտ մեկ տարի ֆաշիստական զնդաններում խոշտանգում-



ների ենթարկվելուց հետո Դիմիտրովը ազատ արձակվեց և 1934 թվականի փետրվարի 27-ին վերադարձավ Սովետական Միություն, որտեղ նրան սովետական ժողովուրդն ընդունեց մեծ խանդավառությամբ:

Այդ օրը հանդես գալով սովետական և արտասահմանյան ժուռնալիստների առջև, Դիմիտրովը հայտարարեց. «Ֆաշիզմի Լայպցիգյան պարտությունը միջազգային պրոլետարիատի հաղթանակն է: Այդ հաղթանակի համար մենք պարտական ենք Կոմունիստական ինտերնացիոնալին, որն ստեղծվել է 15 տարի առաջ պայքարի կրակում՝ մեր անմոռաց ուսուցիչ և առաջնորդ Լենինի կողմից»:

1935—1943 թվականներին Դիմիտրովը Կոմինտերնի Գործադիր Կոմիտեի գլխավոր քարտուղարն էր, միջազգային բանվորական շարժման ականավոր ղեկավարը: Նա հսկայական գործ կատարեց ֆաշիզմի ու պատերազմի դեմ կոմունիստական կուսակցությունների տակտիկական գծի մշակման համար:

1935 թվականի հուլիսին տեղի ունեցավ Կոմինտերնի համաշխարհային VII կոնգրեսը: «Ֆաշիզմի հարձակումը և Կոմունիստական Ինտերնացիոնալի խնդիրները ֆաշիզմի դեմ բանվոր դասակարգի միասնության համար մղվող պայքարում» զեկուցումով հանդես եկավ Գեորգի Դիմիտրովը:

Դիմիտրովը հեռատեսությամբ նշում էր բանվոր դասակարգի շարքերի պառակտման հնարավոր տխուր հետևանքները: Նա ընդգծում էր, որ պրոլետարիատի դասակարգային պայքարի ազգային ձևերը առանձին երկրներում չեն հակասում պրոլետարական ինտերնացիոնալիզմին, որ, ընդհակառակը, հենց այդ ձևերում հնարավոր է պաշտպանել պրոլետարիատի միջազգային շահերը: Նա կոչ էր անում ստեղծել հակաֆաշիստական լայն ճակատ՝ ժողովրդական ամենալայն խավերի ընդգրկմամբ, բարձրացնել կոմունիստական կուսակցությունների ղեկավար դերը ֆաշիզմի դեմ մղվող պայքարում:

Սովետական ժողովուրդը, բարձր գնահատելով նրա ծառայությունները, 1937 թ. նրան ընտրեց ՍՍՀՄ Գերագույն սովետի դեպուտատ:

1939—1945 թվականներին Դիմիտրովն իր ամբողջ եռանդը, կազմակերպչական տաղանդն ու ջանքերը ներդրեց ֆաշիզմի ջախջախման գործին: Նա անձամբ էր ղեկավարում ֆաշիզմի դեմ բուլղարական կոմունիստների և բոլոր աշխատավորների պայքարը:

1944 թվականի սեպտեմբերին սովետական բանակը, ջախջախելով գերմանաֆաշիստական զավթիչներին, ազատագրեց Բուլղարիան: Բուլղարական կոմունիստները Գեորգի Դիմիտրովի գլխավորությամբ կանգնեցին սեպտեմբերի 9-ին բռնկված հակաֆաշիստական ապստամբության գլուխ: Հեղափոխական հեղաշրջման հետևանքով իշխանությունն անցավ ժողովրդի ձեռքը:

1945 թվականի նոյեմբերին Դիմիտրովը վերադարձավ Բուլղարիա: Դիմիտրովի նախաձեռնությամբ 1946 թվականին երկրում անցկացվեց համաժողովրդական հանրաքվե: Ժողովուրդն արտահայտվեց Բուլղարիայի ժողովրդական Հանրապետություն ստեղծելու օգտին: Ժողովրդական ժողովի ընտրություններում հայրենական ճակատը փայլուն հաղթանակ տարավ: Դիմիտրովը միաձայն ընտրվեց Բուլղարիայի ժողովրդական Հանրապետության առաջին պրեմիեր-մինիստր:

Գեորգի Դիմիտրովը հսկայական ծառայություն ունի Բուլղարիայում սոցիալիզմի կառուցման գործում: Նրա ղեկավարությամբ է մշակվել և ընդունվել Բուլղարիայի դեմոկրատական նոր սահմանադրությունը, նրա ղեկավարու-

թյամբ են ձեռնարկվել և իրագործվել սոցիալիստական առաջին միջոցառումները երկրում, նա է ստորագրել ՍՍՀՄ-ի և Բուլղարիայի միջև 1948 թվականի մարտի 18-ին կնքված բարեկամության, համագործակցության և փոխադարձ օգնության պայմանագրերը, նա է ղեկավարել երկրի ժողովրդական տնտեսության վերականգնման ու սոցիալիստական վերակառուցման գործը:

Բուլղարիայի բանվորական (կոմունիստների) կուսակցության V համագումարին (1948 թ.) տված Կենտկոմի հաշվետու զեկուցման մեջ Դիմիտրովը հատուկ տեղ տվեց «ժողովրդական դեմոկրատիայի և ժողովրդա-դեմոկրատական պետության բնույթի, դերի և հեռանկարների» հարցերին: Դիմիտրովի տեսական հարցադրումները կարևորագույն նշանակություն ունեցան անցման ժամանակաշրջանի պետության առանձնահատկություններն ու խնդիրները որոշելու համար ոչ միայն Բուլղարիայում, այլև ժողովրդա-դեմոկրատական մյուս երկրներում:

Դիմիտրովը խաղաղության մարտիկ էր: Հետպատերազմյան տարիներին նա բազմաթիվ կրակոտ ելույթներ է ունեցել միջազգային խաղաղությանը սպառնացող ամերիկա-անգլիական իմպերիալիստների ոտնձգությունների դեմ, անողոքաբար մերկացրել ժամանակակից ռեվիզիոնիզմն ու օպորտունիզմը բանվորական շարժման մեջ, մեծ ջանքեր է ներդրել սոցիալիզմի լագերի ամրապնդման գործում:

Դիմիտրովը թանկ էր գնահատում բարեկամությունը Սովետական Միության հետ: «Չկա և չի կարող լինել առողջ մտածող և իր հայրենիքը սիրող որևէ բուլղարացի,— ասել է նա,— որը համոզված չլինի, որ Սովետական Միության հետ սերտ բարեկամությունը Բուլղարիայի ազգային անկախության ու ծաղկման համար ոչ պակաս նշանակություն ունի, քան օդն ու ջուրը յուրաքանչյուր կենդանի էակի համար»:

1949 թվականի հուլիսի 2-ին, երկարատև և ծանր հիվանդությունից հետո, մերձմոսկովյան «Բարվիխի» սանատորիայում վախճանվեց Գեորգի Դիմիտրովը: Նրա մահը մեծ կորուստ էր ոչ միայն բուլղար ժողովրդի, այլև միջազգային բանվորական ու կոմունիստական շարժման, ամբողջ աշխարհի առաջադեմ մարդկության համար: Գեորգի Դիմիտրովը չայրեց սովորական կյանքով: Նա այրվում էր յուրաքանչյուր օր, յուրաքանչյուր ժամ և իր բոցով լուսավորում խավարի ու բռնակալության դեմ ոտքի ելած աշխատավորների ուղին:

Սովետական ժողովուրդը բուլղար ժողովրդի հետ իր սրտում միշտ վառ է պահում Գեորգի Դիմիտրովի հիշատակը, որի ամենալավ հուշարձանը վերածնված սոցիալիստական Բուլղարիան է, անհաղթահարելի ուժ դարձած սոցիալիզմի համաշխարհային սիստեմը:

Գ. Ա. ԳԱԼՈՅԱՆ



# ԿՈՒՍԱԿՑԱԿԱՆ ԿՅԱՆՔ

## ԿԱՏԱՐՄԱՆ ՍՏՈՒԳՈՒՄԸ ԿԱՐԵՎՈՐ ԳՈՐԾ Է

ՔՐ. Բ. ՊԵՏՐՈՍՅԱՆ

ՀԿԿ Գորիսի շրջկոմի առաջին քարտուղար

*Կատարման ստուգումը կուսակցական-կազմակերպական աշխատանքի կարևոր բնագավառ է: Ստուգել՝ նշանակում է կազմակերպել որոշման կատարումը, ուղղել սխալները, վերլուծել կենդանի պրակտիկան: ՍՄԿԿ XXIV համագումարը, անդրադառնալով այդ խնդրին, պահանջեց ըստ ամենայնի ուժեղացնել կուսկազմակերպությունների վերահսկողությունն ադմինիստրացիայի գործունեության նկատմամբ, բարձրացնել կազմակերպական աշխատանքի մակարդակը, ապահովել կուսակցության ու կառավարության դիրեկտիվների և սեփական որոշումների անթերի կատարումը:*

*Գործարար որոշումների ընդունումն ու կատարումը օբյեկտիվ անհրաժեշտություն են: Դրանք կոչված են ի հայտ բերելու արտադրության չօգտագործված ռեզերվները, ավելի բարձրացնելու կոմունիստների նախաձեռնությունը, նրանց կազմակերպական-քաղաքական աշխատանքի ունակությունները: Կուսակցական որոշումների կատարման մեջ ամեն մի կոմունիստ տեսնում է իր գործունեությունը, հնարամտությունն ու խիզախումները և իր համեստ լուման՝ ընդհանուր հաջողություններում: Այս սկզբունքով է ծավալում իր գործունեությունը Գորիսի «Ավանգարդ» սովխոզի սկզբնական կուսկազմակերպությունը: 1971 թ. հունվարին կայացած հերթական ժողովում կոմունիստները որոշում ընդունեցին սոցիալիստական մրցությամբ ստանձնած բոլոր պարտավորությունները կատարելու և գերակատարելու, աշխատանքի արտադրողականությունը 15—20 տոկոսով բարձրացնելու մասին: Կուսբյուրոն կոլեկտիվին տեղյակ պահեց որոշմանը: Նրանք ջերմորեն պաշտպանեցին այն: Շուտով սովխոզի բոլոր տեղամասերում բանվորներն ընդգրկվեցին մրցության մեջ և ստանձնեցին կոնկրետ պարտավորություններ: Ամենուրեք, ցուցադրական ագիտացիայի միջոցով, ի տես բոլորի, հրապարակվեցին սոցիալիստական պարտավորությունները, ստեղծվեց մրցության արդյունքներն ամփոփող ժյուրի, առաջավորներին խրախուսելու համար առանձնացվեցին դրամական ան-*

հրաժեշտ միջոցներ։ Կոմունիստները հանդես եկան որպես մրցության կազմակերպիչներ։ Նրանք հետևողականություն էին հանդես բերում սեփական որոշումը կատարելու գործում։

Ավարտվեց տնտեսական տարին, ամփոփվեցին արդյունքները և պարզվեց, որ կուսկազմակերպության որոշումը կատարվել է մինչև վերջ։ Սովխոզի աշխատավորներն աճեցրել են հացահատիկի, մրգի, բանջարեղենի առատ բերք, 200 կգ-ով գերազանցել յուրաքանչյուր կովի կաթնատվության առաջադրանքը, մեծ չափով ավելացրել կաթի, մսի և անասնապահական մյուս մթերքների համախառն արտադրությունը, գերակատարել պետությանը դրանց վաճառքի և բոլոր տեսակի անասունների գլխաքանակի ավելացման պարտավորությունները։ Աշխատանքի արտադրողականությունը բարձրացել է 25 տոկոսով, զգալիորեն իջել է մթերքների ինքնարժեքը։ Սովխոզը տարին փակել է օգուտով։ Ստեղծվել է խոզաբուծական նոր ֆերմա, գոմերում տեղադրվել են կթի ագրեգատներ, մեքենայացվել են աշխատատար այլ պրոցեսներ։

Կուսկազմակերպության հերթական ժողովը, ամփոփելով իր նախկին որոշման կատարման արդյունքները, ըստ արժանվույն արժեքավորեց կատարված դրական տեղաշարժերը և ելնելով եղած հնարավորություններից ու ռեզերվներից, 1972 թ. համար հաստատեց ավելի բարձր բնագծեր։

Բազմաթիվ օրինակներ կարելի է բերել, թե ինչպես սկզբնական կուսկազմակերպությունները բազմակողմանի նախապատրաստությունից հետո ընդունում են ճիշտ որոշումներ և ընդհանուր ջանքերով ձեռնամուխ լինում դրանց կատարմանը։ Ընդհակառակը, վատ նախապատրաստված կուսժողովներում չհիմնավորված որոշումներ են ընդունվում։ Օրինակ, Աղբուլաղ գյուղի կոլտընտեսության սկզբնական կուսկազմակերպության ընդհանուր ժողովում քննարկվեց սոցիալիստական մրցությամբ ստանձնած պարտավորությունների կատարման հարցը, որը վատ էր նախապատրաստված։ Միայն կոլտնտեսության վարչության նախագահ Հ. Ասատրովը մի քանի րոպե տևող ինֆորմացիա տվեց ժողովին։ Կոմունիստները ելույթ չունեցան։ Ապա՝ ընդունվեց այսպիսի «որոշում»։ 1. Կոլտնտեսությունում ստեղծել սոցիալիստական մրցություն։ 2. Պահանջել կոլտնտեսականներից մասնակցել մրցությանը։ 3. Ամփոփել մրցության արդյունքները»։ Եվ ուրիշ ոչինչ։ Ինչպես երևում է, «որոշումը» բավականաչափ պարզունակ-մակերեսային է, ոչնչով չի պարտավորեցնում կոմունիստներին, չի մոբիլիզացնում աշխատավորության ուժերը՝ կատարելու իր առջև դրված խնդիրները։ Այն վերացական է, զուրկ կոնկրետությունից, չունի կատարման ժամկետ, կատարող անձ և այլն։ Եվ պատահական չէ, որ այդ «որոշումը» մնաց թղթի վրա։

1972 թ. ապրիլին, երբ կուսշրջկոմի բյուրոն քննարկեց առաջին եռամսյակի սոցիալիստական մրցությամբ ստանձնած պարտավորությունների կատարման ընթացքը, պարզվեց, որ Աղբուլաղ գյուղի կոլտնտեսությունը 1971 թ. ամեն մի կովից ստացել է 550 կգ կաթ, որը մոտ երեք անգամ պակաս է շրջանի միջին մակարդակից, չեն կատարվել դաշտային կուլտուրաների բերքատվության առաջադրանքները, և կոլտնտեսությունը տնտեսական տարին փակել է վնասով։ Ցածր են նաև ընթացիկ տարվա առաջին եռամսյակի արդյունքները։ Կոլտնտեսությունում չկա մոբիլիզացիոն վիճակ, թույլ է աշխատանքային կարգապահությունը, կոլտնտեսականների համար չեն ստեղծվել նյութական և բարոյական խթանման միջոցներ և այլն։



Շրջկոմի բյուրոն կուսակցական պատասխանատվության ենթարկեց գյուղի ղեկավարներին, իսկ կոլտնտեսության վարչության նախագահ Հ. Ասատրովին, կոլտնտեսության աշխատանքները չգլխավորելու համար, ազատեց աշխատանքից։ Կոլտնտեսականների ընդհանուր ժողովը հավանություն տվեց կուսշրջկոմի բյուրոյի որոշմանը և կոլտնտեսության վարչության նոր նախագահ ընտրեց մեխանիզատոր Հ. Գուլիևին, որը լավ է սկսել գործը։

Կուսշրջկոմը, նրա բյուրոն, սկզբնական կուսկազմակերպությունները, պարբերաբար անդրադառնում են որոշումների կատարման ստուգմանը, որը տեղի է ունենում և՛ վերևից, և՛ ներքևից։ Այսպես, 1970 թ. օգոստոսին կուսշրջկոմի բյուրոն քննարկեց կապի շրջանային և տեխնիկական հանգույցների գործունեության բարելավման հարցը։ Արձանագրվեց, որ վատ է գործում ռադիոյի և հեռախոսային ցանցը, հաճախ տեղի են ունենում խափանումներ, ընկած է աշխատանքային կարգապահությունը։ Ռադիոֆիկացված չեն Շինուհայր, Քարաշեն գյուղերը և Տեղ գյուղի նորակառույց թաղամասերը։ Կապի շրջանային հանգույցն ուշացումներով է առաքում թերթերն ու ամսագրերը։ Երկու կազմակերպություններն էլ չեն կատարում իրենց պլանային առաջադրանքները, ցածր է նրանց սպասարկման կուլտուրան։ Շրջկոմի բյուրոն ընդունեց գործարար որոշում, որը քննարկվեց կապի շրջանային և տեխնիկական հանգույցների սկզբնական կուսկազմակերպությունների միացյալ ժողովում։ Կոմունիստները հավանություն տվեցին շրջկոմի բյուրոյի որոշմանը, միջոցառումներ մշակեցին այն մինչև վերջ կենսագործելու համար։

Որոշման կատարման նկատմամբ արդյունավետ վերահսկողությունը տվեց դրական արդյունք։ 1971 թ. վերջերին Շինուհայր, Հալիձոր, Խոտ, Քարաշեն, Տեղ գյուղերը ռադիոֆիկացվեցին և ապահովվեցին հեռախոսային ցանցով։ Նոր կոմուտատորներ տեղադրվեցին Խնձորեսկ, Վերիշեն, Քարահունջ, Սևաբանց, Խոզնավար, Տեղ, Քարաշեն, Կոռնիձոր գյուղերում, մեծացվեց մյուս գյուղերի կոմուտատորների հզորությունը։ Դրա շնորհիվ գյուղական վայրերում հեռախոսների թիվն ավելացավ 600-ով, իսկ ռադիոկետերինը՝ ավելի քան մեկուկես հազարով։ Հիմնական նորոգման ենթարկվեցին քաղաքային հեռախոսային և ռադիոցանցերը, փոխվեցին 42 կմ երկարությամբ կաբել և 20 կիլոմետր ռադիոլար։ Ավարտվեց Երևան—Գորիս միջքաղաքային կաբելի անցկացումը, որը հնարավորություն տվեց տեղադրելու 60 կանալանոց սարքավորում։ Կանոնավորվեց նաև թերթերի և ամսագրերի առաքումը։ Կապի շրջանային հանգույցը 1971 թ. տարեկան պլանը կատարեց 102,4, իսկ տեխնիկական հանգույցը՝ 111,8 տոկոսով։

Մի այլ օրինակ։ 1971 թ. ապրիլին շրջկոմի բյուրոն քննարկեց «Հայշրշին» տրեստի Գորիսի № 8 շինվարչության սկզբնական կուսկազմակերպության հաշվետվությունը։ Հաջողությունների հետ միաժամանակ բյուրոն արձանագրեց լուրջ թերություններ, որոնք, անկասկած, բացասաբար են անդրադառնում արտադրական պլանների կատարման վրա։ Հատկապես վտանգի տակ էր Որոտանի ջրանցքի շինարարությունը, որը հույժ կարևոր կառույց է շրջանի համար։

Բյուրոյի որոշումը քննարկվեց շինվարչության սկզբնական կուսկազմակերպության դռնբաց ժողովում, որին մասնակցեցին նաև անկուսակցական շինարարները։ Հարցի քննարկումն անցավ գործարար մթնոլորտում. ելույթ ունեցավ ժողովի մասնակիցների գրեթե կեսից ավելին։ Ժողովականները հա-

վանություն տվին շրջկոմի բյուրոյի որոշմանը և թերությունները վերացնելու համար մշակեցին կոնկրետ միջոցառումներ։ Խոսքին հետևեց գործը. բարելավվեց մատակարարումը, լայնորեն ծավալվեց սոցիալիստական մրցությունը, յուրաքանչյուր շինարար, տեղամաս վերցրեց կոնկրետ պարտավորություն։ Ամենուրեք ստուգվում էր պարտավորությունների կատարման ընթացքը, բարոյապես և նյութապես խրախուսվում էին մրցության առաջավորները։

Արդյունավետ և հետևողական աշխատանքը տվեց իր հիանալի պտուղները։ Փորելով անդնդախոր ձորերն ու բարձրաբերձ ժայռերը՝ շինարարները տեղադրեցին ջրատար խողովակներ, կառուցեցին խոշոր թունելներ և ժամանակին տեղ հասցրին ջուրը։ Գորիսի «Ավանգարդ» և «Զանգեզուր» սովխոզներում, Քարահունջի կոլտնտեսությունում ոռոգելի դարձան առաջին մեկ հազար հեկտար վարելահողերը, ուր հիմա աճեցվում են բանջարեղեն, կերային կուլտուրաներ և տնկվում է այգի։

Շինարարները չեն բավարարվում ձեռք բերածով։ Նրանք եռանդով կառուցում են 29 կմ երկարությամբ ջրանցքը, որը ոռոգելի կդարձնի ավելի քան յոթ հազար հեկտար արգավանդ վարելահող։

Կուսշրջկոմի և կուսկազմակերպության որոշումները, դրանց կատարման ստուգման խելացի կազմակերպումը բարերար ազդեցություն թողեցին շինվարչության գործունեության վրա։ Նրա մարդիկ 1971 թ. պլանները կատարեցին ժամկետից երկու ամիս շուտ, պարգևատրվեցին ՀՍՍՀ Մինիստրների սովետի և ՀԱՄԽ-ի փոխանցիկ կարմիր դրոշով և արժանացան առաջին կարգի դրամական մրցանակի։

Շրջանային կոմիտեի բյուրոն, կատարման ստուգում անցկացնելու նպատակով, հաճախ է անդրադառնում իր նախորդ որոշումներին։ Սակայն այս դեպքում ոչ թե կրկնում, մշակում է նույնանման միջոցառումներ, այլ պարզում առաջին որոշման կատարմանը խանգարող հանգամանքները, անհրաժեշտության դեպքում պատասխանատվության ենթարկում այն մարդկանց, որոնց մեղքով որոշումը չի կատարվել։

Շրջանային կոմիտեն կիրառում է նաև այլ կարգի կատարման ստուգում։ Դա ո՛չ միայն զեկուցումների, հաշվետվությունների, ինֆորմացիաների մեթոդն է, այլև այն, որ մեզ մոտ պրակտիկա է դարձել ստուգումը նաև ներքևից։ Հաճախ կոմունիստներն իրենք են հանդես բերում նախաձեռնություն։ Այսպես, երկար ժամանակ Վերիշենի կաթնանասնապահական սովխոզում չէին կատարվում արտադրական պլանները, կային աշխատանքի կազմակերպման լուրջ թերություններ, սովխոզի ղեկավարները չէին ունկնդրում բանվորների ձայնին։ Եվ ահա տնտեսության կոմունիստները սեփական նախաձեռնությամբ որոշում են վերջ տալ այդ արատավոր պրակտիկային։ Սկզբնական կուսկազմակերպություններում, կուսխմբերում տեղի են ունենում դռնբաց ժողովներ, որոնց մասնակցում են նաև անկուսակցական բանվորները։ Կուսկոմիտեն ամփոփում է կոմունիստների քննադատական դիտողությունները, առաջարկությունները, ցանկությունները, դրանց հիման վրա ընդունում համապատասխան որոշում և դնում սովխոզի բանվորների, կոմունիստների քննարկմանը։ Ապա նրանց ամբողջ ուշադրությունը և ջանքերը կենտրոնացնում որոշումը կենսագործելու վրա։ Կուսկոմիտեն հետևում է աշխատանքային և արտադրական կարգապահության ամրապնդմանը, բարձրացնում յուրաքանչյուր աշխատողի պատասխանատվությունը հանձնարարված գործի



նկատմամբ։ Այդ ամենը դրական ազդեցություն ունեցավ գործերի վիճակի վրա։ Սովխոզը 1971 թ. կատարեց իր արտադրական առաջադրանքները, անցավ առաջավոր տնտեսությունների շարքը և նվաճեց ՀԿԿ Գորիսի շրջկոմի և շրջսովետի գործկոմի փոխանցիկ դրոշը։ Նման օրինակներ կարելի է բերել նաև մյուս կազմակերպություններից։ Դա իսկական մասսայական վերահսկողություն է, վերահսկողություն ներքևից։

Որոշումների կատարման գործում կարևոր նշանակություն ունեն սկզբնական կուսկազմակերպությունների, շրջանային կուսակցական ակտիվի ժողովներում և կուսշրջկոմի պլենումներում շարքային կոմունիստների ելույթները։ Դրանք կոմունիստների կողմից իրականացվող մասսայական վերահսկողություն են, որը հենվում է նրանց փորձի, կարծիքի և նախաձեռնության վրա։ Ահա մի օրինակ։ Խոզնավար գյուղի կոլտնտեսության կուսակցական ժողովում կոմունիստ Գ. Հովսեփյանը քննադատում է կաթնապրանքային ֆերմայի կոմունիստներին այն բանի համար, որ նրանք, անհրաժեշտ եզրակացություն չանելով իրենց հասցեին նախորդ ժողովներում արված քննադատությունից, բարձիթողի են արել հաշվառման գործը։ Դրա հետևանքով առանձին անբարեխիղճ անասնապահներ տնտեսության ցեղական երինջները փոխում են իրենց անձնական երինջների հետ, շռայլում կաթը և այլն։ Կոմունիստի քննադատական դիտողությունները տեղում ստուգելու համար կուսկազմակերպությունն առանձնացնում է հատուկ հանձնաժողով։ Մանրամասն ուսումնասիրվում է ֆերմայի վիճակը, արձանագրվում են թերությունները, խախտումները, ապա՝ հարցը քննարկվում է կուսկազմակերպության ժողովում։ Կուսակցական ժողովը ֆերմայի վարիչ, կոմունիստ Ժ. Մկրտչյանին հեռացրեց աշխատանքից, հայտարարեց խիստ նկատողություն՝ գրանցելով հաշվառման քարտում, գործը հանձնեց դատա-քննչական մարմիններին։ Այդ միջոցառումը լայն արձագանք գտավ անասնապահների շրջանում և նպաստեց գործերի վիճակի հետագա բարելավմանը։ Այժմ ֆերման առաջավորների շարքում է։

Կամ վերցնենք մի այլ օրինակ։ Քարաշեն գյուղի կոլտնտեսության սկզբնական կուսկազմակերպության ընդհանուր ժողովում կոմունիստները քննադատեցին կուսբյուրոյին ու նրա քարտուղար Ժ. Միրզոյանին և կոլտնտեսության վարչության նախագահ Մ. Մնացականյանին այն բանի համար, որ նրանք չեն հետևում կուսկազմակերպության որոշումների կատարմանը։ Դրա հետևանքով կոլտնտեսությունում ցածր են աշխատանքի արտադրողականությունը, դաշտերի բերքատվությունն ու անասունների մթերատվությունը, խիստ բարձր է արտադրված մթերքների ինքնարժեքը։ Կուսբյուրոն ճիշտ չի տեղաբաշխում կոմունիստների ուժերը արտադրության վճռական տեղամասերում։ Նրանց մի մասը աշխատում է թեթև և նյութական բարիքներ չարտադրող ճյուղերում։ Կոմունիստներ Ժ. Մանուչարյանը, Հ. Գասպարյանը, Հ. Փարսյանը չեն ապահովում իրենց ավանգարդային դերը արտադրության մեջ, իսկ Ռ. Սարգսյանը, Մ. Օհանջանյանը, Ս. Մարկոսյանը և Ս. Վարդազարյանը անբարեխղճություն են հանդես բերում կուսկազմակերպության որոշումների կատարման գործում։

Կուսշրջկոմի աշխատողները տեղում ստուգեցին կոմունիստների քննադատական դիտողությունները և հարցը մտցրին բյուրո։ Ծավալվեց լուրջ խոսակցություն։ Գյուղի ղեկավարներն ամեն կերպ ջանում էին իրենց տնտեսական անհաջողությունները և կուսկազմակերպության որոշումները չկատարելը

բարդել բնակլիմայական անբարենպաստ պայմանների վրա: Սակայն փաս-
տերն ավելի համառ դուրս եկան: Բյուրոյի անդամները համոզիչ կերպով հաս-
տատեցին շարքային կոմունիստների քննադատական դիտողությունների ճըշ-
տությունը: Շրջկոմի բյուրոն կուսակցական տույժի ենթարկեց կոլտնտեսու-
թյան վարչության նախագահ Մ. Մնացականյանին և սկզբնական կուսկազմա-
կերպության քարտուղար Ժ. Միրզոյանին: Կոլտնտեսությունում ղեկավար
կադրերի անհրաժեշտ փոփոխություն կատարվեց: Շրջկոմի բյուրոյի որոշումը
բարերար ազդեցություն թողեց գործերի ընթացքի վրա: Պատասխանատվու-
թյուն հանդես բերելով ընդունված որոշումների կատարման գործում՝ սկզբնա-
կան կուսկազմակերպությունը կարողացավ լուծել կոլտնտեսային արտադրու-
թյան զարգացման հասունացած հարցերը:

Շրջանի կուսկազմակերպությունում պրակտիկա է դարձել շրջկոմի պլե-
նումներին, բյուրոներին, սկզբնական կուսկազմակերպություններին պարբե-
րաբար ինֆորմացիա տալ, թե ինչպես են կատարվում ընդունված որոշումները,
ինչ դժվարություններ են հանդիպում այդ ճանապարհին, ովքեր են մեղավոր
կոմունիստների այս կամ այն պահանջը չկատարելու համար և ինչ նոր միջո-
ցառումներ են անհրաժեշտ՝ մինչև վերջը կենսագործելու տվյալ որոշումը:

Որոշումների կատարման վերահսկողության ձևերն ու մեթոդները բազ-
մազան են: Շրջանում պրակտիկա է դարձել կոմունիստների սիստեմատիկ
հաշվետվությունները սկզբնական կուսկազմակերպություններին, կուսկոմի-
տեներին և շրջկոմի բյուրոյին՝ իրենց կանոնադրական պարտականությունների
կատարման մասին: Վերջիններս, ինֆորմացիա ունենալով տվյալ կոմունիս-
տի գործունեության վերաբերյալ, նրան տալիս են կոնկրետ խորհուրդներ,
ներկայացնում նոր, գործի շահերից բխող պահանջներ: Դա հնարավորություն
է ընձեռում կոմունիստներին՝ դառնալու կուսակցության դիրեկտիվների, որո-
շումների կատարման առաջամարտիկներ:

Մեզ մոտ կիրառվում է վերահսկողության այն արդյունավետ ձևը, երբ
արդյունաբերական ձեռնարկությունների, շինարարական կազմակերպություն-
ների, սովխոզների ղեկավարները պարբերաբար հաշվետվություններով հան-
դես են գալիս բանվորական կոլեկտիվների առջև, նրանց տեղյակ պահում
արտադրական պլանների և նախկինում արված քննադատական դիտողություն-
ների կատարման ընթացքին ու արդյունքներին: Կուսկազմակերպությունները
հսկում են այդ կոլեկտիվներում բանվորների արած քննադատական դիտողու-
թյունների ու առաջարկությունների կատարումը և միջամտում գործին, եթե
նկատվում են քննադատությունը հիվանդագին ընդունելու երևույթներ: Այս-
պես, երբ Գորիսի տրիկոտաժի ֆաբրիկայի դիրեկտոր Ն. Վարդանյանը 1971 թ.
տնտեսական արդյունքների մասին կոլեկտիվին հաշիվ տվեց, բանվորները
քննադատեցին ղեկավարներին, նշելով, որ նրանք անհրաժեշտ ուշադրություն
չեն դարձնում արտադրանքի որակին, որի հետևանքով ձեռնարկությունը կրում
է հսկայական վնասներ: Քննադատությունը դուր չեկավ ղեկավարներին:
Նրանք գործնական քայլեր չկատարեցին՝ արտադրանքի որակը բարելավելու
համար: Կուսշրջկոմի բյուրոն քննարկեց այդ հարցը, ճիշտ համարեց բանվոր-
ների իրավացի վրդովմունքը, ֆաբրիկայի դիրեկտոր Ն. Վարդանյանին ենթար-
կեց կուսակցական տույժի:

Կամ մի այլ օրինակ: Սպորտային կոշիկների արտադրության ֆաբրիկա-
յում կոմունիստ Մ. Հակոբյանը կուսակցական ժողովներից մեկում քննադա-





տում է դիրեկցիային այն բանի համար, որ արտադրության որակը ցածր է.
մեծ քանակությամբ կոշիկներ առևտրական բազաները չեն ընդունում և վերա-
դարձնում են նոր մշակման: Մինչդեռ որակի բարելավման վերաբերյալ
սկզբնական կուսկազմակերպության բազմաթիվ որոշումներ մնացել են ան-
կատար, իսկ մեղավորները պատասխանատվության չեն ենթարկվել: Դա դուր
չեկավ ֆաբրիկայի դիրեկտոր Ժ. Հարությունյանին: Նա փորձեց հարցը լուծել
կոնկրետ՝ հրաման արձակելով կոմունիստ Մ. Հակոբյանին աշխատանքից հե-
ռացնելու մասին: Շրջանային կոմիտեն միջամտեց գործին, գտավ, որ կոմու-
նիստ Հակոբյանի քննադատությունը միանգամայն տեղին է և որոշեց վերա-
կանգնել նրան աշխատանքում, իսկ ֆաբրիկայի դիրեկտորին պատժեց և
պահանջեց արտադրանքի որակի բարձրացման հարցը միշտ պահել տեսադաշ-
տում: Այսպիսով, ներքևից իրականացվող վերահսկողությունն օգտակար եղավ
ընդհանուր գործին:

Կատարելով ՍՄԿԿ XXIV համագումարի պահանջները՝ շրջանի կուսկազ-
մակերպությունները հոգում են բանվորական արտադրական խորհրդակցու-
թյունների, կոլտնտեսականների ընդհանուր ժողովների հեղինակությունը
բարձրացնելու մասին, սիստեմատիկաբար քննարկում ձեռնարկությունների
և տնտեսությունների գործունեության կարևորագույն խնդիրներ, կոլեկտիվնե-
րի ուժերը նպատակամղում դրանց լուծմանը: Դա ավելի է բարձրացնում բան-
վորների, կոլտնտեսականների և ծառայողների պատասխանատվությունն ընդ-
հանուր գործի նկատմամբ, նպաստում որոշումների կատարմանը:

Այս տարվա հունվարի սկզբներին, կուսշրջկոմի հանձնարարությամբ,
ժողովրդական վերահսկողության շրջանային կոմիտեն, շրջանի մասնագետ-
ների և իրենց տեղական խմբերի ու պոստերի միջոցով, կոլտնտեսություննե-
րում և սովխոզներում ուսումնասիրեց գարնանացանի նախապատրաստման
վիճակը: Շրջանային կոմիտեն բազմաթիվ թերություններ բացահայտեց գյու-
ղատնտեսական մեքենաների նորոգման, վառելանյութի կուտակման, սերմերի
ապահովման, հանքային և օրգանական պարարտանյութերի տեղափոխման
գործում: Ստուգման արդյունքներն սկզբում քննարկվեցին սկզբնական կուս-
կազմակերպությունների ընդհանուր ժողովներում, ապա՝ շրջկոմի բյուրոյի
նիստերում: Այդ հարցի քննարկմանը մասնակցում էին նաև կոլտնտեսություն-
ների և սովխոզների ղեկավարները: Առանձին տնտեսությունների ղեկավար-
ներ խիստ քննադատվեցին, ենթարկվեցին կուսակցական պատասխանատվու-
թյան: Բյուրոն ընդունեց գործնական որոշում: Կուսշրջկոմը և սկզբնական
կուսկազմակերպությունները հետևողականորեն գործի վերածեցին իրենց ըն-
դունած որոշումները և հասան լավ արդյունքների: Արդեն փետրվարի վերջե-
րին շրջանի տնտեսությունները բազմակողմանիորեն նախապատրաստվել էին
գարնանացանին:

Որոշումների կատարման նկատմամբ վերահսկողություն իրականացնելու
համար կուսշրջկոմը հանձնարարել է շրջանային «Զանգեզուր» թերթին՝ կազ-
մակերպել մասսայական ռեյդեր, ստուգումներ: Շրջանային թերթն այս տար-
վա հունվարի 20-ին տպագրեց «Երբ չեն կենսագործում որոշումները» վերնա-
գրով քննադատական հոդվածը, որում հանգամանորեն վերլուծվել է Տեղ
գյուղի կոլտնտեսության սկզբնական կուսկազմակերպության 1971 թ. գործու-
նեությունը: Թերթը նշում է, որ կուսկազմակերպությունը, կոմունիստների
քննադատական դիտողությունների հիման վրա, հացահատիկի բերքատվու-

թյունը բարձրացնելու և անասնապահական մթերքների արտադրությունն ավելացնելու համար, ընդունել է բազմաթիվ որոշումներ։ Սակայն կուսբյուրոն և նրա քարտուղար Ե. Հայրապետյանը չեն մտահոգվել դրանց կենսագործմամբ, որի հետևանքով կոլտնտեսությունը բոլոր ցուցանիշներով զգալիորեն թերակատարեց 1971 թ. գյուղատնտեսության զարգացման պլանային առաջադրանքները։ Նախորդ տարվա համեմատությամբ, կաթի համախառն արտադրությունը նվազել էր 1.400 ցենտներով, կովերի միջին կաթնատվությունը՝ 180 կգ-ով, բրդի արտադրությունը՝ 40 ցենտներով։

Հոդվածը քննարկվեց կոլտնտեսության սկզբնական կուսկազմակերպության ընդհանուր ժողովում։ Կոմունիստները խիստ քննադատեցին կուսբյուրոյի քարտուղար Ե. Հայրապետյանին, կոլտնտեսության վարչության նախագահ Լ. Ջհանգիրյանին և գյուղի մյուս ղեկավարներին։ Ժողովը նրանց ենթարկեց կուսակցական պատասխանատվության։ Շրջկոմի բյուրոն հաստատեց կուսկազմակերպության որոշումը և նախազգուշացրեց կոլտնտեսության ղեկավարներին, ընդունեց կուսկազմակերպության գործունեությունը բարելավելու որոշում։

Հայտնի է, որ երբ կադրերը մնում են վերահսկողությունից դուրս, ապա աստիճանաբար կորցնում են իրենց դրական հատկանիշները։ Մեզ մոտ էլ, դժբախտաբար, նկատվել են այդպիսի դեպքեր։ Առանձին ղեկավար կադրեր, կորցնելով պատասխանատվությունը սկզբնական կուսկազմակերպությունների, կոլեկտիվների առջև, իրենց վեր են դասում նրանցից, աստիճանաբար կտրվում մասսայից, ձախողվում աշխատանքում և դուրս մնում ղեկավարության ոլորտից։ Հետևաբար, մեր կադրերի նկատմամբ հավասարապես տարածում ենք՝ վստահելով ստուգել, ստուգելով՝ վստահել սկզբունքը։ Դա հնարավորություն է ընձեռում նրանց՝ շարունակ զբաղվելու իրենց քաղաքական-գաղափարական մակարդակի բարձրացմամբ և կազմակերպական ունակությունների հարստացմամբ, ղեկավարման ձևերի ու մեթոդների կատարելագործմամբ։ Առանձնապես հոգատարությամբ ենք շրջապատում երիտասարդ կադրերին, որոնք ունեն մասնագիտական կրթություն, քաջածանոթ չեն կուսակցական աշխատանքի մեթոդներին, կարիք են զգում լուրջ օգնության։ Շրջանային կոմիտեն սեմինարների միջոցով նրանց տալիս է գիտելիքներ ու փորձ, սովորեցնում կուսակցական վերահսկողության ձևերն ու մեթոդները, որոշումների կատարման ստուգման եղանակները, նրանց զինում կուսակցության և կառավարության դիրեկտիվներն ու որոշումները կատարելու վճռականությամբ։ Իսկ այդ ամենը կարևոր չափանիշ է կադրերի գործունեությունը ճիշտ արժեքավորելու համար։





# ՄՐՑՈՒԹՅԱՆ ՈՒԺԸ

ՀՐ. Ս. ՀՈՎՍԵՓՅԱՆ

(Գուգարքի շրջանի Համզաչիմանի սովխոզի կուսկազմակերպության աշխատանքի փորձից)

Կուսակցությունը սոցիալիստական մրցությունը միշտ էլ դիտել է որպես աշխատավոր մասսաների ստեղծագործական նախաձեռնության ու ակտիվության զարգացման կարևոր միջոց։ Այն մասսաներին համակում է աշխատանքային բուռն խանդավառությամբ, նրանց մղում արտադրական սխրանքների։ «Սոցիալիստական մրցության կազմակերպման հետագա բարելավման մասին» ՍՄԿԿ Կենտկոմի որոշման մեջ ընդգծվում է, որ սոցիալիստական մրցության հետագա զարգացումը և նրա կազմակերպական կատարելագործումը ՍՄԿԿ XXIV համագումարի առաջադրած տնտեսական ծրագրի հաջող կենսագործման կարևորագույն նախադրյալն է։

Սոցիալիստական մրցության կազմակերպման ու ծավալման ուսանելի փորձ է կուտակել Գուգարքի շրջանի Համզաչիմանի սովխոզի սկզբնական կուսկազմակերպությունը։ Այստեղ այն, իրոք, դարձել է աշխատավորների դաստիարակության, արտադրության կառավարմանը նրանց ներգրավելու կարևոր միջոց, մարդկանց ստեղծագործական ակտիվությունն ու նախաձեռնությունը զարգացնելու հուսալի խթան։

Կուսկազմակերպությունը արդյունավետ է կազմակերպում ու ղեկավարում սոցիալիստական մրցությունը։ Կուսբյուրոյի նիստերում և կուսակցական ժողովներում հաճախ քննարկվում են մրցությունը ծավալելու, գյուղատնտեսական արտադրությունը գիտականորեն կազմակերպելու, նրա արդյունավետությունը բարձրացնելու, եղած հնարավորություններն ու ռեզերվները լիովին օգտագործելու, նյութական ու բարոյական խրախուսանքի միջոցները կիրառելու և այլ կարևոր հարցեր, ընդունվում են կոնկրետ պարտավորեցնող որոշումներ։ Եվ, որ գլխավորն է, հետագայում դրանց հաջորդում է ամենօրյա կազմակերպական աշխատանքը։

Անցած տարվա սկզբին կուսկազմակերպության ժողովում հանգամանորեն քննարկվեցին ութերորդ հնգամյակում ծավալված սոցիալիստական մրցության արդյունքները և հաստատվեցին նոր հնգամյակի առաջին տարվա սոցիալիս-

տական պարտավորությունները: Դրանց մշակմանն ակտիվորեն մասնակցեցին
արտադրության առաջավորները: Շուտով այդ հարցը փոխադրվեց սովխոզի
ընդհանուր ժողով: Այստեղ խրախուսվեցին առաջավորները, միջոցներ նշվե-
ցին՝ բացահայտված թերությունները արագ վերացնելու համար: Սովխոզի
կոլեկտիվը, ելնելով իր ունեցած հնարավորություններից, ստանձնեց բարձր
պարտավորություններ և մրցության հրավիրեց Հարևան Շահումյանի անվան
պետական տնտեսությանը: Կարևորն այն է, որ պարտավորությունների մեջ
արտացոլվեցին երկրագործության ու անասնապահության վարման կուլտու-
րայի բարձրացման, աշխատանքի և հանրային սեփականության նկատմամբ
կոմունիստական վերաբերմունք դաստիարակելու, գյուղատնտեսական մթերք-
ների ինքնարժեքն իջեցնելու և այլ հարցեր:

Կուսբյուրոն միաժամանակ ամեն կերպ օգնեց մրցողներին, բարձրացրեց
պահանջկոտությունը նրանց նկատմամբ, բոլորի ջանքերը նպատակամղեց
պարտավորությունների անթերի կատարմանը: Միմյանց հետ մրցեցին ոչ
միայն արտադրական տեղամասերը՝ անասնապահական ֆերմաները, դաշ-
տավարական բրիգադները, այլև մշտական առաջադրանք ունեցող բոլոր
բանվորները՝ մեխանիզատորները, կարտոֆիլագործները, կթվորները, նախ-
րապանները, հովիվները, խոզապահները, հորթապահները: Դրանով պետք է
բացատրել, որ սովխոզում մրցությունը կրում է գործարար, մասսայական
բնույթ: Շուրջ 400 աշխատավորներ ընդգրկվել են անհատական մրցության մեջ:

— Պարտավորությունների կատարման գործը հաջող կազմակերպելու,
դրա նկատմամբ վերահսկողությունն ուժեղացնելու նպատակով,— պատմում
է կուսբյուրոյի քարտուղար Հ. Սաֆարյանը,— սովխոզում ստեղծված է հա-
տուկ հանձնաժողով, որտեղ ընդգրկված են նաև արտադրության շատ առա-
ջավորներ: Հանձնաժողովը սիստեմատիկաբար անցկացնում է կատարման
ստուգում, հանրագումարի բերում մրցության արդյունքները: Այսպես, մսու-
րային շրջանում 10 օրը մեկ, արոտային շրջանում՝ ամեն ամիս ու եռամսյակ
կանոնավոր ամփոփվում են կթվորուհիների, անասնապահների և ամբողջու-
թյամբ վերցրած, կաթնապրանքային ֆերմայի մրցության արդյունքները:
Դաշտավարական բրիգադների պարտավորությունների կատարման արդյունք-
ներն ստուգվում են աշխատանքային սեզոնի, իսկ տնտեսությանը՝ յուրաքան-
չյուր եռամսյակի վերջում: Մրցության արդյունքներն ամփոփելու ընթացքում
դրվատանքի խոսքեր են ասվում առաջավորների հասցեին, նրանց տրվում են
դրամական պարգևներ, հասարակական կարծիք է ստեղծվում ետ մնացողնե-
րի նկատմամբ: Հոգ ենք տանում առաջավոր փորձի տարածման, աշխատանքի
կազմակերպման արդյունավետ մեթոդների ընդհանրացման մասին: Բայց
աչքաթող չենք անում նաև թերությունները:

Եվ, իրոք, Համզաչիմանի պետական տնտեսությունում լուրջ ուշադրու-
թյուն է նվիրվում արտադրության առաջավորների ուսանելի փորձի ներդրմանն
ու տարածմանը, պաշտպանվում է այն ամեն մի նորը, որը ծնվում է հան-
րային աշխատանքում: Շատ ժամանակ չի անցել այն օրվանից, երբ կուսբյու-
րոյի նիստում մի խումբ կոմունիստներ հանդես եկան անասնապահության
համաչափ զարգացմանն օգնելու նախաձեռնությամբ: Նրանք պատրաստակա-
մություն հայտնեցին աշխատել տնտեսության այդ ճյուղում և անձնական
օրինակ ցույց տալ մյուսներին: Հասկանալի է, կուսբյուրոն պաշտպանեց ու
հավանություն տվեց դրան: Կոմունիստ Ջ. Անանյանը կամովին ստանձնեց



խոզաբուծական բրիգադայի ղեկավարությունը: Նա աշխատեց խղճով, բարելավեց խոզերի խնամքը, ժամանակին հոգաց կերի ապահովման մասին, բոլոր աշխատողներին ընդգրկեց սոցմրցության մեջ: Այդ ամենի շնորհիվ աճեց խոզերի գլխաքանակը, կրճատվեցին անկումները: Խոզաբուծությունը դարձավ մսի արտադրության ավելացման հուսալի ռեզերվ և այժմ մեծ առաջընթաց է ապրում: Անցյալ տարի այդ ճյուղը տվեց մոտ 60 հազար ռուբլու եկամուտ, որից 25 հազարը՝ օգուտ: Խոզապահների փորձն ուսումնասիրում են հարևան տնտեսությունների մարդիկ: Վերջերս շրջանի տնտեսությունների ղեկավարները, խոզաբուծական ֆերմաների աշխատողները եղան Համզաչիմանում, մոտիկից ծանոթացան բրիգադայի գործերին: Արտադրության հմուտ կազմակերպչի անբասիր աշխատանքն արժանացել է բարձր գնահատականի. Ջ. Անանյանը պարգևատրվել է Լենինի շքանշանով:

Չի կարելի հիացմունքով չխոսել Հայկական ՍՍՀ Գերագույն սովետի դեպուտատ Զարիկ Սարգսյանի մասին: Նրան բոլորը ճանաչում են որպես բարեխիղճ, եռանդուն աշխատողի: Զարիկը նոր հնգամյակի առաջին տարում ամեն մի կովից կթեց 2.100 կգ կաթ: Նրա փորձը պրոպագանդվել է սովխոզում գործող կոմունիստական աշխատանքի դպրոցում: Հետևելով Զարիկի օրինակին՝ շատ կթվորուհիներ հասել են լավ արդյունքի: Նրանցից Ռոզա Մարանդյանը, որը պարգևատրվել է «Պատվո նշան» շքանշանով, 1971 թ. կովերի միջին կաթնատվության առաջադրանքը գերակատարեց 300 կգ-ով: Սրտացավ աշխատանքի լավ օրինակ են տալիս նաև Անիչկա Դալլաքյանը, Ժենյա Խառատյանը, Օֆիկ Սարդարյանը և Սիրամարգ Խառատյանը: Այս առաջավոր կթվորուհիների նախաձեռնությամբ սովխոզում ծնունդ առավ «երկուհազարականների» հայրենասիրական շարժումը: Նրանց նշանաբանն է՝ հնգամյակի երկրորդ տարում ամեն մի կովի կաթնատվությունը հասցնել 2.500 կգ-ի:

Սովխոզում շատ են սոցիալիստական մրցության առաջամարտիկները, արտադրության առաջավորները: Ինչպես միշտ, մրցության ավանգարդում են կոմունիստները: Նրանք նորի ու առաջավորի ջերմ պաշտպաններն են, անձնվեր աշխատանքով օրինակ են ծառայում մյուսներին: Այսպես, տարիներ շարունակ ոչխարաբուծությունը ետ էր մնում, ցածր էր հոտի մթերատվությունը: Պատկերն անմիջապես փոխվեց, երբ կուսկազմակերպությունը և սովխոզի դիրեկցիան կոմունիստ Լ. Բեկչյանին վստահեցին այդ ճյուղի ղեկավարումը: Բրիգադայի հովիվներն ունեն անհատական սոցիալիստական պարտավորություններ և պարտքի զգացումով կատարում են իրենց խոստումը: 1971 թ. բրիգադան 100 մաքուց ստացավ 101 գառ, յուրաքանչյուր ոչխարից՝ 2,8 կգ բուրդ: Պետությանը հանձնած միսը ճանաչվեց միջակից բարձր գիրության: Մրցության առաջավորների շարքում են կոմունիստ հովիվներ Հ. Մինասյանը և Գ. Սարգսյանը: Նրանց խնամքին հանձնված ոչխարների միջին բրդատվությունը կազմել է 3,1 կգ: Կամ, օրինակ, Ս. Սարդարյանը: Նա ղեկավարում է անասունների գիրացման բրիգադաներից մեկը, դրսևորում մեծ բարեխղճություն, կոմունիստի վեհ կոչումը կրում արժանապատվությամբ: Կոմունիստ մեխանիզատորներ Օ. Մալաքյանը և Ռ. Մատինյանը ամեն ինչ անում են, որպեսզի տեխնիկան մշտապես գտնվի սարքին վիճակում, գործի անխափան ու բարձր արտադրողականությամբ:

Մրցության ուժը, վերջին հաշվով, նրա մասսայականության մեջ է: Ճիշտ ըմբռնելով այդ՝ կուսկազմակերպությունը, մրցության առաջավորների փորձի

պրոպագանդման համար օգտագործում է գրավոր ու բանավոր ագիտացիայի զանազան ձևեր ու եղանակներ, մրցության արդյունքները մասսայականացնում սովխոզի բանվոր-ծառայողների ժողովներում, արտադրական խորհրդակցություններում։

Սոցիալիստական մրցության զարգացման գործում կարևոր նշանակություն ունի ինչպես նյութական, այնպես էլ բարոյական խթանների ճիշտ կիրառումը։ Մրցությունը զարգացնելու, աշխատավորների արտադրական ու հասարակական ակտիվությունը բարձրացնելու նպատակով՝ կուսկազմակերպությունը սովխոզի դիրեկցիայի հետ մշակել են նյութական ու բարոյական խրախուսման բազմազան ձևեր։ Դրանք նպաստում են մարդկանց աշխատանքի նկատմամբ կոմունիստական վերաբերմունքի ոգով դաստիարակելուն, կարգապահության ու կազմակերպվածության ամրապնդմանը։ Օրինակ, մրցության առաջավորներին, որպես նյութական խրախուսանք, մեկ տարում տրվել է ավելի քան 45 հազար ռուբլի։ Լրացուցիչ վարձատրություն են ստանում բոլոր նրանք, ովքեր կատարում են սոցիալիստական պարտավորությունները։ Իհարկե, աչքաթող չի արվում նաև աշխատանքի որակը։ Առանձնապես ուժեղացվել է ուշադրությունը բարոյական խթանների նկատմամբ, որոնք նյութա-տեխնիկական բազայի ստեղծման պայմաններում դառնում են մեր առաջընթացի գլխավոր շահագրգռող ուժ։ Կուսակցական ու արհմիութենական կազմակերպությունների անմիջական նախաձեռնությամբ տնտեսությունում սահմանվել են միջբրիգադային փոխանցիկ դրոշներ, «Առաջավոր կթվորին», «Առաջավոր հովվին, «Առաջավոր բրիգադային» հուշադրոշներ, որոնց նվաճման համար տարվա սկզբից ամենօրյա պայքար է ծավալվում։ Տնտեսական տարվա արդյունքներն ամփոփելուց հետո պատվոտախտակին փակցվում են մրցության առաջավորների լուսանկարները։

«Սոցիալիստական մրցության կազմակերպման հետագա բարելավման մասին» ՍՄԿԿ Կենտկոմի հայտնի որոշումից հետո կուսկազմակերպությունն արտադրական տեղամասերում փակցրել է մարդկանց հայրենանվեր աշխատանքի կոչող լոզունգներ՝ «Համատեղ ջանքերով բարձրացնենք մեր տնտեսության արդյունավետությունը», «Բարձր պահենք սովխոզի պատիվը», «Տնտեսության, գյուղի պատիվը յուրաքանչյուր աշխատավորի պատիվն է», «Աշխատենք կոմունիստաբար, նոր հնգամյակը՝ ժամկետից շուտ»։

— Փորձը ցույց է տալիս,— ասում է սովխոզի դիրեկտոր Ս. Անանյանը,— որ սոցիալիստական մրցության հաջողությունը մեծապես պայմանավորված է նրանով, թե ինչպիսի պայմաններ են ստեղծվում ստանձնած պարտավորությունների կատարման համար։

Ապա նա և կուսկազմակերպության քարտուղարը պատմում են այդ ասպարեզում իրենց մոտ ձեռնարկված միջոցների մասին։ Այստեղ մշակվել և իրականացվում են արտադրության կոմպլեքսային մեքենայացման, գիտատեխնիկական նվաճումների ներդրման կոնկրետ միջոցառումներ։ Դրանց ակնառու վկայությունն այն է, որ տնտեսությունն ունի մեքենայական հարուստ հավաքակայան, որը հնարավորություն է ընձեռում կոմպլեքսային մեքենայացման ենթարկել աշխատատար պրոցեսները, բարձրացնել հանրային արտադրության արդյունավետությունը։ Մեքենայացվել է ավելի քան 200 հեկտար կարտոֆիլի ցանքի, պարարտացման, մշակության ու բերքահավաքի ծանր աշխատանքը։ Անասնապահական շենքերում տեղակայվել են ջրի ավտոմատ խմոցներ, գոմաղբի հեռացման, կերի վերամշակման սարքեր, որոնք մեծ չափով հեշտացրել են անասնապահների գործը։ Մեքենայացվել են նաև խոտի հունձը, հավաքումն ու դիզումը։

Սոցիալիստական մրցության ճիշտ կազմակերպումը, մարդկանց նկատմամբ հոգատարությունը, նրանց եռանդն ու ստեղծագործական ակտիվության բարձրացումն իրենց բարերար ազդեցությունն են թողել տնտեսության գործունեության վրա։ Ահա մի քանի պերճախոս թվեր։ Իններորդ հնգամյակի առաջին տարում, պլանավորված 7.490-ի դիմաց, արտադրվել է 8.668 ցենտներ կաթ, 1.430-ի փոխարեն՝ 1.819 ցենտներ միս։ Մեկ ոչխարի բրդատվությունը, հաշվարկային քաշով, կազմել է 3,8 կգ, նախատեսվածից 1,6 կգ-ով ավելի։ Բարձր մթերատվությունը հնարավորություն է ընձեռել պետությանը ծրագրվածից ավելի հանձնել 394 ցենտներ միս և 1.144 ցենտներ կաթ։ Միայն անասնապահությունը տնտեսությանը տվել է ավելի քան 550 հազար ռուբլու եկամուտ։ Արտադրական բոլոր ճյուղերը տարին փակում են օգուտով։

Մրցողների բեղմնավոր աշխատանքի մասին է վկայում նաև այն, որ նկատելի կերպով իջել է գյուղատնտեսական մթերքների ինքնարժեքը։ Այսպես, մեկ ցենտներ կաթի ինքնարժեքը պլանայինի նկատմամբ իջել է մոտ 3 ռուբլով, տավարի ու խոզի մսինը, բրդինը՝ 15—20 տոկոսով։ Եվ պատահական չէ, որ տնտեսության անշեղ վերելքի պայմաններում աճել են եկամուտները, երբեմն վնասով աշխատող սովխոզը դարձել է շահութաբեր. 1971 թ. նրա օգուտներն անցան 80 հազար ռուբլուց, անհամեմատ բարձրացավ աշխատավորների բարեկեցությունը։

Սոցիալիստական մրցության, ստանձնած պարտավորությունների կատարման ասպարեզում համզաշիմանցիների գործադրած ջանքերն աննկատ չեն մնացել, գնահատվել են ըստ արժանվույն։ Այսպես, Սովետական Հայաստանի և Հայկոմկուսի 50-ամյակի պատվին ծավալված մրցության մեջ ձեռք բերած աչքի ընկնող հաջողությունների համար՝ սովխոզի կոլեկտիվը պարգևատրվել է հոբելյանական հուշամեդալով, երկու անգամ արժանացել Գյուղատնտեսության մինիստրության և ճյուղային արհմիության հանրապետական կոմիտեի փոխանցիկ դրոշին ու դրամական առաջին կարգի մրցանակին։ Սովխոզի անասնապահները նվաճել են նաև Գուգարքի կուսշրջկոմի և շրջսովետի գործկոմի փոխանցիկ դրոշը։ Արտադրության շատ առաջավորներ դարձել են ՍՍՀՄ ժողովրդական տնտեսության նվաճումների ցուցահանդեսի մասնակից։

Վերջերս սովխոզը նորից հաղթող դուրս եկավ սոցիալիստական մրցությունից։ Սովետական Միության կազմավորման 50-ամյակի պատվին ծավալված մրցությունում ձեռք բերած ակնառու հաջողությունների համար սովխոզի կոլեկտիվն արժանացավ ՍՍՀՄ գյուղատնտեսության մինիստրության, գյուղատնտեսության ու մթերումների բանվոր-ծառայողների արհմիության Կենտկոմի փոխանցիկ դրոշին և առաջին կարգի դրամական մրցանակին։

Սոցիալիստական մրցության ճիշտ կազմակերպման շնորհիվ Համզաշիմանի սովխոզը հասել է ուշագրավ նվաճումների։ Սակայն նրա աշխատասեր ու համերաշխ կոլեկտիվը դրանցով չի բավարարվում։ Համզաշիմանցիներն իրենց առջև խնդիր են դրել իններորդ հնգամյակի տարիներին զգալիորեն բարձրացնել գյուղատնտեսական մթերքների արտադրությունը։ Մրցություն ծավալելով ի պատիվ ՍՍՀՄ կազմավորման 50-ամյակի և արձագանքելով

հանրապետության առաջավոր տնտեսությունների նախաձեռնությանը՝ նրանք նոր հնգամյակի երկրորդ տարվա համար ստանձնել են նոր, բարձր պարտավորություններ։ Կթվոր-անասնապահների հարվածային բնագծերն են՝ արտադրել ավելի քան 9 հազար ցենտներ կաթ, 2 հազար ցենտներ միս, 60 ցենտներ բուրդ։ Հանրային հոտի համար կուտակվելու է 2.500 տոննա խոտ, պատրաստվելու է 4 հազար տոննա սիլոս։ Դաշտավարներն ու մեխանիզատորները նպատակ են դրել արտադրել ոչ պակաս 2.350 տոննա կարտոֆիլ։ Այս թվերը զգալիորեն գերազանցում են պետական պլանները և նախորդ տարվա մակարդակը։ Սովխոզի կոլեկտիվը որոնում է նոր հնարավորություններ ու ռեզերվներ այն հաշվով, որպեսզի, դրանք ճիշտ օգտագործելու միջոցով է՛լ ավելի բարձրանա գյուղատնտեսական արտադրության արդյունավետությունը, արագացվի առանձին ճյուղերի զարգացման տեմպերը։ Օրինակ, միջոցներ են ձեռնարկվում կառուցելու ջրհան կայան, որը թույլ կտա ջրովի դարձնել 300—400 հեկտար հող։ Դա հնարավորություն կընձեռի տնտեսությունում ըստ ամենայնի զարգացնել պտղաբուծությունը, ընդարձակել կերային կուլտուրաների ցանքատարածությունը։

Հաշվի առնելով, որ առաջադրված խնդիրները, մրցությամբ ստանձնած պարտավորությունները հեշտությամբ չեն իրականացվի, որ դրանց ժամանակին ապահովումը պայմանավորված է յուրաքանչյուր դաշտավարի, մեխանիզատորի, կթվոր-անասնապահի անձնվեր աշխատանքով՝ կուսկազմակերպությունը տնտեսության բոլոր տեղամասերում նոր եռանդով ծավալել է սոցիալիստական մրցությունը։ Կուսակցական, արհմիութենական կազմակերպությունները քաղաքական-մասսայական գործարար, արդյունավետ աշխատանքով, ցուցադրական ագիտացիայի բազմազան ձևերով ու այլ միջոցներով մոբիլիզացնում են աշխատավորների ուժերը, ձգտում հասնել այն բանին, որ հաջողությամբ լուծվեն հնգամյակի երկրորդ տարվա խնդիրները և սոցիալիստական մրցությունը պսակվի աշխատանքային նոր հաղթանակներով։



# ԷԿՈՆՈՄԻԿԱՅԻ ՀԱՐՑԵՐ

## ԳԻՏՈՒԹՅՈՒՆՆ ԱՐՏԱԴՐՈՒԹՅԱՆ ԴԱՇՆԱԿԻՑ

Նոր հնգամյակում գիտա-հետազոտական ինստիտուտների առջև լուրջ և պատասխանատու խնդիրներ են դրված։ Այդ խնդիրների իրագործման մասին ընթերցողներին ծանոթացնելու նպատակով, խմբագրությունը դիմեց Հայկական ՍՍՀ գյուղատնտեսության էկոնոմիկայի և կազմակերպման գիտա-հետազոտական ինստիտուտի դիրեկտորի գիտության գծով տեղակալ, տնտեսական գիտությունների թեկնածու Ս. Հ. Հարությունյանին, խնդրելով հաղորդելու, թե արտադրության զարգացման և նրա արդյունավետության բարձրացման ասպարեզում իրենց ինստիտուտն ինչպես է օգնում կոլտնտեսություններին ու սովխոզներին և կոնկրետ ինչ թեմաներ է մշակում։

Ստորև հրապարակում ենք նրա պատասխանը։

ՍՄԿԿ XXIV համագումարն ընդգծեց, որ երկրի ամբողջ էկոնոմիկայի վերելքը, սովետական մարդկանց կենսամակարդակի բարձրացման տեմպերը մեծապես պայմանավորված են գյուղատնտեսության հաջող զարգացմամբ։ Դրա համար անհրաժեշտ է գյուղատնտեսությունը վարել գիտական հիմունքներով, արտադրության առաջավոր փորձն արմատավորել բուսաբուծության և անասնաբուծության մեջ։ «Գիտա-հետազոտական կազմակերպությունների ուշադրությունը կենտրոնացնել գյուղատնտեսական արտադրության հիմնական պրոբլեմները լուծելու,— ասված է իններորդ հնգամյակի դիրեկտիվներում,— արտադրության տեխնոլոգիական արդյունավետ պրոցեսների և դրանց կոմպլեքսային մեքենայացման միջոցների, վնասատուներից ու հիվանդություններից բույսերի ու կենդանիների պաշտպանության նորագույն մեթոդների արմատավորումն արագացնելու վրա, ինչպես նաև հողատարածությունների, տեխնիկայի և աշխատանքային ռեսուրսների առավել ռացիոնալ օգտագործման պրոբլեմները լուծելու վրա» (ՍՄԿԿ XXIV համագումարի նյութերը, էջ 353)։

Գյուղատնտեսությունը ժողովրդական տնտեսության ամենից ավելի բարդ, ամենաընդարձակ ու կենսական կարևոր ճյուղն է, որը բնակչությանն ապահովում է սննդամթերքներով, իսկ արդյունաբերությանը՝ հումքով։

Գյուղատնտեսության հետագա զարգացման ծրագրի հաջող իրականացու-

մը մեծ չափով կախված է տնտեսական պրոցեսների խոր իմացությունից, գյուղատնտեսական կադրերի տեսական ու տնտեսական գիտելիքների, ինչպես նաև կոլտնտեսությունների և սովխոզների բանիմաց ղեկավարման մակարդակից, գյուղատնտեսության մեջ դեռևս չօգտագործվող հսկայական ռեզերվների հայտնաբերման ու գործադրման կարողությունից։ Գյուղատնտեսությունն արտադրության առանձնահատուկ ոլորտ է՝ իր մի շարք յուրօրինակություններով, որի շնորհիվ այստեղ տեխնիկական զինվածության, տեխնոլոգիայի և կազմակերպման բնույթն այլ է, քան ժողովրդական տնտեսության մյուս ճյուղերում։

Գիտա-տեխնիկական հեղափոխությունը, արտադրության և աշխատանքի բնույթի միջև կատարված որակական փոփոխությունները պահանջում են տնտեսության ղեկավարման բարձր մակարդակ։ Առանց սոցիալիզմի տնտեսական օրենքների և կուսակցության քաղաքականության խոր իմացության, անհնար է տնտեսություն վարել։ Ահա թե ինչու մեծ ուշադրություն է նվիրվում կոնկրետ էկոնոմիկայի հարցերին։ Դա կարևոր է հատկապես պլանավորման և տնտեսական խթանման նոր պայմաններում, երբ ժողովրդական տնտեսության ղեկավարման գործում վճռական նշանակություն ունեն տնտեսական լծակները՝ գինը, արժեքը, շահույթը, տնտհաշվարկը, նյութական խթանումը և այլն։

Գյուղատնտեսական գիտությունը կոչված է ո՛չ միայն ամենօրյա օգնություն ցույց տալու պրակտիկային, այլև լուծելու հեռանկարային խոշոր պրոբլեմներ, որոնք արտադրաուժերի զարգացման համար բաց են անում սկզբունքային նոր ուղիներ։

Գյուղատնտեսության ինտենսիվացման ժամանակակից կարևոր պրոբլեմներում արտադրության ռացիոնալ տեղաբաշխումն ու մասնագիտացումը գրավում է առաջնակարգ տեղերից մեկը։ Հավանաբար, դեռևս գյուղատնտեսության առջև երբեք այդ հարցն այնքան սուր չի դրվել, որքան մեր ժամանակում։

Արտադրության տեխնոլոգիական պրոցեսի ճանապարհին մասնագիտացումն օբյեկտիվ անհրաժեշտություն է դարձել։ Ելնելով այդ հարցի կարևորությունից, ՀՍՍՀ գյուղատնտեսության էկոնոմիկայի և կազմակերպման գիտա-հետազոտական ինստիտուտը, հանրապետության պետպլանի էկոնոմիկայի և պլանավորման ինստիտուտի հետ միասին, մշակել են Հայաստանի գյուղատնտեսության ռացիոնալ տեղաբաշխման ու մասնագիտացման 1975—1980 թթ. սխեման։

Գյուղատնտեսական արտադրության ռացիոնալ տեղաբաշխման նպատակով ինստիտուտն մշակել է Արարատյան հարթավայրի 6 շրջանների կոլտնտեսությունների և սովխոզների մասնագիտացման պլանը, կաթնային տավարաբուծության ռացիոնալ վարման սիստեմը՝ Երևանի մերձքաղաքային գոտու համար։ Սահմանվել են հանրապետության կոլտնտեսությունների և սովխոզների արտադրական մասնագիտացման տիպերը, որոշվել գյուղատնտեսության հիմնական և լրացուցիչ ճյուղերը։

Գիտության աշխատողները մտահոգված են, որպեսզի առավել լրիվ ու արդյունավետ օգտագործվեն ամեն մի շրջանի, կոլտնտեսության և սովխոզի բնա-տնտեսական պայմանները, առավելաչափ զարգանան հանրապետության գյուղատնտեսության հիմնական ճյուղերը։ Բայց Հայաստանի կոլտնտեսու-



թյուններում ու սովխոզներում արտադրության տեղաբաշխման և մասնագիտացման պրոցեսը դանդաղ է ընթանում։ Ահա թե ինչու ընթացիկ հնգամյակում գիտնականների, շրջանների կուսակցական, տնտեսական կազմակերպությունների, կոլտնտեսությունների ու սովխոզների միասնական ուժերով պետք է առաջ մղվի այդ գործը, ռացիոնալ տեղաբաշխվի ու մասնագիտացվի գյուղատնտեսական արտադրությունը։

Խաղողագործությունը և պտղաբուծությունը Հայաստանի առավել հին և գյուղատնտեսական արտադրության առաջատար ճյուղերից են։ 1965—1969 թթ. տվյալներով, բազմամյա տնկարկները չնայած գրավել են հանրապետության կոլտնտեսային հողատեսքերի ընդամենը 2,8 և վարելահողերի 7 տոկոսը, սակայն դրանց բաժին է ընկնում բուսաբուծության համախառն արտադրանքի և դրամական եկամուտների մոտ 40 տոկոսը. բուսաբուծության արտադրանքից ստացված 160,8 մլն ռուբլու զուտ եկամուտը կամ 47 տոկոսը բաժին է ընկնում խաղողին և պտուղներին։

Ինստիտուտն ուսումնասիրել և բացահայտել է Արարատյան հարթավայրի նախալեռնային գոտու խաղողի և պտղատու կուլտուրաների համար իրացվող նոր հողերի օգտագործման տնտեսական արդյունավետության միջոցներ ու ռեզերվներ, հիմնավորել, մասնավորապես, ոռոգման չորս սիստեմների՝ Արզնի—Շամիրամի, Թալինի երկրորդ հերթի, Նոյեմբերյանի և Որոտանի հողերի տեխնիկա-տնտեսական իրացումը։ Մշակված է այդ հողերում կազմակերպվող տնտեսությունների ռացիոնալ մասնագիտացման պլանը, սահմանվել են հիմնական տնտեսական ցուցանիշները։ Ինստիտուտի մշակած միջոցառումները կիրառելիս տարեկան ամեն մի հեկտարից կստացվի 600—1000 ռուբլու զուտ եկամուտ։ Ընդհանուր կապիտալ ներդրումները կփոխհատուցվեն 5—10 տարում։

Գյուղատնտեսական մթերքների արտադրության ծավալը, կոլտնտեսությունների և սովխոզների զարգացումը, աշխատավորների նյութական բարեկեցության վերելքը պայմանավորված են գյուղատնտեսության գլխավոր և անփոխարինելի միջոցի՝ հողի օգտագործմամբ։ Ինստիտուտում հետազոտական աշխատանքներ են կատարվում հանրապետության հողային ֆոնդի, վարելահողերի ընդհանուր տնտեսական գնահատման և ռացիոնալ օգտագործման, տնտեսական արդյունավետության բարձրացման նպատակով։ Արդեն 15 շրջանների տնտեսությունների համար կազմված է վարելահողերի տնտեսական գնահատման նախնական սանդղակը, ավարտվում են 13 շրջանների տնտեսությունների նույնանման աշխատանքները։

Ելնելով կուսակցության և կառավարության՝ հողերի մելիորացման, էռոզիայի դեմ պայքարի հրատապ միջոցառումների մասին որոշումից, Կամոյի կուսշրջկոմի և շրջանային սովետի գործկոմի գյուղատնտեսական վարչության միջնորդությամբ ինստիտուտն ուսումնասիրություններ կատարեց և տեղի մասնագետների հետ միջոցառումներ մշակեց հողատարածությունները, հատկապես, վարելահողերը հաշվենկատ օգտագործելու համար։ Այդ առաջարկությունները քննարկվեցին ինստիտուտի և շրջկոմի կողմից անցկացված գիտաարտադրական կոնֆերանսում, որին ակտիվ մասնակցեցին ինստիտուտի գիտաշխատողները, կոլտնտեսությունների և սովխոզների մասնագետները, արտադրության մարդիկ։ Ուսումնասիրությունը ցույց տվեց, որ հողերի ռացիոնալ օգտագործման բնագավառում գոյություն ունեն լուրջ թերություններ և

չլուծված հարցեր։ Օրինակ, շրջանի գյուղատնտեսական օգտագործելի հողատարածություններում վարելահողերը կազմում են ընդամենը 34,3 տոկոս, չնայած դրան, շրջանում տարեցտարի պակասել են վարելահողերը, ավելացել արոտներն ու չօգտագործվող հողերը։ Վարելահողերը ցրված են 8 հազար փոքր հողակտորների վրա. մեկ հողակտորի միջին չափը 1,9 հեկտար է։ Հաշվարկները ցույց տվեցին, որ վարելահողերի 25,8 տոկոսը ենթարկված են էռոզիայի։

Հայտնի է, որ էռոզիայի դեմ պայքարի կարևոր միջոցառումներից մեկը հողապաշտպան ցանքաշրջանառությունների կիրառումն է, որի վրա ուշադրություն չի դարձվել։ Կոնֆերանսը բացահայտեց, որ ցանքաշրջանառությունների ժամանակ հաշվի չեն առել տեղի հորիզոնական գոտիականությունը և հողերի տիպերը։ Շրջանի լեռնային զանգվածների սևահողերում, կարտոֆիլի ցանքատարածությունների ավելացման պատճառով, կիրառվում է կարտոֆիլ-գարի պարզ ցանքաշրջանառությունը։ Ամեն տարի թեք լանջերին ընկած հողերի ինտենսիվ մշակությունը (գարնան վար, միջշարային մշակություն, ցրտահերկ) նպաստավոր պայմաններ է ստեղծել բնական էռոզիայի լայն զարգացմանը։ Տարիների ընթացքում բերրի սևահողերը վերածվել են սակավազոր հողերի կամ ցածրորակ արոտների։

Իսկ ի՞նչ անել։ Շրջանի բարձրադիր սևահողային գոտու թեքություններում ընկած մանր հողակտորներում էռոզիայի կանխման և այդ գոտում արդյունավետ երկրագործության ապահովման նպատակով անհրաժեշտ է հացահատիկային և միամյա կուլտուրաների փոխարեն ցանել բազմամյա խոտեր։ Դրա հետ մեկտեղ համապատասխան միջոցառումներ մշակվեցին մեքենայական պարկի օգտագործման տնտեսական արդյունավետության բարձրացման համար։

Տնտհաշվարկը սոցիալիստական տնտեսությունը վարելու առաջավոր մեթոդ է, որը խթանում է ավելի շատ ու բարձրորակ մթերքների արտադրմանը։ ՍՄԿԿ XXIV համագումարը նշեց, որ կոլտնտեսություններում և սովխոզներում հանրային տնտեսության հետագա աճը մեծապես պայմանավորված է նաև տնտհաշվարկի սկզբունքների առավել լայն կիրառմամբ։ Տնտհաշվարկի շնորհիվ յուրաքանչյուր տնտեսության և դրա ստորաբաժանումների արտադրական պլանները հաջողությամբ են կատարվում, ինչպես նաև իջեցվում է արտադրանքի ինքնարժեքը։ Բացի դրանից, այն կիրառելիս արտադրության ծախսումները հատուցվում են արտադրանքի վաճառքից գոյացած միջոցներով և անհրաժեշտ կուտակումներ են ստեղծվում արտադրության հետագա ընդլայնման համար։ Ելնելով դրա կարևորությունից, ՍՄԿԿ Կենտրոնական կոմիտեն և սովետական կառավարությունը վերջին տարիներս որոշեցին գյուղատնտեսական արտադրությունը վարել սոցիալիստական տնտեսավարման լենինյան, առաջին հերթին, տնտհաշվարկային սկզբունքներով, այսինքն՝ վարչական մեթոդներից աստիճանաբար անցնել էկոնոմիկական լծակների լայն կիրառմանը։ Այդ որոշման կիրառումը դրական արդյունքներ տվեց Մերձբալթյան հանրապետություններում, Ուկրաինայում, Մոլդավիայում, երկրի բազմաթիվ մարզերում ու Հայաստանի շատ տնտեսություններում։

Հայաստանի կոմկուսի Կենտկոմը և ՀՍՍՀ Մինիստրների սովետը 1967 թ. սեպտեմբերին որոշեցին 1969—1973 թթ. ընթացքում հանրապետության կոլ-



տնտեսություններն աստիճանաբար փոխադրել ներտնտեսային, իսկ սովխոզները՝ լրիվ տնտեսական հաշվարկի։

Այս կարևոր միջոցառման կենսագործման նպատակով արտադրության մարդկանց հետ համատեղ, գործում են գիտության աշխատողները։ Հասկանալի է, որ տնտեսավարման այդ ձևին անցնելու համար հարկավոր էր հաշվի առնել յուրաքանչյուր տնտեսության, շրջանի առանձնահատկությունները, նրա հնարավորությունները և այդ ամենը գիտականորեն հիմնավորել։ Կոլտնտեսություններում ներտնտեսային հաշվարկի ներդրմանը խանգարում էր դրա արմատավորման համար միասնական հանձնարարականների բացակայությունը։ Գյուղատնտեսության էկոնոմիկայի և կազմակերպման գիտա-հետազոտական ինստիտուտը մշակեց ու կառավարության հաստատմանը ներկայացրեց ներտնտեսային հաշվարկի կազմակերպման հանձնարարականներն ու տնտհաշվարկային միավորների արտադրության պլանավորման մատչելի ձևերը։

Ներտնտեսային հաշվարկը կոչված է վարձատրությունն անմիջականորեն կախման մեջ դնելու կոլտնտեսականների աշխատանքի վերջնական արդյունքից, դրանով իսկ իրականացնելու «հավասար աշխատանքի դիմաց հավասար վարձատրություն» սոցիալիստական սկզբունքը։

Ներտնտեսային հաշվարկի փոխադրվող կոլտնտեսությունների վարչությունների նախագահների, գյուղատնտեսության մասնագետների համար գյուղատնտեսության մինիստրության հետ միասին մեր ինստիտուտը կազմակերպել է սեմինար պարապմունքներ, կոնսուլտացիաներ։ Գիտական աշխատողները սիստեմատիկ լինում են կոլտնտեսություններում և տեղերում գործնական մասնագիտական օգնություն ցույց տալիս ներտնտեսային հաշվարկը կիրառելու համար (Աբովյանի, Մեղրու, Էջմիածնի և Անիի շրջանների կոլտնտեսություններ)։ Ներտնտեսային հաշվարկի ու այլ միջոցառումների շնորհիվ որոշակի հաջողություններ են ձեռք բերվել գյուղատնտեսական արտադրության զարգացման բնագավառում։ Օրինակ, Աբովյանի շրջանի Գեղաշենի կոլտնտեսությունը (որի շեֆությունը վերցրել է ինստիտուտը), 1969 թվականից աշխատում է ներտնտեսային հաշվարկով։ Անցած երկու տարիների համեմատությամբ, տնտեսությունում համախառն արտադրանքն ավելացել է 18,3, դրամական եկամուտները՝ 35,6, համախառն եկամուտը՝ 26,6 տոկոսով, աշխատանքի տարեկան միջին վարձատրությունը, մեկ աշխատողի հաշվով, բարձրացել է 23,9 տոկոսով։

Ինստիտուտը գյուղատնտեսության մինիստրության, շրջանային կազմակերպությունների հետ միասին աշխատանք է ծավալում հանրապետության սովխոզները լրիվ տնտհաշվարկի փոխադրելու համար։ Պետական այդ կարևոր միջոցառումը կենսագործելու նպատակով արդեն որոշ գործ է կատարված։ 1970 թ. լրիվ տնտեսական հաշվարկով աշխատող 35 սովխոզների տնտեսական ցուցանիշների վերլուծությունը ցույց է տալիս տնտհաշվարկի բարձր արդյունավետությունը։ Վերը նշված տնտեսություններում 1970 թ., նախորդ երկու տարիների համեմատությամբ, համախառն արտադրանքն ավելացել է 19, աշխատանքի արտադրողականությունը՝ 16, աշխատողների տարեկան միջին աշխատավարձը՝ 9,5 տոկոսով։ Սովխոզների շահութաբերության մակարդակը 60-ի դիմաց կազմել է 96 տոկոս։

Տնտհաշվարկի անցած տնտեսությունների էկոնոմիկան զարգանում է

հաջողությամբ։ Կոլեկտիվը խելացի է օգտագործում այն լայն ինքնուրույնությունը, որն այժմ ընձեռված է նրանց։ Բարձրացել է տնտեսությունների ղեկավարների, մասնագետների պատասխանատվությունը կապիտալ ներդրումների և հիմնական միջոցների ռացիոնալ օգտագործման նկատմամբ։

Տնտեսավարության այս ձևի պայմաններում պետության, սովխոզի և գյուղացու շահերը միաձուլվում են, տնտեսական ռեֆորմը մարդուն թելադրում է գործել խելամտորեն։ Այստեղ ամեն մեկը գիտե, որ արտադրելով լավորակ և էժան մթերքներ, կստանա լրացուցիչ նյութական վարձատրություն։ Ի վերջո, տնտեսությունն իջեցնում է արտադրանքի ինքնարժեքը, բարձրացնում արտադրության շահութաբերությունը։

Խնդիրն այն է, որ հանրապետության բոլոր սովխոզներն անցնեն լրիվ տնտեսական, իսկ կոլտնտեսությունները՝ ներտնտեսային հաշվարկի, այն պետք է սկսել կադրերի տնտեսագիտական ուսուցումից, խուսափել վարչարարությունից. առաջավոր փորձի հիման վրա տնտեսավարներին ու մասնագետներին սովորեցնել տնտհաշվարկը։

Գյուղատնտեսական ձեռնարկությունները տնտհաշվարկի փոխադրելը կարևոր գործ է։ Դրանով պետք է մտահոգվեն կուսակցական, տնտեսական օրգանները, գիտության աշխատողները, ֆինանսական, մատակարարող և մթերող կազմակերպությունները։

Ինստիտուտը որոշակի անելիքներ ունի հանրապետության գյուղատնտեսության մեքենայացման և էլեկտրիֆիկացման տնտեսական պրոբլեմները լուծելիս։ Հանրապետության տարբեր մասնագիտություն ունեցող տնտեսություններում ուսումնասիրվում են տեխնիկայի ռացիոնալ օգտագործման տնտեսական արդյունավետության հարցերը։ Ուսումնասիրություններից կարելի է հանգել այն եզրակացության, որ հանրապետության լեռնային շրջաններում տնտեսապես թույլ տնտեսություններից, գյուղատնտեսական տեխնիկան պետք է կենտրոնացնել մեքենա-շահագործման, մեքենա-անասնապահական ջոկատներում։

Մեքենա-տրակտորային պարկի արտադրողականությունը մեծ չափով պայմանավորված է մեքենաների խնամքով և տեխնիկապես սարքին վիճակով, այսինքն՝ տեխնիկական սպասարկման ճիշտ կիրառումով։ Գյուղատնտեսական տեխնիկայի սպասարկման ձևերի ուսումնասիրության հիման վրա արվել են համապատասխան առաջարկություններ։

Գյուղատնտեսական արտադրանքի ինքնարժեքի իջեցումը կարևոր նշանակություն ունի կոլտնտեսությունների և սովխոզների ամրապնդման համար։ Այդ առթիվ ինստիտուտում շոշափելի հետազոտություններ են կատարվել և գործնական առաջարկություններ արվել աշխատանքի արտադրողականության բարձրացման, ինքնարժեքի իջեցման հարցերի վերաբերյալ։ Մանավորապես մշակվում են ինքնարժեքի և շահույթի որպես գնագոյացման հիմնական գործոնի հարցերը։ Դրա հիման վրա արվել են ուշագրավ առաջարկություններ գյուղատնտեսական մի շարք հիմնական մթերքների, հատկապես խաղողի ու բանջարեղենի գների կատարելագործման, ինչպես նաև Շիրակի դաշտի կոլտնտեսություններում և սովխոզներում կերային կուլտուրաների ինքնարժեքի և տավարաբուծության արտադրանքի ծախքերի կրճատման մասին։ Այդ հարցում ինստիտուտը սերտ կապի մեջ է գների պետական կոմիտեի և համապատասխան կազմակերպությունների հետ։



Ինստիտուտը Մարտունու, Կամոյի, Սպիտակի, Արթիկի, Թումանյանի, Շամշադինի, Վարդենիսի և այլ կուսշրջկոմների հետ միասին ամեն տարի կազմակերպում է գիտա-արտադրական կոնֆերանսներ՝ տնտեսագիտական պրոբլեմների շուրջ, որը գյուղական կադրերի տնտեսական ուսուցման լավագույն ձևերից մեկն է։

Ինստիտուտում լայն միջոցառումներ են մշակվել գյուղական աշխատավորների տնտեսագիտական ուսուցումը ծավալելու համար։ Գիտական աշխատողները զեկուցումներով ու զրույցներով հանդես են գալիս շրջանի տնտեսական ակտիվի, կոլտնտեսությունների ու սովխոզների աշխատողների առջև՝ տնտեսագիտության տեսական և գործնական հարցերի շուրջ։ Ուսուցման դպրոցների, խմբակների, տնտեսագիտական ժողովրդական համալսարանների, սեմինարների ղեկավարների համար կազմակերպվում են մեթոդական սեմինար-խորհրդակցություններ։

Ջնայած գիտության աշխատողներն արտադրության հետ համատեղ, տարբեր ձևերով ու մեթոդներով բազմաթիվ խնդիրներ են լուծում, սակայն դեռևս շատ բացեր և չլուծված հարցեր կան։ Առանձին պրոբլեմների հետազոտություններ տարվում են ոչ բավարար գիտական խորությամբ, քանի որ այն կատարում է մեկ աշխատող, ուսումնասիրությունը տարիներ է տևում, անցնում է ժամանակը և այն դառնում է ինքնանպատակ, միայն տվյալ գիտաշխատողի սեփականությունը։ Ինստիտուտի խնդիրն է՝ ո՛չ միայն կրճատել թեմաները, այլև դրանց հետազոտման ժամկետը. որքան արագ լուծվի այս կամ այն պրոբլեմը, այնքան արտադրությունը կշահի։ Դեռևս թույլ են կոորդինացվում հետազոտվող թեմաները, ինչպես ինստիտուտի ներսում, այնպես էլ մյուս գիտա-հետազոտական ինստիտուտների միջև։

Գիտության և արտադրության կապերի ուժեղացման ձևերի ու մեթոդների կատարելագործումը խիստ անհրաժեշտ է. այդ է պահանջում գյուղատնտեսության զարգացման ներկա մակարդակը։

Գյուղատնտեսական արտադրության պրակտիկան գիտության առջև հարուցում է նոր պրոբլեմներ, դրանց հետ մեկտեղ իրենց լուծմանն են սպասում վաղուց հասունացած շատ հարցեր։ Գիտությունն արտադրության հետ դաշնակցած կարող է իր առջև դրված խնդիրները հաջողությամբ լուծել։



## ԱՐՄԱՏԱՎՈՐԵԼ ՎԱՃԱՌՔԻ ԱՌԱՋԱՎՈՐ ՄԵԹՈԴՆԵՐԸ

ՍՄԿԿ XXIV համագումարն ընթացիկ հնգամյակի գլխավոր խնդիրը հա-
մարեց ժողովրդի կյանքի նյութական ու կուլտուրական մակարդակի նշանա-
կալի վերելքի ապահովումը, որը կենսագործվելու է սոցիալիստական արտա-
դրության զարգացման տեմպերի արագացման, դրա արդյունավետության
բարձրացման, գիտա-տեխնիկական առաջադիմության և աշխատանքի արտա-
դրողականության աճի հիման վրա։

Ժողովրդի կենսամակարդակի բարձրացումը, առաջին հերթին, կոնկրետ
կարտահայտվի նաև ապրանքաշրջանառության ծավալի մեծացմամբ։ Պետա-
կան ու կոոպերատիվ առևտրի մանրածախ ապրանքաշրջանառության ծավալն
ընթացիկ հնգամյակում նախատեսված է ավելացնել 42, իսկ Հայկական
ՍՍՀ-ում՝ 70 տոկոսով։ Դրա հետ միասին զգալիորեն կբարելավվի առևտրա-
կան կազմակերպությունների աշխատանքը, կարմատավորվեն վաճառքի
առաջավոր մեթոդները։ Այդ միջոցառումները կօգնեն աշխատավորներին կըր-
ճատելու ժամանակի այն ծախսումները, որոնք հատկացվում են ապրանքների
գնման, տնային պայմաններում ճաշերի պատրաստման, հագուստի կարման,
մաքրման և նման այլ աշխատանքների համար։

Արտաաշխատանքային ժամանակի սպառման հետ կապված ծախքերն
անարտադրողական են, հետևաբար դրանց փոքրացումը հասարակական ար-
տադրության արդյունավետության բարձրացման գործոն է։ Սպառման ծախ-
քերի ծավալի մասին մոտավոր պատկերացում կազմելու համար նշենք, որ
ըստ ՍՍՀՄ սոցիոլոգների հաշվումների, միայն ապրանքների գնման համար
երկրում տարեկան ծախսվում է մոտ 30 մլրդ ժամ, որը հավասար է 15 մլն
աշխատողի աշխատաժամանակի տարեկան ֆոնդին։ Ուսումնասիրությունները
ցույց են տվել, որ սովորական մեթոդներով սպասարկող պարենային խա-
նութներում գնորդը կորցնում է 5—6 անգամ ավելի ժամանակ, քան պահանջ-
վում է ապրանքների անմիջական գնման համար։

Առևտրի հետագա ծավալումը, բնակչության սպասարկման կուլտուրայի
բարձրացումը և սպառման ծախքերի կրճատումն անհնար է պատկերացնել
առանց ապրանքների վաճառքի առաջավոր մեթոդների կիրառման։ Հետպա-
տերազմյան տարիներին առևտրի զարգացումը բնութագրող կարևոր ցուցա-
նիշներից մեկը այդ մեթոդներով գործող խանութային ցանցի ստեղծումն էր։

1954 թ. վերջին Լենինգրադում բացվեց ինքնասպասարկման առաջին
խանութը երկրում։ Հետագա տարիներին վաճառքի ինչպես այդ, այնպես էլ
մի քանի այլ մեթոդներ, ինչպիսիք են՝ ապրանքների վաճառքը բաց ցուցա-
դրման եղանակով, ըստ նմուշների վաճառքի կազմակերպումը, ապրանքների
վաճառքը նախնական պատվերներով և առաքումը գնորդների տուն, արմա-
տավորվեցին առևտրում։ 1971 թ. նոյեմբերի 1-ի դրությամբ Հայաստանի
մայրաքաղաքում գործում էին պարենային և արդյունաբերական ապրանքների



ինքնասպասարկման 128, իսկ բաց ցուցադրման և ըստ նմուշների վաճառքի
63 խանութ։ Բացի այդ, կաթի և հացի առաքումը տուն կազմակերպված էր
35, իսկ նախնական պատվերներով ապրանքների վաճառքը՝ 10 խանութում։

Վաճառքի առաջավոր մեթոդներ կիրառող խանութների ցանցի ընդլայն-
մանը հատուկ ուշադրություն է նվիրվել հատկապես անցած հնգամյակի վեր-
ջին տարիներին։ Բավական է ասել, որ ՍՍՀՄ-ում, այդ հնգամյակում բացված
50 հազար ինքնասպասարկման խանութից 30 հազարը բաժին է ընկել 1970
թվականին։ Համանման պատկեր է նաև Երևանում։ Եթե 1968 թ. սկզբին գոր-
ծում էր ընդամենը 12 ինքնասպասարկման խանութ, ապա միայն 1970 թ. այն
ավելացավ 42 ձեռնարկությամբ։ ՀՍՍՀ-ում այդ թվականին բացվել է 119
ինքնասպասարկման խանութ, որից հատկապես պետք է առանձնացնել Երև-
վանի Սպանդարյանի շրջանդարի ինքնասպասարկման № 154 խանութը, որը
աչքի է ընկնում բազմազան տեսականիով և առևտրական ընդարձակ դահլի-
ճով (1300 քմ)։

Զգալիորեն աճեց նաև մյուս մեթոդները կիրառող խանութների թիվը։
Այդ երևույթի պատճառը պետք է փնտրել ո՛չ միայն նշված մեթոդների լայն
արմատավորման համար անհրաժեշտ տնտեսական նախադրյալների առավել
հասունացման (ժողովրդական սպառման ապրանքների արտադրության և
ապրանքային ռեսուրսների աճի բարձր տեմպերը, բնակչության բարեկեցու-
թյան բարձրացումը, առևտրի նյութա-տեխնիկական բազայի զարգացումը),
այլև կազմակերպական աշխատանքների բարելավման մեջ։ Ինքնասպասարկ-
ման խանութների վերը նշված աճը, առաջին հերթին, պայմանավորված է
ինչպես միութենական, այնպես էլ հանրապետության առևտրի մինիստրու-
թյունների այդ բնագավառում կատարված որոշակի աշխատանքով։ Այնու-
հանդերձ, դեռևս մեր հանրապետությունում, այդ թվում Երևանում, ինքնա-
սպասարկման խանութներին վերաբերող ցուցանիշները ետ են մնում միութե-
նական միջին տվյալներից։ Այսպես, 1971 թ. հունվարի 1-ի դրությամբ ՍՍՀՄ
պետական առևտրում ինքնասպասարկմամբ աշխատել են խանութների 13,8
տոկոսը, որոնց 1970 թ. չորրորդ եռամսյակում բաժին է ընկել ապրանքաշըր-
ջանառության 16,8, իսկ Երևանում այդ ցուցանիշները համապատասխանա-
բար կազմել են 11 և 9,3 տոկոս։

Անցնելով հին, ավանդական վաճառքից առաջավոր մեթոդներին, արմա-
տապես փոփոխվում են խանութների առևտրա-օպերատիվ պրոցեսները, նոր
ձևով է իրականացվում ապրանքների ցուցադրումն ու վաճառքը, փոխվում են
աշխատողների ֆունկցիաները, խանութների կառուցմանը և սարքավորանքին
ներկայացվում են նոր պահանջներ։ Ուրեմն, այդ անցումը պետք է դիտել ո՛չ
թե սոսկ տեխնիկական պրոցես այլ առևտրի արդյունավետությունը բարձրաց-
նող, նրա հետագա զարգացումն ապահովող կարևոր տնտեսական միջոց-
առում։

Վաճառքի առաջադիմական մեթոդները նպաստում են բնակչության պա-
հանջների առավել լրիվ բավարարմանը, ապրանքների ընտրման և գնման
հարցում գնորդների ինքնուրույնության ավելի լայն դրսևորման միջոցով
սպասարկման կուլտուրայի բարձրացմանը, առևտրական դահլիճի տարածու-
թյան արդյունավետ օգտագործմանը, հետևաբար խանութի թողունակության
ավելացմանը, ինչպես նաև ապրանքների գնման համար հատկացվող ժամա-
նակի կրճատմանը։ Մեր ուսումնասիրությունները ցույց են տվել, որ ինքնա-

սպասարկման սկզբունքով վաճառքի կազմակերպման դեպքում ապրանքների գնման համար ծախսվող ժամանակը կրճատվում է, միջին հաշվով, 50 տոկոսով։

Այդ բոլորի շնորհիվ լավանում են առևտրական ձեռնարկությունների գործունեության տնտեսական ցուցանիշները. մեծանում է ապրանքաշրջանառության ծավալը, նվազում են շրջանառության ծախքերը, ավելանում է շահութաբերությունը։ 1970 թ. նոյեմբերից Երևանի կենտրոնական հանրախանութի 10 սեկցիաներն անցան ինքնասպասարկման։ 1971 թ. հունիսից այդ մեթոդով սկսեցին աշխատել ևս 14 սեկցիա։ Արդյունքը եղավ այն, որ հանրախանութի ապրանքաշրջանառության մեջ ավելի քան 60 տոկոսը բաժին ընկավ ինքնասպասարկմամբ աշխատող սեկցիաներին, որը նկատելիորեն լավացրեց տնտեսական ցուցանիշները։ Այսպես, եթե հանրախանութի ապրանքաշրջանառության ծավալը 1971 թ. հունվար—սեպտեմբեր ամիսներին, նախորդ տարվա համապատասխան ժամանակաշրջանի համեմատությամբ, աճեց 2 տոկոսով, ապա ինքնասպասարկման սեկցիաներում այն ավելացավ ավելի բարձր տեմպով և կազմեց 5,1 տոկոս։ Դա նպաստեց շրջանառության ծախքերի իջեցմանը, տնտեսվեց 34000 ռուբլի, իսկ գերպլանային շահույթը կազմեց 81,2 հազար ռուբլի։

Նկատի ունենալով բնակչության առևտրական սպասարկման առաջավոր մեթոդների անվիճելի առավելությունները, ՍՄԿԿ XXIV համագումարի դիրեկտիվներում շեշտվում է, որ անհրաժեշտ է ըստ ամենայնի զարգացնել առևտրի նորագույն ձևերը։ Մոտակա տարիներին առևտրի զարգացման հիմնական ուղղությունը դառնալու է այդ ձևերի, հատկապես ինքնասպասարկման, լայն ներդրումը։

Ընթացիկ հնգամյակում նախատեսված է Երևանում ինքնասպասարկման փոխադրել 280 խանութ. 50 խանութում արմատավորվելու են ապրանքների բաց ցուցադրման և ըստ նմուշների վաճառքի մեթոդները, իսկ 30-ով ավելանալու է նախնական պատվերներով վաճառք կատարող առևտրական ձեռնարկությունների թիվը։

Քանակական աճին զուգընթաց այդ տարիներին ինքնասպասարկման ցանցի զարգացումը կունենա իր մի քանի առանձնահատկությունները։ Դրանցից առավել բնորոշները երկուսն են։ Առաջին, մասնագիտացված ինքնասպասարկման խանութներն աստիճանաբար իրենց տեղը կզիջեն բազմազան տեսականիով ունիվերսալ տիպի խանութներին, որոնք գնորդներին հնարավորություն կտան միևնույն խանութում կատարել տարբեր ապրանքների գնումներ։ Երկրորդ, պարենային խանութների համեմատությամբ, ավելի բարձր տեմպերով կաճեն արդյունաբերական ապրանքների ինքնասպասարկման խանութները։ Հնգամյակում մայրաքաղաքի ինքնասպասարկման 280 նոր խանութից 180-ը նախատեսված է արդյունաբերական ապրանքների իրացման համար։ Երևանում կառուցվող նոր կենտրոնական հանրախանութը, որը կունենա 364 աշխատատեղ, ամբողջովին գործելու է ինքնասպասարկմամբ։ Հարկ է նշել, որ այդ մեթոդով կարելի է վաճառել արդյունաբերական ապրանքների մեծ մասը, մասնավորապես հագուստեղեն, տրիկոտաժեղեն, կոշիկ, գիրք, գալանտերեական, պարֆյումերիական, տնտեսական, երաժշտական, գրենական և սպորտ ապրանքներ։



Իհարկե, նախատեսված առաջադրանքների կատարման և վաճառքի այդ մեթոդները իսկապես մասսայական և բնակչության կողմից ընդունելի դարձնելու համար, անհրաժեշտ է վերացնել այն թերությունները, որոնք խոչընդոտում են գնորդների սպասարկման առաջավոր ձևերի զարգացմանը։

Մայրաքաղաքի ինքնասպասարկման խանութներում կատարված ուսումնասիրությունները ցույց տվեցին, որ թերությունները բավականին զգալի են և վերաբերում են այդ խանութների աշխատանքի տարբեր կողմերին։ Ինքնասպասարկման խանութների տեսականին առավելապես նախակշռված-փաթեթավորված և հատային ապրանքներն են։ Հետևաբար, ինքնասպասարկման զարգացումը, առաջին հերթին, պայմանավորված է այդպիսի ապրանքների արտադրության ծավալով։

ՍՄԿԿ XXIV համագումարի դիրեկտիվներով նախատեսված է անհրաժեշտ չափերով ավելացնել ապրանքների նախնական փաթեթավորումը։ Այնուամենայնիվ, դեռևս շատ արտադրական ձեռնարկություններ անբավարար են կատարում դիրեկտիվ մարմինների ցուցումները՝ ավելի շատ ապրանքներ փաթեթավորված վիճակում մանրածախ ցանցին մատակարարելու հարցում։ Երևանի հրուշակեղենի և մակարոնի ֆաբրիկան պարտավորվել է մայրաքաղաքի առևտրական ձեռնարկություններին հասանելիք ֆոնդերի 70 տոկոսը մատակարարել նախակշռված-փաթեթավորված վիճակում, սակայն իրականում այն կազմում է մինչև 7—10 տոկոսը։ Բարվոք չէ վիճակը նաև ձեթ-օճառ, մսի կոմբինատների, գարեջրի գործարանի մատակարարումներում։ Մսի կոմբինատը 1971 թ. առաջին 9 ամիսներին Երևանի առևտրի վարչության խանութներին պետք է մատակարարեր 2762 տոննա մսի փաթեթավորված կիսաֆաբրիկատներ, իսկ իրականում մատակարարել է միայն 1923 տոննա։ Ձեթօճառ կոմբինատը և գարեջրի գործարանը մանրածախ ցանցին ձեթ և գարեջուր պետք է մատակարարեն միայն շշերով, սակայն այդպիսին կազմում է 75 տոկոսը։

Դրա հետ միասին անհրաժեշտ է նշել, որ արտադրական ձեռնարկությունները քիչ են թողարկում տարբեր քաշերի փաթեթավորված ապրանքներ։ Երևանի ալրաղաց կոմբինատը մանրածախ ցանց է մատակարարում երկու կիլոգրամ փաթեթով ալյուր, մակարոնեղենի և հրուշակեղենի ֆաբրիկայի արտադրած ամենափոքր քաշի փաթեթի կարամելը կշռում է 250 գր։ Շաքարավազի փաթեթները ստացվում են մեկ և երկու կգ։ Դա բացասաբար է անդրադառնում ինքնասպասարկման խանութի ապրանքաշրջանառության և գնորդների սպասարկման վրա։

Շեշտելով արտադրության վճռական դերը կշռված-փաթեթավորված ապբանքների արտադրության գործում, մենք նպատակ չունենք թերագնահատելու առևտրի աշխատողների խնդիրներն այդ բնագավառում։ Ընդհակառակը, նրանք չպետք է ձեռքերը ծալած սպասեն այն օրվան, երբ ամեն ինչ բարեհաջող կլուծվի արտադրական ձեռնարկություններում։ Փաթեթավորված ապրանքներով պարենային ինքնասպասարկման խանութների պահանջի մի մասը ծածկվելու է իրենց իսկ՝ առևտրի աշխատողների ջանքերով։ Առևտրի տարբեր օղակներում՝ մեծածախում և մանրածախում պետք է ստեղծել անհրաժեշտ պայմաններ ապրանքների փաթեթավորումը կազմակերպելու նպատակով։

Տարիներ շարունակ Երքաղսովետի առևտրի վարչության պարենային ապրանքների բազային կից գործում էր ապրանքների փաթեթավորման ար-

տադրամասը: Սակայն դրա կարողությունը փոքր էր, հետևաբար, չէր կարող բավարարել շարունակ ավելացող ինքնասպասարկման խանութների պահանջը: Նախատեսվեց ընդլայնել այն: Ահա այստեղ առևտրի վարչությունը կանգնեց փակուղու առջև: Չէին բավարարում սեփական միջոցները շինարարության ֆինանսավորման համար, իսկ պետբանկը չի տրամադրում համապատասխան գումարի վարկ՝ պատճառաբանելով, որ վարկավորման ենթակա օբյեկտների ցուցակում այդպիսիները բացակայում են: Մեր կարծիքով, հարցը պետք է լուծվի ժողովրդա-տնտեսական շահերից ելնելով: Ինքնասպասարկման ցանցի զարգացման ամենահիմնական նախադրյալը փաթեթավորված ապրանքների առկայությունն է, իսկ այդ խնդրի իրականացմանը լրջորեն կարող են նպաստել փաթեթավորման արտադրամասերը: Ուրեմն, պետք է մտածել այդպիսի օբյեկտների շինարարությունը ևս վարկավորելու մասին, մանավանդ որ նախատեսված է մոտակա տարիներին նման արտադրամասեր կառուցել նաև Լենինական և Կիրովական քաղաքներում:

ՍՍՀՄ մի քանի քաղաքներում (Մոսկվա, Լենինգրադ, Ռիգա, Վիլնյուս) լայնորեն արմատավորված է ապրանքների կշռումն ու փաթեթավորումը հենց ինքնասպասարկման խանութներում: Այդ կիրառում են նաև Երևանում: Այլ կերպ լինել չէր կարող: Ինքնասպասարկման անցած համարյա բոլոր խանութներում աշխատողների թիվը մնացել է անփոփոխ, որի հետևանքով զգալիորեն նվազել է նրանց աշխատանքային բեռնվածությունը: Ուրեմն, նոր պայմաններում խանութներում աշխատանքը գիտականորեն կազմակերպելու պահանջներից մեկը աշխատուժի օգտագործման արդյունավետության բարձրացումն է: Այդ խնդրի կենսագործման ուղիներից մեկն աշխատողների ներգրավումն է փաթեթավորմանը: Սակայն, դրան խանգարում է հետևյալ հանգամանքը: Խանութներում չափազանց քիչ են ստացվում նախօրոք պատրաստված, գեղեցիկ տեսք ունեցող փաթեթներ, իսկ այնտեղ պատրաստվողները կոպիտ և անորակ են, փաթեթման պրոցեսը աշխատատար է: Հայգույքարտը պետք է մտահոգվի ավելի շատ պատրաստի փաթեթներ հայթայթելու և մանրածախ ցանցին մատակարարելու համար:

Ինքնասպասարկման ցանցի զարգացումը պայմանավորված է նաև նրա նյութա-տեխնիկական բազայի բարելավմամբ: Նոր առևտրական շինությունների կառուցումը, դրանց հագեցումը անհրաժեշտ սարքավորումներով ապրանքաշրջանառության ծավալման պայմանն են: Միայն 1971 թ. (մինչև հոկտեմբերը) Երևանի առևտրի վարչության սիստեմում շահագործման են հանձնվել ավելի քան 30 նոր խանութ, ձեռք են բերվել և ցանցում տեղադրվել 500 միավոր առևտրական տարբեր սարքավորումներ: Սակայն, զգալի առաջընթացի հետ միասին այդ գործում կան որոշակի թերություններ: Առաջին հերթին պետք է նշել, որ վերջին երկու տարիներին որոշ անկանոնություն է տիրում Երքաղսովետի գործկոմի կողմից առևտրի վարչությանը նոր վաճառատեղեր հատկացնելու հարցում: Այդպիսիների առանձնացումը հաճախ կրում է պատահական բնույթ, որի հետևանքով հնարավոր չէ նախօրոք պարզել տվյալ տարվա ընթացքում նոր բացվելիք խանութների քանակը, հետևաբար նաև՝ դրանց տեղը: Այդ երևույթը հետագայում դժվարություններ է առաջացնում նոր բացվող խանութների ապրանքային տեսականին ճշտորեն որոշելու, պահանջվող սարքավորումները ձեռք բերելու համար: Ի դեպ, մասամբ դրանով պետք է բացատրել, որ այսօր ինքնասպասարկման մեթոդով աշխա-



տող կոշիկի, տնտեսական ապրանքների շատ խանութներում անհրաժեշտ սարքավորումներ չլինելու պատճառով օգտագործում են նույնիսկ պարենային ապրանքների համար նախատեսված սարքավորումները: Պետք է նշել, որ Հայռեկլամի և սարքավորումների վարչության կոմբինատն առևտրական ցանցին անբավարար է օգնում ժամանակակից սարքավորումներով:

Առևտրի նյութա-տեխնիկական բազայի զարգացման հետ կապված, մեր կարծիքով, կարգավորման կարիք ունի նաև հետևյալը: Սահմանված կարգի համաձայն, բնակարանային շինարարության միջոցների 5 տոկոսի հաշվին կառուցվող նոր առևտրական շինությունները, շահագործման պետք է հանձնվեն առևտրի համար լրիվ պատրաստ վիճակում: Իսկ իրականում առևտրական կազմակերպություններն իրենց հերթին զգալի գումարներ են ծախսում կիսատ մնացած աշխատանքներն ավարտելու համար: Լրացուցիչ միջոցներ են պահանջվում նաև ինքնասպասարկման փոխադրվող խանութների վերակառուցման համար: Առևտրի հիմնական ֆոնդերի ամորտիզացիոն հատկացումներից վերակառուցման համար առանձնացվող միջոցները լրիվ չեն բավարարում եղած պահանջը: Այս դեպքում, առևտրական կազմակերպությունները ծախսերի մնացած մասը ստիպված ծածկում են ուրիշ աղբյուրների հաշվին, որի հետևանքով առաջանում է միջոցների ապամոբիլիզացում՝ վատացնելով նրանց ֆինանսական դրությունը: Դրա հետ միասին ձգձգվում է նոր օբյեկտների շահագործումը, ժամանակին չեն կատարվում ինքնասպասարկման նոր խանութների բացման առաջադրանքները: Ահա թե ինչու, անհրաժեշտ է ուժեղացնել վերահսկողությունը շինարարական կազմակերպությունների վրա՝ նրանց կողմից առևտրական օբյեկտները ժամանակին և լրիվ պատրաստ վիճակում շահագործման հանձնելու համար:

Սպասարկման առաջավոր մեթոդներն ենթադրում են ընդարձակ առևտրական դահլիճ, որպեսզի ցուցադրվեն բազմազան ապրանքներ և գնորդները կարողանան ազատ տեղաշարժվել խանութում: Երևանում կան ոչ պակաս թվով այդպիսի պարենային ապրանքների խանութներ (№№ 154, 184, 553, 556, «Ախթամար»), որոնցում լավ են կազմակերպված նաև աշխատանքները: Սակայն, զգալի են այսպես կոչված «գաճաճ» խանութները (№ 564, կահույքի և տնտեսական ապրանքների միավորման № 208 և այլն): Մեր կարծիքով, վաճառքի առաջավոր մեթոդների ներդրման հարցում չպետք է ցուցաբերել ավելորդ շտապողականություն և մասսայական ինքնասպասարկման անցնել նաև այնտեղ, որտեղ այդ նպատակահարմար չէ: Օրինակ, Երևանի առևտրի վարչության կահույքի և տնտեսական ապրանքների միավորման № 204 խանութը՝ «Հազար ու մի մանրուք» անվամբ, որն ունի ընդամենը 165 քմ տարածություն, 1971 թ. հունիսին անցավ ինքնասպասարկման: Ըստ էության, իրականում դա չնպաստեց սպասարկման լավացմանը: Այդ խանութում գնորդները մեծ հոսքի պայմաններում հերթեր են գոյանում ո՛չ միայն բաժին մտնելու համար, այլև՝ դրամարկղի մոտ: Նույն բաժնի համար հնարավոր չէ տեղադրել երկրորդ դրամարկղ: Բազմազան տեսականի ունեցող այդպիսի խանութները նպատակահարմար է տեղավորել առանձին կառուցված առևտրական շենքերում, որոնք կունենային ինքնասպասարկման բոլոր հնարավորությունները: Ցավոք, Երևանում հազվադեպ են կառուցվում նման շենքեր:

Վերջում ցանկանում ենք անել ևս մի քանի առաջարկություններ, որոնց

կենսագործումը կնպաստի ինքնասպասարկման խանութներում տեղ գտած թերությունների վերացմանը։

Խոշոր ինքնասպասարկման խանութներում վաճառվում են շատ ապրանքներ։ Դա պահանջում է լավ կազմակերպել տեղեկատու աշխատանքները։ Որպեսզի գնորդը կարողանա ծանոթանալ ինքնասպասարկման աշխատանքների առանձնահատկություններին և վաճառքում գտնվող ապրանքների տեսականուն, նպատակահարմար է խանութի մուտքի մոտ ունենալ տեղեկատու պլակատներ և հայտարարություններ, իսկ խանութի ներսում, կղզյակների վրա՝ ցուցանակներ՝ ապրանքների տեղը արագ գտնելու նպատակով։

Անհանդուրժելի է այն փաստը, որ որոշ դեպքերում ինքնասպասարկման անցնելուց հետո հատային ապրանքների մի մասը վաճառում են սպասարկման վաճառասեղանների միջոցով։

Ինքնասպասարկման խանութներում աչքի է զարնում կրկնակի վերահսկողությունը։ Շատ խանութներում գնորդների հսկողությունը կարծես թե դարձել է աշխատողների հիմնական պարտականությունը։ Անկասկած, գնումների ժամանակ պետք է վստահել գնորդներին, հակառակ դեպքում ինքնասպասարկումը կկորցնի իր դաստիարակչական նշանակությունը։ Անշուշտ, չպետք է աչքաթող անել նաև վերահսկողությունը, որն անհրաժեշտ է իրականացնել այնպես խելացի ու նրբորեն, որ գնորդն իր նկատմամբ չզգա որևէ կասկածանք աշխատողների կողմից։

Ինքնասպասարկումը խնայելու է գնորդների ժամանակը։ Դրան նպաստում է հաշվարկների միասնական հանգույցի կազմակերպումը, ըստ որի տարբեր բաժիններից գնված ապրանքների գումարը մուծվում է մեկ դրամարկղ։ Սակայն, պարենային ապրանքների №№ 188, 626 և այլ խանութներում անտեսված է այդ պահանջը։

Իհարկե, թերություններն ավելի քիչ կլինեին, եթե ՀՍՍՀ առևտրի մինիստրության և Երևանի առևտրի վարչության համապատասխան աշխատողները ժամանակին մասնագիտական օգնություն ցույց տային այդ խանութներին։ Իրականում, ինչպես նշվեց Երևանի կենտրոնական հանրախանութի կուսակցական հաշվետու-ընտրական վերջին ժողովում, այդ աշխատողները հազվադեպ են լինում հանրախանութում։

Աշխատանքի յուրաքանչյուր նոր ձև իր ուղին հարթում է շատ խոչընդոտների հաղթահարման միջոցով. այդպես է նաև վաճառքի առաջավոր մեթոդների արմատավորումը, որի վրա պետք է հատուկ ուշադրություն նվիրել։

Ռ. Ա. ՎԱՐԴԱՆՅԱՆ
ՀԿԿ Երևանի Շահումյանի ՇԿԿ Երֆաղկոմի հրահանգիչ
Ս. Հ. ԲՈՒԼԱՆԻԿՅԱՆ
Տնտեսական գիտությունների թեկնածու, դոցենտ



# Փիլիսոփայությունը և ԿՅԱՆՔԸ

## ԲԻՈԼՈԳԻԱԿԱՆԻ ԵՎ ՍՈՑԻԱԼԱԿԱՆԻ ԱՂԵՐՍԸ ՄԱՐԴՈՒ ԿՅԱՆՔՈՒՄ

Մարդու կյանքում բիոլոգիականի և սոցիալականի փոխհարաբերության դիալեկտիկա-մատերիալիստական ըմբռնման հիմնական սկզբունքները մշակել են մարքսիզմի կլասիկները, մանավանդ՝ Ֆ. Էնգելսն անտրոպոգենեզի աշխատանքային տեսության և մատերիայի շարժման ձևերի փոխհարաբերության էական հարցերը մշակելիս։ Սակայն մարդկության նյութական ու հոգևոր կյանքի զարգացումը հարուցում է սոցիալ-բիոլոգիական պրոբլեմի հետ առնչվող բազում հարցեր, որոնց ուսումնասիրությունն անհրաժեշտ է։

Ժամանակակից գիտա-տեխնիկական հեղափոխության դարաշրջանում, երբ, ըստ էության, որակապես փոխվում է մարդու աշխատանքի բնույթը, տեղի են ունենում շրջապատող միջավայրի արմատական և իրենց մասշտաբներով վիթխարի վերափոխումներ, բիոլոգիականի և սոցիալականի փոխհարաբերության պրոբլեմը հատուկ նշանակություն է ստանում։ Սոցիալական կյանքի հարաճուն տեմպը, ներգործելով մարդու բիոլոգիական ֆունկցիաների վրա, փոխում է նրա օրգանիզմի ռեակտիվությունը և էական փոփոխություններ առաջացնելով բնակչության հիվանդացության և մահացության վիճակում, հույժ կարևոր նշանակություն ստանում բժշկագիտության մեջ։

Մեր ժամանակներում հրատապ է նաև պատահականության մասնագիտական կողմնորոշման, ապագա աշխատավորների ձիրքի, ընդունակությունների ուսումնասիրության և գիտական սահմանման հարցը, որը հնարավոր է միայն մարդու մեջ բիոլոգիականի ու սոցիալականի հարաբերակցության ճիշտ ըմբռնմամբ։ Ինչպես ցույց տվեց նեյրոպաթոլոգների և հոգեբույժների համամիութենական գիտաժողովը՝ նվիրված ժառանգական, ներվային և հոգեկան հիվանդությունների գենետիկական հետազոտության մեթոդներին ու ախտորոշմանը, նման հետազոտություններ արդեն սկսվել են։ Բնականաբար մարդու պրոբլեմն ավելի ու ավելի մեծ տեղ է զբաղեցնում գիտական ուսումնասիրություններում, դառնում հասարակագիտության առանցքը։

Հոգևոր հարստությունն ու ֆիզիկական կատարելությունն իր մեջ ներդաշնակող մարդու զարգացման մարքսիստական գաղափարին բուրժուական աշխարհի ժամանակակից տեսական միտքը հակադրում է «իռացիոնալ փրեյդիզմը»։ Էկզիստենցիալիզմի լիդեր Հայդեգերի կարծիքով ոչ մի դարաշրջան այնքան քիչ բան չի իմացել մարդու մասին, որքան ժամանակակից դարաշրջանը. սակայն երբեք մարդն այնպիսի հետաքրքրության առարկա չի եղել, ինչպիսին մեր դարաշրջանում է (M. Haidegger, Kant uud des problem der Metaphysik, Fr (Main, 1934, S. 200)։

1963 թ. Մեքսիկայում տեղի ունեցած միջազգային փիլիսոփայական VIII կոնգրեսում, որտեղ կենտրոնական խնդիրը մարդը և դարաշրջանն էր, բուրժուական գիտնականների շատ ելույթներ կրում էին բացահայտ հոռետեսության կնիքը, շատ զեկուցումներում ընդգծվում էր մարդու՝ կործանման դատապարտված լինելու գաղափարը։ Ֆ. Լարոյն, օրինակ, ասում էր. «Ժամանակակից աշխարհում տեղի են ունենում անակնկալ ու նշանակալից փոփոխություններ բոլոր պլաններով... Լսվում են հոռետեսական ձայներ, իսկ հոռետեսությունը մարդկային այնպիսի տրամադրություն է, որ վկայում է վախի, երբեմն նաև տանջալից անհանգստության մասին։ Եվ, իրոք, պատմության

նրա զարգացման, ավելի ճիշտ՝ ներքինի և արտաքինի փոխազդեցության զարգացման պատմությամբ: Իսկ անհատի կառուցվածքի պատմությունը ներառնում է և՛ կենդանի էակների ողջ էվոլյուցիան, և՛ մարդկության, և՛, վերջապես՝ տվյալ անհատի անձնական պատմությունը:

Այսպիսով, մարդու զարգացման բոլոր շրջաններում արտաքին սոցիալական ու բնական պայմանների ներգործությունը բեկվում է ներքին պայմաններով, որոնք չի կարելի զուտ բիոլոգիական համարել: Մարդու կյանքի տարբեր էտապներում փոխվում են միայն ներքինի և արտաքինի, բիոլոգիականի ու սոցիալականի փոխհարաբերության բնույթը, դրանց դերն ու նշանակությունը:

Մեր կարծիքով բիոլոգիականի և սոցիալականի փոխհարաբերությունը մարդու մոտ տարբեր բնույթ ունի նրա կյանքի հետևյալ հիմնական շրջաններում. ծնվելուց մինչև երկրորդ ազդանշանային համակարգի ձևավորում, դրանից մինչև սեռական հասունացում, սեռական հասունություն և լիարժեք աշխատանքային-հասարակական գործունեություն, ծերություն: Մարդու վերաբերյալ գիտությունների կարևոր խնդիրներից մեկը պետք է լինի սոցիալ-բիոլոգիական օրինաչափությունների բնույթի բացահայտումը մարդու զարգացման այդ չորս բեկումնային շրջաններում:

Մարդու մեջ բիոլոգիականի և սոցիալականի փոխհարաբերության ճիշտ ըմբռնման համար մեթոդաբանական ուղեցույց է նաև Ֆ. Էնգելսի ուսմունքը մատերիայի շարժման ձևերի վերաբերյալ: Խոսելով շարժման տարբեր ձևերի փոխադարձ կապի և անցումների մասին և, մասնավորապես, բնութագրելով բիոլոգիայի հարաբերությունը քիմիայի և ֆիզիկայի նկատմամբ, Ֆ. Էնգելսը նշում է բիոլոգիայի առանձնահատկությունը. «Ֆիզիոլոգիան, հասկանալի է, կենդանի մարմնի ֆիզիկան է, և, առանձնապես քիմիան, բայց դրա հետ միասին այն դադարում է հատկապես քիմիա լինելուց. մի կողմից՝ նրա գործողության ոլորտը սահմանափակվում է, բայց, մյուս կողմից՝ այն, դրա հետ միասին, այստեղ բարձրանում է մի որոշ, ավելի բարձր աստիճանի» (**Բնության դիալեկտիկա**, Երևան, 1969, էջ 264): Վերլուծելով շարժման ձևերի փոխհարաբերության հարցը, Էնգելսը գրում է, որ որոշակի իմաստով ֆիզիկան մոլեկուլների մեխանիկա է, քիմիան՝ ատոմների ֆիզիկա, իսկ բիոլոգիան՝ սպիտակուցների քիմիա (տե՛ս նույն տեղը, էջ 259): Դրանով նա շեշտում է ինչպես անմիջական կառուցվածքային և գենետիկական կապի առկայությունը շարժման մեխանիկական, ֆիզիկական, քիմիական ու բիոլոգիական ձևերի միջև, այնպես և շարժման բիոլոգիական ձևի յուրահատկությունը՝ ֆիզիկականի, մանավանդ, քիմիականի համեմատությամբ: Մեր կողմից մեթոդաբանական կոպիտ սխալ կլիներ շարունակել էնգելսյան տրամաբանությունը և պնդել, թե սոցիոլոգիան էլ մարդկանց բիոլոգիա է: Դա կլինի անթույլատրելի էքստրապոլյացիա, որից հաճախ զգուշացրել է Էնգելսը:

Բանն այն է, որ բիոլոգիականի և սոցիալականի փոխհարաբերության բնույթն սկզբունքորեն տարբերվում է բիոլոգիականի և քիմիականի փոխհարաբերությունից: Այդ տարբերությունը, ամենից առաջ, այն է, որ շարժման բիոլոգիական ու սոցիալական ձևերի միջև սուբստանցիոնալ կապը բացակայում է՝ ի տարբերություն քիմիականի ու ֆիզիկականի հարաբերության, որոնք բիոլոգիականի մեջ միմյանց հետ կապված են անմիջականորեն, սուբստանցիոնալ-կառուցվածքային կապակցություններով: Բիոլոգիականն անմիջականորեն չի մտնում սոցիալականի կառուցվածքի մեջ, ի տարբերություն, օրինակ, քիմիականի, որը բիոլոգիականի մեջ մտնում է որպես նրա առարկայական բաղկացուցիչ տարր: Մարդու օրգանիզմում սոցիալական հատուկ սուբստրատ չկա: Մենք արդեն նշել ենք, որ սոցիալականն *անհատի շրջանակներում* վերաբերում է նրա գիտակցությանը, մտածողությանը և այլն, որոնք ունեն բիոլոգիական (ֆիզիոլոգիական) հիմքեր, սակայն չեն հանգում դրանց, որ անհատից, նրա օրգանիզմից դուրս սոցիալականը մարդկանց հասարակական (նյութական և հոգևոր) հարաբերությունների ամբողջությունն է, *օբյեկտիվորեն, մարդուց դուրս* գործող այն օրինաչափությունները, որոնք մարդկանց նյութական ու հոգևոր գործունեության արգասիք են:

Հասարակական համակարգի տարր հանդիսացող մարդ-անհատի օրգանիզմում տեղի ունեցող պրոցեսները բոլոր մակարդակներում ունեն բիոլոգիական բնույթ: Բոլորովին այլ բան է, որ մարդու էվոլյուցիոն զարգացման շնորհիվ դրանք ձեռք են բերել սոցիալական որոշակի ֆունկցիաներ (գիտակցություն) կրելու ունակություն, որով օժտված չեն ամենազարգացած կենդանիներն իսկ:

Այս բանն ընդունում են շատ հետազոտողներ, ինչպես և Գ. Ի. Ցարեգորոդցևը (տե՛ս Вопросы философии, 1970, № 11, стр. 83), որը, սակայն, հակասելով ինքն իրեն, ընդունում է նաև սոցիալական սուբստրատի առկայությունը մարդու օրգանիզմում. գտնելով, որ սոցիալականի ու բիոլոգիականի փոխհարաբե-



րությունը միակերպ չի արտահայտվում կենսապրոցեսների զարգացման տարբեր մակարդակներում, նա գրում է. «Պետք է նկատի ունենալ, որ կենսապրոցեսների (ֆիզիոլոգիական և պաթոլոգիական) զարգացման տարբեր մակարդակներում սոցիալականի ու բիոլոգիականի փոխհարաբերությունը դրսևորվում է տարբեր կերպ: Ուսումնասիրության ընթացքում, ամբողջական օրգանիզմային մակարդակից անցնելով համակարգայինին, համակարգայինից՝ օրգանայինին, սրանից՝ հյուսվածքայինին ու բջջայինին, վերջինից՝ ենթաբջջայինին ու բիոմոլեկուլյարին («վերից վար»), նկատվում է սոցիալականի և բիոլոգիականի փոխհարաբերության փոփոխություն, սոցիալականի որոշակի «մարում», բիոլոգիականի «աշխուժացում», ուժեղացում և հակառակը» (Г. А. Царегородцев. Проблема социального и биологического в медицине. М., 1965, стр. 46):

Հասկանալի է, որ կարող է «մարել» միայն եղածը, մինչդեռ մարդու *օրգանիզմում*, նույնիսկ բարձրագույն նյարդային գործունեության մակարդակում, սոցիալական սուբստրատ չկա, կան միայն սոցիալական ֆունկցիա իրականացնող (գիտակցություն, խոսք, աշխատանք և այլն) բիոլոգիական սուբստրատներ և դրանցով իրագործվող ֆիզիոլոգիական օրինաչափություններ:

Մեթոդաբանական կարևոր նշանակություն ունի նաև արտաքին միջավայրի հետ կենդանիների և մարդու փոխհարաբերության մեջ առկա տարբերության հաշվառումը: Այդ տարբերությունն այն է, որ բույսերն ու կենդանիները շրջապատող միջավայրին հարմարվում են բիոլոգիապես՝ օգտագործում են բնության պատրաստի ընձեռածը: Հենց այդ հիման վրա էլ ընթանում է կենդանի համակարգերի էվոլյուցիան: Փոփոխված պայմաններում ապրելու և զարգանալու համար կենդանու և բույսի օրգանիզմը միայն մի հնարավորություն ունի՝ ենթարկվել բիոլոգիական (ո՛չ միայն ֆենոտիպային, այլև գենոտիպային) մորֆոֆիզիոլոգիական վերափոխումների: Բիոլոգիապես չփոփոխվելու դեպքում կենդանու կամ բույսի օրգանիզմը կմահանա: Իհարկե, սկզբունքային տարբերություն կա արտաքին միջավայրի պայմաններին բույսերի և կենդանիների հարմարվելու միջև՝ պայմանավորված առաջինների անշարժությամբ և երկրորդների շարժողական ակտիվությամբ: Սակայն այստեղ այդ տարբերությունը չի հետաքրքրում մեզ, այլ այն, որ, ինչպես բույսերը, այնպես և բոլոր կենդանիները շրջապատի փոփոխվող պայմաններին կարող են հարմարվել միայն իրենց կառուցվածքն ու ֆունկցիաները փոփոխելով, մինչդեռ մարդը դրա կարիքը չունի: Միջավայրի պայմաններին նա հարմարվում է սոցիալականորեն, աշխատանքային գործունեությամբ վերափոխելով շրջապատը, հաճախ, նույնիսկ ստեղծելով իր գոյության միջավայրը, մարդը հարմարեցնում է այն իր բիոլոգիական ու սոցիալական պահանջմունքներին, առանց էականորեն փոփոխելու իր բիոլոգիական կառուցվածքն ու ֆունկցիաները:

Շրջապատող միջավայրին սոցիալապես հարմարվելու շնորհիվ, աշխատանքային գործունեությամբ (այն ժամանակից ի վեր, երբ նախամարդն սկսեց պատրաստել առաջին տարրական գործիքները) հիմնականում ավարտվել է մարդու բիոլոգիական էվոլյուցիան, նրա նկատմամբ դադարել է գործել բնական ընտրության օրենքը. մարդու զարգացման մեջ ավելի մեծ նշանակություն են ստացել սոցիալական գործոնները, ամենից առաջ՝ աշխատանքն ու դրա հետ կապված հարաբերությունները: Մարդաբանների մեծ մասի կարծիքով մարդն այլևս չի ենթարկվում գենոտիպա-տեսակային փոփոխության: Իր գլխավոր և էական կողմերով նա միշտ մնում է homo sapiens -ի շրջանակներում: Սակայն տեսակի շրջանակներում կարող են տեղի ունենալ և տեղի են ունենում նշանակալից ֆենոտիպային փոփոխություններ (հասակի, կրծքավանդակի շրջագծի, նորածինների միջին քաշի ու հասակի, մորֆոլոգիական փոփոխություններ ներքին օրգաններում և այլն), դրա վկայությունն է մեր դարի հետաքրքրական երևույթներից մեկը՝ աքսելերացիայի պրոցեսը: Ինչպես բնական, այնպես և սոցիալական գործոններն ազդում են մարդու, որպես տեսակի, ֆենոտիպային հատկությունների վրա, չկարողանալով նրան վերափոխել գենոտիպային առումով: Դրա պատճառն այն է, որ գոյության արհեստական պայմաններն ավելի ու ավելի մեծ չափով են մարդուն պատնեշում բնական ու սոցիալական միջավայրի անբարենպաստ գործոնների ներգործությունից: Մարդն ստեղծում է արհեստական պայմաններ կյանքի, աշխատանքի ու հանգստի համար: Առավել խոր ճանաչելով բնության ու սեփական զարգացման օրինաչափությունները՝ նա գիտակցորեն ձգտում է պահպանել իրեն որպես տեսակ, հարմարեցնելով պայմաններն իր սոցիալական պահանջմունքներին և օրգանիզմի բիոլոգիական հնարավորություններին:

Սակայն գիտա-տեխնիկական հեղափոխության մեր դարում մարդուն ոչ միշտ է հաջողվում իր մեջ ներդաշնակել բիոլոգիական ու սոցիալական զարգացումը: Մարդու իսկ ստեղծած գոյության արհեստական պայմանները ոչ

միշտ են անհիվանդագին, ուստի, սոցիալական գործոնները և՛ անցյալում, և՛, մանավանդ, ներկայումս, նշանակալից տեղ են գրավում ախտաբանության ժամանակակից վիճակում: Էնգելսը գրում էր. «Չհրապուրվենք, սակայն, բնության նկատմամբ մեր հաղթանակներով: Ամեն մի հաղթանակի համար նա մեզնից վրեժխնդիր է լինում: Այդ հաղթանակներից յուրաքանչյուրը, ճիշտ է, առաջին հերթին, տալիս է այն, ինչ մենք նկատի ունենք, սակայն երկրորդ և երրորդ հերթին լինում են և միանգամայն այլ, չնախատեսված հետևանքներ, որոնք շատ հաճախ ոչնչացնում են առաջինների նշանակությունը» **(Բնության դիալեկտիկա, էջ 178)**:

Ինչպիսի՞ չնախատեսված հետևանքներ են դրանք:

Մարդու կենսական ֆունկցիաների վրա ներգործող ամենակարևոր սոցիալական գործոնը աշխատանքն է: Աշխատանքն է կապկին մարդ դարձրել, այն էլ հենց նշանակալից ազդեցություն է ունենում (դրական կամ բացասական) մարդու օրգանիզմի ռեակտիվության վրա: Գիտա-տեխնիկական հեղափոխության սոցիալական հետևանքներից մեկն էլ մարդու աշխատանքի բնույթի էական փոփոխությունն է: Դա արտահայտվում է նրանով, որ մկանային աշխատանքին ավելի ու ավելի է փոխարինում մտավորը: Եթե առաջներում աշխատանքի գործիքները գործարկվում էին մարդու մկանային ուժի միջամտությամբ, ապա ժամանակակից սարքերն առավելապես ուժգնացնում են մարդու մտավոր կարողությունները: Արտադրության ավտոմատացումն ու կառավարման պրոցեսներն առավել չափերով ընդարձակում են մտավոր աշխատանքի ծավալը և մարդու կողմից նյարդահոգեկան էներգիայի ծախսումը ի հաշիվ մկանայինի, մեծանում է ուշադրության լարվածությունը: Ինչպես աշխատանքում, այնպես և կենցաղում մարդն ավելի ու ավելի նստակյաց է դառնում, որը խիստ բացասաբար է անդրադառնում մարդու կենսապրոցեսների բնականոն ընթացքի վրա: Այս բոլոր գործոնները միասին, բնականաբար, հանգեցնում են գերազանցապես մտավոր աշխատանքով զբաղվող մարդկանց այնպիսի հիվանդությունների տարածման, ինչպիսիք են՝ աթերոսկլերոզը, հիպերտոնիան, սրտամկանի ինֆարկտը, կրծքային հեղձուկը, մտավոր գերհոգնածությունը և այլն:

Գիտա-տեխնիկական հեղափոխությունն ուղեկցվում է ուրբանիզացմամբ, որը, դրական կողմերի հետ միասին, հանգեցնում է նաև մարդկանց շփման մեծացման ու դրանով պայմանավորված մի շարք վարակիչ հիվանդությունների տարածման: Ուրբանիզացման և արտադրության կոնվեյերացման հետևանքն են խոշոր քաղաքների մթնոլորտի և ջրամբարների ապականումը արդյունաբերական մնացուկներով, նյարդա-հոգեկան լարվածությունը՝ քաղաքային տրանսպորտով երկար տարածություններ կտրելուց և այլն:

Գիտա-տեխնիկական հեղափոխությունն ուղեկցվում է նոր սինթետիկ նյութերի ստեղծմամբ, որի ընթացքում առաջանում են նաև չնախատեսված նյութեր և, հաճախ, պատճառ դառնում պրոֆեսիոնալ հիվանդությունների:

Արտասահմանյան որոշ հեղինակներ (Է. Գյուան, Ա. Դյուսեր, Ռ. Դյուբո և ուրիշներ), այսպես կոչված՝ սոցիալական անհարմարվողականության իրենց տեսության մեջ վերոհիշյալ հիվանդությունների պատճառը համարում են օրավուր խորացող հակասությունը մարդու՝ էվոլյուցիոն զարգացման պրոցեսում ձևավորված բիոլոգիական հնարավորությունների և նրա սոցիալական պայմանների զարգացման հարաճուն տեմպի միջև: Նրանց կարծիքով, մարդու բիոլոգիական հնարավորությունները, հազարամյակներում ձևավորված կենսական ֆունկցիաները համեմատաբար կայուն և պահպանողական են, մինչդեռ, սոցիալական զարգացման տեմպերն ավելի ու ավելի են մեծանում և դառնում մարդու բիոլոգիական հնարավորություններին անհամապատասխան: Քաղաքակրթության զարգացումը, այդ հեղինակների կարծիքով, ստեղծում է աններդաշնակություն մարդու բիոլոգիական և սոցիալական զարգացման ռիթմերի միջև, որը և, այսպես կոչված՝ քաղաքակրթական հիվանդությունների պատճառն է:

Սոցիալական անհարմարվողականության այս տեսությունը, սակայն, պարունակելով որոշ ռացիոնալ հատիկ, մեթոդաբանական տեսակետից սնանկ է. այն հիմնված է մարդու մեջ սոցիալականի և բիոլոգիականի հարաբերակցության սխալ ըմբռնման՝ բիոլոգիականի դերի չափազանցման և մարդու սոցիալական էության անտեսման վրա: Մենք արդեն նշել ենք, որ, ի տարբերություն բոլոր կենդանիների, շրջապատող միջավայրին մարդը հարմարվում է ո՛չ թե բիոլոգիապես, այլ սոցիալականորեն, այսինքն՝ միջավայրի փոփոխվող պայմաններին մարդը հարմարվում է փոփոխելով ոչ թե իր բիոլոգիական կառուցվածքն ու ֆունկցիաները, այլ աշխատանքային գործունեությամբ վերափոխելով այդ պայմանները և դրանք համապատասխանեցնելով իր բիոլոգիական հնարավորություններին: Մարդու և կենդանիների այս սկզբունքային տարբերությունն է ահա, որ չեն հասկանում սոցիալական անհարմարվողականության տեսության կողմնակիցները: Այնուհետև, խոսելով «քաղաքակրթական հիվանդությունների» մասին, այդ տեսության ստեղծողները, «քաղաքակրթություն» վերացական հասկացության օգտագործմամբ փորձում են վերացնել վերջինիս դասակարգային բովանդակությունը, անտեսել ժամանակակից աշխարհում երկու՝ սոցիալիստական և բուրժուական քաղաքակրթությունների առկայությունը, որոնց ոլորտում արդի գիտա-տեխնիկական հեղափոխությունն առաջացնում է սոցիալական և առողջական սկզբունքային տարբեր հետևանքներ: Ամենայն խորությամբ քննելով սոցիալական անհարմարվողականության տեսությունը, ակներև է դառնում, որ այն, ըստ էության, միասնական ինդուստրիալ հասարակության հակամարքսիստական տեսության տարբերակներից մեկն է.

Այսպիսով, մարդու մեջ բիոլոգիականի և սոցիալականի փոխհարաբերությունը մարդու մասին գիտությունների կարևորագույն պրոբլեմներից է և գիտա-տեխնիկական հեղափոխության մեր դարում, հանդես գալով իբրև մեթոդաբանական յուրակերպ դոմինանտ, կանխորոշում է ո՛չ միայն ընդհանուր մոտեցումը մարդու վերաբերյալ ուսմունքի հիմնական պրոբլեմները լուծելիս, այլև սոցիալական, հոգեբանական, բժշկական և մարդաբանական առավել կոնկրետ հարցեր մեկնաբանելիս:

Ն. Գ. ԱՎԱԳՅԱՆ
Փիլիսոփայական գիտությունների թեկնածու



# ՀԱՂՈՐԴԱԿՑՈՒԹՅԱՆ ՄԻՋՈՑՆԵՐԻ ԴԵՐԸ ՄԵՐ ՕՐԵՐՈՒՄ

Մարդկության զարգացման և քաղաքակրթության վերելքի համար կարևոր դեր են խաղացել նաև հաղորդակցության, ինֆորմացիայի ստացման և պահպանման միջոցները: Սակայն, դեռևս, ինչպես հարկն է բացահայտված չէ ինֆորմացիայի դերը հասարակական կյանքում:

Մինչդեռ ակներև է, որ հաղորդակցման այնպիսի միջոցներ, ինչպես մամուլը, ռադիոն, հեռացույցը, սովետական հասարակության հոգևոր կյանքում բացառիկ կարևոր տեղ են գրավում և անընդհատ աճում է դրանց դերը կոմունիստական հասարակության կառուցման համար աշխատավորների մոբիլիզացման գործում:

Մարքսիզմի կլասիկները բազմիցս ընդգծել են հաղորդակցության միջոցների բացառիկ կարևորությունը և վիթխարի դերը մասսաների վրա գաղափարական ներգործության, մարքսիստական ուսմունքի պրոպագանդման, շահագործողական հասարակության դեմ ժողովրդական մասսաներին պայքարի հանելու և այլ ասպարեզներում:

Ավելի քան հարյուր տարի առաջ Մարքսն ու Էնգելսը գրում էին, որ, մամուլի օգնությամբ, «պրոլետարիատը, նախքան բարիկադների վրա և մարտադաշտերում կնվաճի իր ազատությունը, մի շարք ինտելեկտուալ հաղթանակներով ազդարարում է իր տիրապետությունն սկսվելու մասին» (К. Маркс и Ф. Энгельс, соч. т. 7, стр. 440): Վ. Ի. Լենինը մեծ ուշադրություն էր նվիրում մամուլի՝ որպես հաղորդակցման կարևոր միջոցի, հիմնական ֆունկցիաների մշակմանը: Հայտնի է, որ մեր կուսակցության կազմավորման տարիներին Վլադիմիր Իլյիչը հենց լրագրի մեջ էր տեսնում այն «փայտամածը, որով շրջապատում են կառուցվող շենքի կոնտուրները, դյուրացնում են առանձին կառուցողների հարաբերությունները, օգնում են նրանց աշխատանքը բաշխելու և դիտելու այն ընդհանուր արդյունքները, որ ձեռք են բերված կազմակերպված աշխատանքով» (Երկեր, հ. 5, էջ 23): Ահա ինչու մամուլը նա հռչակեց իբրև կոլեկտիվ ագիտատոր, պրոպագանդիստ և կազմակերպիչ):

Արդի գիտատեխնիկական հեղափոխությունը հաղորդակցության այնպիսի միջոցներ է ստեղծել, որ մարդկանց գիտակցության վրա ներգործելու, հասարակական կարծիքի և սոցիալական դիրքորոշման ձևավորման հնարավորությունն իրականանալի է դարձել նախկինում չտեսնված մասշտաբներով: ՍՄԿԿ XXIV համագումարում նշվեց, որ այդ պրոցեսների տեսական իմաստավորումը կարևորագույն խնդիր է ինչպես մարքսիստական և բուրժուական գաղափարախոսությունների միջև սրվող գաղափարական պայքարի արդի փուլի կենսական պահանջների, նույնպես և հաղորդակցության հարցում հեղափոխության հարուցած սոցիալական փոփոխությունների իմացության տեսակետից:

Հաղորդակցությունը որոշակի միջոցների օգնությամբ կենսագործվող ինֆորմացիայի փոխանակությունն է: Բոլոր հաղորդամիջոցները կարելի է ստորաբաժանել երկու հիմնական տեսակների՝ բնական, որոնց ծագումն ու զարգացումը պայմանավորված է բնական անհրաժեշտությամբ, և արհեստական միջոցների, որոնք ստեղծել է մարդը հասարակական պահանջմունքների ու նպատակների իրականացման համար: Ինֆորմացիայի արդյունավետ միջոցին՝ խոսքին, տիրապետելով է միայն սկսվում մարդկային հասարակությունը: Խոսքը՝ որպես հաղորդակցության յուրահատուկ մարդկային միջոց, կարող էր ծագել միայն աշխատանքային կոլեկտիվում, ուր այն աշխատավոր հասարակության անդամների վարքագծի համաձայնեցման ու կարգավորման անհրաժեշտ պայմանն է: Իր այդ ֆունկցիայով իսկ խոսքը ծագող գիտակցության գոյաձև է: «Սկզբում աշխատանքը, իսկ այնուհետև, դրա հետ մեկտեղ, մարդկային խոսքը հանդիսացան այն երկու գլխավոր խթանները, որոնց ազդեցությամբ կապկի ուղեղը աստիճանաբար դարձավ մարդկային ուղեղ» (Ф. Энгельс, Диалектика природы, Госполитиздат, 1953, стр. 135):

Հասարակության զարգացմանը համաքայլ զարգանում ու բարդանում են մարդկանց հաղորդամիջոցները: Փոխադարձ ուղղակի կապ կա հասարակական կազմակերպության զարգացման և հաղորդամիջոցների մակարդակների միջև. ընդ որում, չի կարող գոյություն ունենալ այնպիսի հասարակություն, որը կարողանար ընդհանրապես կառավարվել առանց այդպիսի միջոցների: Մարդաբանները դեռևս չեն հայտնաբերել այնպիսի մարդկային ցեղ, որը լեզու չիմանար. ասենք, անհնար է նույնիսկ նման բան ենթադրել, քանի որ մարդկանց հաղորդակցությունը մարդկային հասարակության գոյության անհրաժեշտ պայմանն է:

Մարդկանց հաղորդակցման, ինչպես և նյութական արտադրական գործունեությունը միջնորդավորվում է գործունեության հանրորեն մշակված միջոցներով: Այդպիսի կարևորագույն միջոցներից մեկն է լեզուն. այն ամենից առաջ, սոցիալական փոխներգործության, հասարակության անդամների վարքագծի համաձայնեցման ու կարգավորման գործիք է: Լեզվի մյուս բոլոր սոցիալական ֆունկցիաներն առաջանում են աշխատանքային գործողության հետ խոսքային հաղորդակցության սկզբնական ծագումնաբանական ամբողջականությունից: «Գաղափարների, պատկերացումների, ըմբռնումների նախնական դրսևորումներն անմիջականորեն ներհյուսված են մարդկանց նյութական գործունեության և նյութական շփումների մեջ» (Նույն տեղը):

Իր սոցիալական բոլոր ֆունկցիաները լեզուն կարող է կատարել հաղորդակցական ակտի իրականացման պայմանով միայն: Քանի որ ամեն մի հաղորդակցություն ինֆորմացիայի փոխանակություն է, ապա հաղորդակցության պրոցեսն իդեալականորեն կարելի է պատկերացնել որպես մի մոդել, որի բաղկացուցիչ մասերն են՝ ինֆորմացիայի առաքիչը, հաղորդվող բուն ինֆորմացիան և ինֆորմացիա ընկալողը: Հաղորդակցական ակտի ամեն մի իրականացում նշանակում է, որ հաղորդված ինֆորմացիան ներգործել է ընդունողի գիտակցության վրա:

Արդի, տեխնիկապես զարգացած հասարակության մեջ հաղորդման գերակշռող ձևը (որպես սոցիալական վարքագծի կառավարման, կուլտուրայի հաղորդման տիպ) ունկնդիրների վրա ներգործելու մասսայական հաղորդակցության—կենտրոնացված համակարգն է, որ կենսագործվում է մասսայական հաղորդակցության միջոցներով (մամուլ, ռադիո, կինո, հեռուստատեսություն):

Հաղորդակցության պրոցեսը մարդկության ուշադրությունը գրավել է դեռևս անտիկ ժամանակներից, քանի որ հենց այդ ժամանակներում զգացվել է սոցիալական խնդիրների լուծման համար ինֆորմացիայի հաղորդման առավել արդյունավետ եղանակներ գտնելու անհրաժեշտությունը: Այդ պահանջմունքի բավարարման բավական հաջող փորձ էր հռետորական արվեստի ծագումն ու զարգացումը: Սակայն հաղորդակցությունը գիտական հետազոտության առարկա դարձավ համեմատաբար վերջերս. դրա տարբեր կողմերն ուսումնասիրում և համակարգում են մարդաբանությունը, լեզվաբանությունը, պսիխոլեզվաբանությունը, սոցիալական հոգեբանությունը, ժուռնալիստիկայի տեսությունը, քաղաքական գիտությունները:

Մասսայական հաղորդամիջոցներն ուսումնասիրող բուրժուական գիտությանը բնորոշ է, մի կողմից՝ նկարագրական էմպիրիզմը, մյուս կողմից՝ վերացական-մտահայեցողական տեսաբանումը:

Արդի կապիտալիստական երկրներում ինֆորմացիայի շրջապտույտի էմպիրիկ հետազոտություններ են կատարվում հիմնականում հայտնի սոցիոլոգ և պրոպագանդայի խոշոր տեսաբան Գ. Լասվելի սխեմայով: 40-ական թվականների վերջին հաղորդակցության ակտի մոդելը (որ ընդհանուր գծերով նկարագրել է դեռ Արիստոտելն իր ՃԱՐՏԱՍԱՆՈՒԹՅՈՒՆ երկում) նա դիտում է որպես պրոպագանդայի արդյունավետության ուսումնասիրման համար միջոց: Այդպիսի ուսումնասիրությունը, Լասվելի կարծիքով, պետք է կատարվի հետևյալ սխեմայով—ո՛վ է հաղորդում, հատկապես ի՛նչ, ո՛ր ուղիով, ո՛ւմ և ինչպիսի՛ արդյունավետությամբ:

Հենվելով հաղորդակցման ակտի (երբեմն ձևափոխված) այդ մոդելի վրա, բուրժուական սոցիոլոգներն ու սոցիալական հոգեբանները մշակում են էմպիրիկ մեթոդներ ու եղանակներ՝ տիրապետող դասակարգերի օգտին մասսաների վրա արդյունավետ ներգործելու, հասարակական գիտակցությունը ցանկալի փոփոխությունների ենթարկելու նպատակով: Այդպիսի հետազոտությունների հիմքում ընկած է բանականության բիհեվիորիստական տեսությունը. ըստ այդ տեսության, բավական է, որ հաղորդողն ազդակի դեր խաղացող հաղորդումն ինչպես հարկն է վերակառուցի և ունկնդիրների շրջանում կհարուցի անհրաժեշտ

ազդեցություն: Ենթադրվում է, որ ինֆորմացիայի այդպիսի ձևափոխությամբ կհաջողվի ինչպես հարկն է վերահսկել մարդկանց գիտակցությունն ու վարքագիծը:

Չնայած այդ մեթոդոլոգիայի արատավորությանը, ըստ որի մարդը չի դիտվում որպես հասարակական հարաբերությունների արդյունք, «բուրժուազիայի սոցիալական պատվերն» անմիջականորեն կատարող նման էմպիրիկ հետազոտությունները ֆինանսավորվում են կապիտալիստական երկրների կառավարող դասակարգերի կողմից: Միայն ԱՄՆ-ում ներկայումս գոյություն ունի մասսայական հաղորդակցության և պրոպագանդայի ավելի քան 50 կենտրոն[1], բացի սոցիոլոգիական և սոցիալ-հոգեբանական մյուս լաբորատորիաներից, ուր մշակվում են այնպիսի մեթոդներ, ինչպիսիք են՝ «համոզող հաղորդակցությունը», «կարծիքների ու մարդկանց դիրքորոշումների փոփոխումը», «բովանդակային վերլուծությունը» (վերջինս, հաղորդողի մտադրությունները հայտաբերելու նպատակով, մեկնաբանում է հաղորդվող տեղեկությունների բովանդակությունը):

Հասարակական կյանքում հաղորդամիջոցների նշանակությանը նվիրված, «պատմության նոր փիլիսոփայության» դեր հավակնող վերացական-մտահայեցողական վերջին տեսություններից մեկն էլ կանադական Մարշալ Մակլյուենի տեսությունն է: Կեղծելով հասարակական-տնտեսական կարգերի օրինաչափական հերթափոխության պատմական պրոցեսի մարքսիստական տեսությունը՝ մարդկության զարգացումը նա կապում է հաղորդամիջոցների զարգացման հիմնական փուլերի հետ:

Պնդելով, թե պատմության իրական շարժիչ ուժը ոչ թե մարդիկ, այլ հաղորդամիջոցների տեխնիկական կատարելագործումն է, Մակլյուենը, որպես «տեխնոլոգիական դետերմինիզմի» բուրժուական փիլիսոփայական դպրոցի տիպիկ ներկայացուցիչ, փորձում է թաքցնել այդ միջոցների ֆունկցիոնալ դերը, այսինքն՝ այն, որ դասակարգային հասարակության մեջ հաղորդամիջոցները միշտ օգտագործվում են դասակարգային նպատակներով:

Առավել օբյեկտիվ բուրժուական սոցիոլոգները (Պ. Լազարսֆելդը և Ռ. Մերտոնը) ստիպված են խոստովանել, որ կապիտալիստական հասարակությունում մասսայական հաղորդամիջոցները կատարում են սահմանափակող պահպանման և, ըստ էության, ճնշման ֆունկցիաներ, որ դրանց նպատակն է պահպանել «սոցիալական ու տնտեսական ստատուս-քվոն»: Այլ կերպ ասած՝ ժամանակակից կապիտալիստական հասարակությունում մասսայական հաղորդամիջոցներն օգտագործվում են շահագործող փոքրամասնության շահերի պրոպագանդման, մարդու մեջ քննադատող միտքը ճնշելու, նրան վարքի նեղ ստերեոտիպեր պարտադրելու նպատակով:

Սոցիալիստական հասարակությունում մասսայական հաղորդամիջոցները պատկանում են ժողովրդին: Այստեղից էլ՝ նրանց դեմոկրատական զարգացման հնարավորությունը, ինչպես և նոր ֆունկցիաները—միլիոնների մասնակցությամբ հասարակական պրոբլեմների լայն քննարկում, սոցիալիստական հոգևոր մշակույթի պրոպագանդա, կոմունիստական հասարակության կառուցման համար մղվող պայքարում աշխատավորների մոբիլիզացիա, ներդաշնակորեն զարգացած անհատի դաստիարակում:

Մարքսիզմը ոչ թե ժխտում, այլ գիտականորեն բացատրում է հաղորդամիջոցների կարևոր դերը, ցույց տալով, որ սոցիալական ու հասարակական-քաղաքական փոփոխությունները սոսկ տեխնիկական պրոգրեսից բխեցնելու ամեն մի փորձ ո՛չ միայն փիլիսոփայորեն սխալ է, այլև գաղափարապես հետադիմական: Տեխնիկայի կատարելագործումից բխող սոցիալական ամեն մի փոփոխություն միշտ ընդգրկված է լինում այնպիսի բազմակողմանի կապերի ու հարաբերությունների սիստեմում, ուր, վերջին հաշվով, որոշիչ դեր են խաղում մարդկանց նյութական արտադրահարաբերությունները: Այդ հարաբերություններն այն հիմքն են, որոնք կրում են գիտատեխնիկական հեղափոխությունից բխող սոցիալական փոփոխությունները, իսկ դրանց բնույթը պայմանավորված է հենց այդ հարաբերությունների էությամբ: Միայն այդ կերպ կարելի է բացատրել այն հանգամանքը, որ միանման տեխնիկական նվաճումները տարբեր հասարակարգ ունեցող երկրներում հանգեցնում են միանգամայն հակադիր սոցիալական հետևանքների:

Կապիտալիզմի պայմաններում կապի միջոցների մեջ կատարված ոչ մի հեղաշրջում չի կարող հասցնել ընդհանուր միասնության և հաղթահարել մարդկանց օտարումը միմյանցից՝ քանի դեռ լուծված չէ մարդկանց աշխատանքային գործունեության հակասությունը, ըստ էության, հասարակական բնույթի և այդ գործունեության արգասիքների յուրացման մասնավոր ձևի միջև, այսինքն՝ ոչնչացված չէ կապիտալիզմը: Ընդ որում, մասսայական հաղորդամիջոցների դերն այն է, որ թեև դրանք ինքնին չեն կարող լուծել կապիտալիզմի հիմնական հակասությունը, բայց և այնպես կա-

[1] Стратегия лжи. «Мысль», М., 1967, стр. 44—91.



րող են արագացնել կամ դանդաղեցնել այդ հակասության լուծումը:

Ժամանակակից կապիտալիստական երկրներում աստղաբաշխական չափերի հասնող գումարներ են ծախսվում ինֆորմացիայի միջոցով զանազան մեքենայությունների արդյունավետ միջոցների որոնման համար՝ մարդկանց գիտակցության ու վարքի քիչ թե շատ հուսալի վերահսկողություն սահմանելու նպատակով: Այս փաստը ցույց է տալիս, որ բուրժուազիան մասսայական հաղորդամիջոցները դիտում է որպես պատմության անողոք օրենքներից փրկվելու միջոց: Բայց այդ փաստը միաժամանակ վկայությունն է այն խոր ճգնաժամի, որ բնորոշ է կապիտալիզմի արդի փուլին. որքան ավելի զառամյալ է դառնում հասարակական սիստեմը, այնքան ավելի է այն ջանում կազմակերպել կեղծիքի «ֆաբրիկաներ» ու «ինդուստրիաներ», այնքան ավելի առատաձեռն են ֆինանսավորվում հասարակական գիտակցության մշակման նպատակով կատարվող հետազոտությունները: Այդ առթիվ տեղին է հիշել ամերիկյան հայտնի ասացվածքը. Կարելի է երկար ժամանակ խաբել մի մարդու, կարելի է մի որոշ ժամանակ խաբել շատ մարդկանց, բայց անհնար է, նույնիսկ ամենամշակված սոցիալ-հոգեբանական տեխնիկա օգտագործելով, անընդհատ խաբել բոլոր մարդկանց:

Բայց և այնպես չի կարելի թերագնահատել ժամանակակից հակակոմունիստական պրոպագանդայի ասպարեզում տեղի ունեցող պրոցեսները, այդ պրոպագանդայի ձգտումը՝ մասսայական հաղորդամիջոցների օգնությամբ գտնելու մարդկանց մտածողության վրա ազդելու ավելի ու ավելի ճկուն մեթոդներ: Կյանքն ինքն է սովետական գիտությանն առաջադրում մասսայական հաղորդակցության կառուցվածքի, օրինաչափությունների ու միջոցների գործադրման արդյունավետության կոմպլեքսային ուսումնասիրության անհրաժեշտությունը: Այդ խնդրի լուծումն առավել անհրաժեշտ է, քանի որ հաղորդակցության տեխնիկական միջոցների ոլորտում կատարվող փոփոխություններն ամենևին ավարտված չեն:

Ըստ նորագույն կանխատեսումների, արդեն հաջորդ տասնամյակի առաջին կեսին հնարավոր կդառնան աշխարհի ցանկացած հեռացուցային ծրագրի ազատ ընդունումը և դրա ավտոմատ գրառումը դիտամագնիտոֆոնի վրա: Ամեն մի երկիր կկարողանա ընդունել ցանկացած պետության հաղորդման ծրագրերը: Դա նշանակում է, որ գաղափարական պայքարի զենք կդառնան ինֆորմացիայի նոր տեխնիկական միջոցները, որի համար կպահանջվեն հաղորդումների կազմակերպման առանձնահատուկ սկզբունքներ: Այդ միջոցների կիրառման արդյունավետությունը, առաջին հերթին, կպայմանավորվի հաղորդվող ինֆորմացիայի բովանդակությամբ, ապա՝ հաղորդվող նյութի կազմակերպման եղանակով: Չէ՛ որ նույնիսկ օբյեկտիվ ինֆորմացիան, որ հաղորդվում է բազմակողմանի զարգացած անհատի դաստիարակման մարդասիրական նպատակներով, ցանկալի արդյունքի չի հանգեցնի, եթե հաշվի չառնվեն ունկնդիրների շահերը, ինֆորմացիան ընկալելու ունակությունը և այլ գործոններ. վերջապես, կարևոր է նաև հաշվի առնել բուն հաղորդամիջոցի բնույթը, քանի որ տարբեր հաղորդամիջոցներ ունեն մարդկանց զգացմունքների ու հույզերի վրա ազդելու տարբեր հատկություններ:

Ակնհայտ է, որ այդ պրոբլեմները հաջողությամբ կարող են լուծվել գիտականորեն և ոչ թե ինտուիցիայով ու «ողջամտությամբ»: Մեր երկրում արդեն ուսումնասիրվում, բացահայտվում են ունկնդիրների որոշակի հակումներն ու շահագրգռությունները, տարբեր գործոնների ազդեցությամբ ստացվող արդյունքների կանխումը, ունկնդիրների հետ հաղորդակցության աղբյուրի փոխազդեցության օրինաչափությունները՝ կապված հաղորդվող ինֆորմացիայի բնույթի հետ, հասարակական կարծիքի կազմավորումը[1]: Չնայած այդ հետազոտությունները դեռ չեն հասել լայն գիտական ընդհանրացումների, այնուամենայնիվ, փորձնական տվյալների կուտակման բուն փաստը կհանդիսանա այն անհրաժեշտ նախադրյալը, որի հիման վրա ապագայում կկառուցվեն որոշակի բացատրական ուժ ունեցող սոցիոլոգիական տեսություններ:

Այդ առումով պատմական մատերիալիզմը հանդես կգա որպես առավելապես բարձր մակարդակի ընդհանրացումներ անող տեսություն, հասարակական զարգացման փիլիսոփայություն, որը դրա շնորհիվ ընդհանուր մեթոդոլոգիական հիմք կհանդիսանա մյուս բոլոր սոցիոլոգիական տեսությունների համար: Դա վերաբերում է ինչպես մասսաների գիտակցության վրա արդյունավետ ազդեցության նպատակով՝ ինֆորմացիայի կառավարման տեսություններին, նույնպես և այն տեսություններին, որոնք հետազոտում են հաղորդամիջոցների օրինաչափություններն ու էվոլյու-

[1] *Այդ հետազոտությունները կատարվում են ՍՍՀՄ ԳԱ առընթեր կոնկրետ սոցիալական հետազոտությունների ինստիտուտում, ԳԱ Տարտուի, Նովոսիբիրսկի հասարակական համալսարաններին կից սոցիոլոգիական լաբորատորիաներում և գիտական այլ կենտրոններում:*

ցիան և դրանով պայմանավորված՝ սոցիալական փոփոխությունները:

Հաղորդամիջոցների էվոլյուցիայի հիմնական օրինաչափությունը ենթարկվում է տեխնիկայի զարգացման պատմության մեջ առկա ընդհանուր օրինաչափությանը (Մարքսի կողմից հայտնագործված). մարդու «բնական արտադրագործիքները» արհեստականով փոխարինելը, դա «մարդկային ուժը, բնության ուժերով» փոխարինելն է (տե՛ս **К. Маркс и Ф. Энгельс, соч., т. 23, стр. 387—397**): Յուրաքանչյուր նոր, պատմականորեն առաջացած հաղորդամիջոց «ընդլայնում», «շարունակում» և «ուժեղացնում» է ինֆորմացիա ընկալող մարդկային բնական օրգանների գործողությունն այնպես, ինչպես աշխատանքի յուրաքանչյուր նոր միջոց մարդու բնական արտադրող օրգանների շարունակությունն է: Ամեն մի նոր, պատմականորեն առաջացած հաղորդամիջոց հաղթահարում է տարածաժամանակային սահմանափակությունը, որ հատուկ էր ինֆորմացիայի հաղորդման նախորդ եղանակին: Այսպես, մինչև գրի առաջացումը մարդկանց միջև ինֆորմացիայի փոխանակումը կարող էր կատարվել միայն զգայական օրգանների կողմից անմիջականորեն ընկալվող տարածա-ժամանակային շրջապատում, հաղորդողի և ընդունողի առկայության դեպքում: Գիրն իր առավել զարգացած ձևերում «պատռում է» բացառապես բանավոր հաղորդակցության սկզբնական տարածա-ժամանակային տեղափակվածությունը և, դրա շնորհիվ, մարդկանց (նույնիսկ հարյուրամյակներով իրարից բաժանված մարդկանց) կրկին միավորում է հաղորդակցության պրոցեսում: Գիրը, որ առաջացել էր կուտակված ինֆորմացիան ավելի հուսալի պահպանելու և հաղորդելու՝ արտադրության զարգացող պահանջմունքից, նշանակալի չափով ընդլայնում է մարդկանց անհատական ու կոլեկտիվ փորձի ոլորտը, օժանդակում սոցիալական կազմակերպության ձևավորմանը, «հետադարձ» ազդեցություն թողնում արտադրապրոցեսի վրա՝ նշանակալիորեն արագացնելով նրա առաջընթացը, հարուցելով ինֆորմացիայի շրջանառության հետագա արագացման և ավելացման պահանջ:

Տպագրությունը պայմանավորեց ինֆորմացիայի հետագա զարգացումը, նպաստեց անձի ներաշխարհի հարստացմանն ու ձևավորմանը, մարդկանց մտածողության ու վարքագծի նորմերի, կանոնների ունիֆիկացմանն ու ստանդարտավորմանը: Այն ո՛չ միայն փոխեց ինֆորմացիայի հաղորդման նպատակները, մեխանիզմներն ու հնարավորությունները, այլև նպաստեց հասարակական կյանքի բոլոր ոլորտներում նոր պահանջմունքների ձևավորմանը:

Անհրաժեշտ է պատշաճ ուշադրություն նվիրել հաղորդամիջոցների ներքին տրամաբանության զարգացման (սկսած բացառապես «բանավոր» հաղորդակցության ժամանակաշրջանից մինչև գրավորը, այնուհետև մինչև տպագրական արդի «մասսայական» միջոցները), հասարակության կյանքում ինֆորմացիայի դերի, վերջինիս զարգացման հետ կապված պրոբլեմների ուսումնասիրությանը: Պատմական մատերիալիզմի մեթոդաբանական հիման վրա կատարված նման հետազոտությունները ունեն ո՛չ միայն տեսական արժեք, այլև կարևոր գործնական նշանակություն, կապված կոմունիստական շինարարության ժամանակակից խնդիրների լուծման հետ:

Հ. Պ. ԳՐԻԳՈՐՅԱՆ



# ԿՐՈ՞ՆԸ ՓԱԿՈՒՂՈՒՑ ԵԼՔ Է ՈՐՈՆՈՒՄ

*Այսօր կրոնական գաղափարախոսությունը կանգնած է լուրջ փակուղու առաջ: Գիտության և տեխնիկայի խոշոր հայտնագործությունները, աշխարհում կատարվող քաղաքական-տնտեսական ու սոցիալական վիթխարի տեղաշարժերը հիմքից խարխլում են կրոնական դոգմաները, նրա գաղափարախոսներին ստիպում գունազարդվել և հարմարվել նոր պայմաններին: Տակավին Կ. Մարքսն է գրել, որ «Հնացածը ջանք է գործ դնում վերականգնվելու և կայունանալու նոր առաջացած ձևերի շրջանակներում» (Կ. Մարքս, Ֆ. Էնգելս, Ընտ. Երկեր, հ. 2, էջ 599):*

*Հայտնի է, որ կրոնական գաղափարախոսության էական գծերն ու դոգմաները գոյություն ունեն շատ վաղուց: Շուրջ երկու հազար տարվա պատմություն ունի քրիստոնեությունը. հին են նաև մյուս կրոնները:*

*Անցած ժամանակաշրջանում կրոնական պրոպագանդան մասնակի փոփոխություններ է կրել, սակայն նրա հիմնական դոգմաները մնացել են անսասան: Ինչպե՞ս հարմարեցնել կրոնը մեր դարի պահանջներին, ինչպե՞ս նոր արյուն ներարկել նրա տկարացած երակներում. սա է նրա սպասավորներին մտատանջող հիմնական հոգսը:*

*Գիտության ու կրոնի առջև ծառացած են հասարակության զարգացման օրենքների լուսաբանման, մարդու կոնցեպցիայի, նրա կոչման, մարդկանց սոցիալական ու բարոյական իդեալների արդի հարցերը: Մի կողմից հավատացյալները տեսնում են մեր հասարակության սոցիալական հսկայական բարեփոխությունները, կոմունիստական հասարակության հումանիստական բնույթը, նրա բարոյական նորմերի մաքրությունն ու վեհությունը, մյուս կողմից՝ շարունակում են հավատալ աստծուն, անդրշիրիմյան կյանքին, բարոյականության օրենքների աստվածային ծագմանը:*

*Այստեղից ակնհայտ է կրոնական և գիտական աշխարհայացքների անհամատեղելիությունը: Ինչպե՞ս է կյանքում հաղթահարվում այդ հակասությունը: Մի կողմից կուսակցության գաղափարական համառ գործունեության շնորհիվ շատ հավատացյալներ կտրվում են կրոնից և կանգնում գիտական-աթեիստական դիրքերի վրա (զարգացման այս տենդենցը օրինաչափորեն կհասցնի գիտական-աթեիստական աշխարհայացքի լրիվ հաղթանակին), մյուս կողմից՝ հավատացյալների մյուս մասը կրոնի սպասավորների քարոզների ազդեցության տակ կոմունիզմի գաղափարներն ու պրակտիկան ընկալում է «Սուրբ գրքի» տեսանկյունով:*

Բնորոշն ու էականն այժմ այն է, որ ՍՍՀՄ-ում կրոնական կազմակերպությունների մեծ մասը սովետական իշխանության նկատմամբ լոյալ դիրքերում է։ Սակայն, չպետք է մոռանալ և այն իրողությունը, որ ներկայումս իր խարխլվող հեղինակությունն ամրապնդելու միտումով կրոնը փորձում է մերձեցման կետեր շոշափել կրոնական գաղափարախոսության և գիտական կոմունիզմի միջև։ Քրիստոնեության և կոմունիզմի համագործակցության մասին շատ է խոսում Քրիստոնեական մոտեցում դեպի կոմունիզմը գրքի հեղինակ Տիրան Ներսոյանը, որի կարծիքով, ավելի վեհ, արդար գաղափարներ կրող ուսմունք՝ կոչված է դառնալու «կոմունիզմի ապագա կրոնը»։ Տ. Ներսոյանը ջանում է հաշտեցնել անհաշտելին՝ կրոնական հակագիտական գաղափարախոսությունը գիտական գաղափարախոսության հետ։ Սակայն նա միաժամանակ զգուշացնում է, որ կրոնի և կոմունիզմի հաշտությունը չպետք է փոփոխի քրիստոնեության էությունը։

Կրոնի և կոմունիստական գաղափարախոսության հաշտեցման, երկրորդն առաջինի մեջ տարրալուծելու նրբին փորձ է կատարում մի այլ հայ աստվածաբան՝ Ա. Սաղպազարյանը։ Ընդունելով, որ մարքսիզմն ունի մարդասիրական նպատակներ և արդի աշխարհում մեծ է նրա ազդեցությունը, նա գտնում է, որ կոմունիզմն իր «նպատակների մեջ գոյատևելու և լավագույնը շարունակելու համար» պետք է ապավինեն կրոնին, քանի որ առանց նրա «համայնավարները իրենց հետևորդները հետզհետե պետք է ունենան ինքնատիպ ճորտատիրություն մը, որը թեև հնի պես չէ, բայց հնե նուազ վնասակար բան մը պիտի չըլայ մարդկության համար» (Ա. Սաղպազարյան Ճշմարտության ուղին, Հալեպ, 1964, էջ 120)։

Չկարողանալով ժխտել սոցիալիզմի օրոք անհատի և հասարակության նոր փոխհարաբերությունների անառարկելի առավելությունները, Ա. Սաղպազարյանը էքսկուրս է կատարում դեպի հեռավոր ապագան, գովաբանում Մարքսի և Լենինի հումանիզմը, պնդելով, թե առանց կրոնի, հավատքի, աստծո, միևնույն է, ամեն ինչ դատապարտված է անհաջողության։ Նա գրում է՝ ո՞րն է ելքը, ինչպե՞ս «փրկել» մարքսիզմի գաղափարախոսությունը։ Դրա ճանապարհը հավատքն է, կրոնի և աստծո ճանաչումը։ Եթե մարքսիզմը կըձուլվի կրոնի մեջ, այն կհաղթանակի, եթե ոչ, դատապարտված է կործանման. այս է հեղինակի անհարիր եզրակացությունը։

Կրոնի և գիտական կոմունիզմի հաշտեցման փորձերը միայն հայ առաքելական եկեղեցու որոշ գաղափարախոսների մենաշնորհը չէ։ Այդպիսի ջանքերով հանդես են գալիս կրոնական մյուս կազմակերպությունների ներկայացուցիչները ևս։ Նրանցից մեկն իր ուշադրությունը բևեռում է մարքսիզմի սոցիալական կողմի և կրոնի «նույնատիպ» սկզբունքների միջև շփման կետերի որոնման վրա, սակայն բոլորի նպատակը մեկ է՝ երկարաձգել եկեղեցու և նրա գաղափարախոսության գոյությունը, թեկուզ և հակառակորդ, բայց այնուամենայնիվ մարդկանց հրապուրող գաղափարախոսությամբ ամրացնել կրոնական աշխարհզգացման դոգմաները։ Ուղղափառ եկեղեցու քարոզիչներն ասում են՝ «Քրիստոսը սովորեցրել է երկրի վրա կյանքը կառուցել այնպես, որ չլինեն ոչ աղքատներ և ոչ հարուստներ, որպեսզի բոլոր մարդիկ միաբանվեն եղբայրական սիրով և ապրեն առատության մեջ։ ՍՄԿԿ ծրագիրը միանգամայն համապատասխանում է այդ ուսմունքի ոգուն»։

«Հենց Քրիստոսն է հռչակել մարդկության համար նոր օրենք... եղբայ-



րության օրենքը,— գրում են բապտիստներն իրենց «Братский вестник» ամսագրում։ Մուսուլմանական հոգևորականությունը հայտարարում է, թե «Մուհամեդի գաղափարներն ու ձգտումները մարմնավորված են կենդանի պրակտիկ կոմունիզմի մեջ»։

Ժամանակակից կրոնական քարոզներում նման արտահայտությունները շոշափում են միայն հարցի արտաքին կողմը։ Կոմունիզմը և կրոնը գաղափարական անհաշտելի հակառակորդներ են։ Միշտ պետք է հիշել Մարքսի այն արտահայտությունը, որ «Եթե Աստվածաշնչից աննշան տեղեր անգամ կարող են մեկնաբանվել հօգուտ կոմունիզմի, սակայն նրա ուսմունքի ողջ ոգին միանգամայն թշնամական է նրա նկատմամբ, ինչպես և ամեն մի բանական ձեռնարկման» (К. Маркс, Ф. Энгельс, Соч., т. I, стр. 532)։

Ժամանակակից աշխարհը վկա է կոմունիստական և բուրժուական գաղափարախոսությունների անհաշտ պայքարին։ Մեզանում կրոնական գաղափարախոսությունը հանդես է գալիս որպես գիտական աշխարհայացքի համոզված հակառակորդը։ Պատահական չէ, որ այս պայքարում իմպերիալիզմի ջատագովները օգտագործում են կրոնը, նրա դոգմաները՝ սոցիալիզմի երկրների աշխատավորների շրջանում մարդկային բանականության վեհության նկատմամբ անվստահություն սերմանելու, մարդկանց ինդիվիդուալիզմի ու էգոիզմի հաշիշով արբեցնելու համար։

Կոմունիզմի դեմ մղվող պայքարում բուրժուազիան ճգնում է հիմնավորել այն գաղափարը, թե կրոնը բուն ազատության և հումանիզմի ուղն ու ծուծն է, որը սոցիալիստական և բուրժուական աշխարհների միջև ծավալված պայքարը անհավատների և աստծո բանակի զինվորների կռիվն է, որին պետք է ապավինեն «ազատ աշխարհի» մարդիկ, սոցիալիստական երկրների հավատացյալները։ Փորձելով ապացուցել, որ մարդկային անհատն ի բնե կրոնական, միստիկական բնույթ ունի, բուրժուական գաղափարախոսներից շատերը պնդում են, թե աթեիստական հասարակության ստեղծման ծրագիրն անհուսալի ուտոպիա է, որը դատապարտված է ձախողման։ Այս կապակցությամբ ոմն Գ. Վեգենլեններ հայտարարում է՝ «Ամենից առաջ նրանց (կոմունիստներին— Մ. Հ.) անհրաժեշտ է թվում աստծո նկատմամբ հավատքը փոխարինելու կոմունիստական գաղափարների նկատմամբ հավատքով։ Բայց հարցրե՞լ են արդյոք նրանք իրենց, թե ինչպես է պատահել, որ Սովետական Միությունում չնայած բոլոր ճնշումներին ու հետապնդումներին, դեռևս շատ մարդիկ թույլ չեն տվել իրենց զրկելու աստծուց» (G. Wegenlenher, Kommunisus ohue Zukuft, s, 231)

Առհասարակ խոսելով կոմունիզմի և կրոնի հակադրության մասին, չի կարելի չնկատել, որ ժամանակակից կղերականներն իրենց քաղաքական հայացքներով ու ձգտումներով ծայրահեղ տարասեռ են։ Եթե Սովետական Միությունում գործող կրոնական կազմակերպությունների ճնշող մասը սովետական պետության և կոմունիստական կուսակցության նկատմամբ լոյալ դիրքեր ունեն, ապա արտասահմանյան կրոնական կազմակերպություններից շատերի, հատկապես Վատիկանի, հակակոմունիստական դիրքորոշումը կասկածից վեր է։

Այսօր, որպես հետադիմության ծայրահեղ ներկայացուցիչներ հանդես են գալիս կապիտալիզմի ակտիվ պաշտպանները՝ ինտեգրիստները։ Հենց դրանց շրջանում է, որ 1963 թ. նոյեմբերին ծնունդ առավ իտալական եպիսկոպոսների հովվական դիմումն ընդդեմ «Անաստված կոմունիզմի», որը, Վատիկանի

պաշտոնական օրգան «Օսսերվատորե ռոմանո»-ի գնահատմամբ, չի հանդուրժում որևէ զիջում կոմունիզմի նկատմամբ, լրիվ ժխտում է այն սկզբունքները, որոնց վրա հենվում է կոմունիզմը...։

Արդի եկեղեցուն և նրա քարոզիչներին հատուկ է նաև տակտիկական մի այլ մեթոդ։ Դա կրոնական բարոյականության և համամարդկային բարոյականության նորմերի նույնացման փորձն է։ Կրոնի սպասավորների կողմից կրոնի և բարոյականության նույնացումը նորություն չէ։ Հավատացյալների մեծ մասը հավատում է, որ կրոնը սովորեցնում է՝ բարօրություն, համընդհանուր եղբայրություն, սեր, ներման քարոզներով մեղմացնում է մարդկանց բարքերը։

Եկեղեցու և կրոնի գաղափարախոսները փորձում են ապացուցել, որ պաշտամունքն ու հավատքը ապաքինում և ազնվացնում է մարդկանց, բարերար ազդեցություն թողնում նրանց վարքագծի վրա։ Որ առանց կրոնի մարդը կգլորվի արատների ու չարագործությունների գիրկը և որ կրոնն է փրկում նրան։ Օրինակ. Բեյրութում հրատարակված Վ. Վ. Թեքեյանի Պաշտպանություն հավատքի գրքում ասված է, որ «Ոչ միայն քաղաքական իշխանությունը, այլև բարոյական օրենքը ամբողջովին կհենվի աստծո գոյության վրա։ Եթե մերժվի աստծո գաղափարը, մարդը մարդու համար պիտի դառնա գայլ և աշխարհիս վրա պիտի տիրե միայն ուժը և բռնությունը» (Վ. Թեքեյան Պաշտպանություն հավատքի, Բեյրութ, 1961, էջ 1)։

Այսօր, ինչպես նշում է փիլիսոփայական գիտությունների դոկտոր Թ. Իսայանը, հայ եկեղեցու բարոյական աստվածաբանական ողջ կոմպլեքսից առաջին պլանի վրա են մղվում կյանքի իմաստի ու նպատակի կրոնական մեկնաբանությունները, ինչպես նաև մարդու համընդհանուր մեղավորության մասին քարոզները (Թ. Իսայան Հայ եկեղեցու արդի գաղափարախոսությունը, էջ 17)։ Սա պայմանավորված է ներկա դարում հասարակական կյանքում մարդու դերի բարձրացմամբ, կոմունիզմի ակտիվ կառուցողի դաստիարակությամբ, անհատի տեղի և նշանակության մասին կոմունիստական գաղափարախոսության լուրջ հաջողություններով։ Ոչ թե աստված, այլ մարդը կարող է վերափոխել աշխարհը, բացահայտել տիեզերքի գաղտնիքները, աշխարհում հաստատել եղբայրություն, հավասարություն և հումանիզմ։

Իսկ ինչպիսի՞ բարոյական սկզբունքներ են առաջ քաշում եկեղեցականները, ո՞րն է նրանց բարոյական քարոզների էությունը։ Կրոնական գաղափարախոսությունը մարդուն դաստիարակում է հոռետեսության, սեփական արժանապատվության նվաստացման, իրական կյանքի և երջանկության հանդեպ արհամարհանք տածելու ոգով։ Կրոնը սովորեցնում է ընդմիշտ հնազանդ լինել տիրակալին և ճնշողին, լռելյայն ենթարկվել նրանց հրամաններին։ Այն ջանում է ապացուցել, որ աշխարհն ստեղծել է արարիչը, որ իսկական կյանքը ոչ թե երկրային է, այլ անդրշիրիմյանը։

Ներկայումս խաղաղության պաշտպանության դիրքերի վրա են կանգնած Սովետական Միությունում գործող գրեթե բոլոր կրոնական կազմակերպությունները։ Խաղաղության պաշտպանությամբ է հանդես գալիս նաև հայ առաքելական եկեղեցին։

Պարզ է, որ եկեղեցին գոյատևելու նպատակով չի կարող չխուսանավել և այսօր նա իրեն ամեն տեսակի դասակարգային գաղափարախոսություններից վեր է հայտարարում, հանդես գալիս չեզոք դիրքերից, այսպես կոչված՝ «եր-



բորդ ուղու ներկայացուցիչ»։ «... Եկեղեցին իբրև մի հաստատություն, որը ժամանակից վեր է կանգնած և որի առաքելությունը հավիտենական է, պետք չէ միջամտի այդ հեղաշրջման ընթացքին (նկատի ունի կապիտալիզմից սոցիալիզմին անցման պրոցեսը —Մ. Հ.), դրսևորելով այս կամ այն նախաձեռնությունը։ Համենայն դեպս, արդարություն անելով՝ եկեղեցին չպետք է հասկանա մի որոշ արդարության կերպ, որը կապված է մի որոշ ժամանակաշրջանի գոյավիճակի հետ, կամ մի որոշ գաղափարախոսության հետ, կամ մի որոշ դասակարգի հետ» («Էջմիածին», 1961, № 7 էջ 12)։

«Բոլոր մարդիկ եղբայրներ են», «Մարդը մարդուն ընկեր է, բարեկամ, եղբայր» կրոնական և կոմունիստական բարոյականության այս երկու պատվիրանների միջև տարբերությունն ակնհայտ է։ Շահագործողն ու շահագործվողը, ճնշողն ու ճնշվողը չեն կարող լինել եղբայրներ։ Կրոնի որոշ քարոզիչների փորձերը կոմունիզմի կառուցող բարոյական կոդեքսի և «սուրբ գրքի» պատվիրանների միջև նմանությունների որոնումներն անհիմն են։ Մարքսիզմը հասարակական կյանքի բոլոր երևույթներին մոտենում է պատմականորեն, դասակարգային, սոցիալ-քաղաքական տեսանկյունից, մինչդեռ կրոնը կյանքի երևույթները բացատրում է միստիկայի օգնությամբ։ Հազարամյակներ հարատևող կրոնների պատմությունն օբյեկտիվ իր ընթացքով ապացուցել է, որ կրոնները մշտապես օգտագործվել են կեղեքիչների իշխանության հավերժացման նպատակով։ Ահա թե ինչու կրոնական և կոմունիստական բարոյականությունները իրարամերժ են։

Կոմունիզմ կառուցողի բարոյական կոդեքսի կարևորագույն առանձնահատկությունը նրա աթեիստական ուղղությունն է, օպտիմիզմը, հավատը սեփական ուժերի, մարդու կարողությունների ու ունակությունների նկատմամբ։ Կոմունիստական բարոյականության այս առանձնահատկությունը նկատում են ոչ միայն մարքսիստները, այլև բուրժուական սոցիոլոգներից շատերը։ Այս տեսակետից նշանակալից է Պ. Սլուսենի «Սովետական Ռուսաստանի էթիկական կոդեքսը» հոդվածը, որը հրատարակվել է անգլիական «Հումանիստ» ամսագրում։ Բուրժուական գաղափարախոսը խոստովանում է, որ սովետական երկրի բարոյական կոդեքսում պատմության մեջ առաջին անգամ փորձ է արվում ձևակերպելու մարդու բարոյական վարքագծի նորմերը՝ առանց կրոնի օգնության։ Շարադրելով կոդեքսի էությունը, փորձելով ճիշտ գնահատելու նրա բովանդակությունը և մասսաների վրա կատարված ազդեցության բնույթը, նա գրում է, որ ինչպիսին էլ լինի ռեակցիան դեպի այդ բարոյական կոդեքսը, չի կարելի աչք փակել այն բանի հանդեպ, որ դա պատմության առաջին աթեիստական բարոյական սկզբունքների ժողովածուն է, որը ոչ միայն հռչակված է կոմունիստական կուսակցության կողմից, այլև արժանացել է ամբողջ ժողովրդի հավանությանը» (տե՛ս „Numanist august, 1962, Ioudon, p. 24)։

Սակայն, որպես կանոն, աստվածաբանները հանդես են գալիս իբրև կոմունիստական բարոյականության նորմերի վճռական հակառակորդներ։ 1949 թ. հրավիրված Սուրբ Թովմասի Պապական ակադեմիայի հատուկ սեսիայում, որը նվիրված էր կոմունիզմի դեմ մղվող պայքարին, Վատիկանի գիտնականները ձգտում էին ապացուցել մարդկային արատների հավերժական բնույթը։ Այդ սեսիայում կոմունիզմը քննադատվում էր այն բանի համար, որ նա նոր մարդու դաստիարակությունը կապում է տնտեսական սիստեմը հե-

ղափոխականացնող մեթոդների հետ, այնպիսի հասարակության ստեղծման հետ, ուր յուրաքանչյուր մարդ կարող է բավարարել իր պահանջները, ակտիվորեն մասնակցելով հասարակական աշխատանքին:

Պարզ է, որ կրոնական գաղափարախոսությունն անցյալի գաղափարախոսություն է, և այժմ բոլոր աշխատավորները իրենց ապագան պետք է կապեն կոմունիզմի գաղափարախոսության հետ, որը միակն է, որ ճիշտ կերպով է բացատրում հասարակության զարգացման օրինաչափությունները, նշում ժողովուրդների առաջադիմության ռեալ պատմական ճանապարհը:

Սովետական մարդու գիտական աշխարհայացքը ձևավորվում է ժամանակակից գիտության նվաճումների յուրացման, կոմունիստական գաղափարայնության ներգործման, սովետական ապրելակերպի կատարելագործման պրոցեսում: Այս իսկ պատճառով աթեիստական դաստիարակությունը միայն պայքար չէ կրոնի դեմ, այլ ամենից առաջ, գիտական, մատերիալիստական հայացքների ու համոզմունքների յուրացում: Հավատացյալների մոտ հակասական տպավորություններ են առաջացնում ժամանակակից գիտության և կրոնական հավատքների փոխհարաբերությունները: Կրոնի գաղափարախոսները ստիպված են ճանաչելու գիտության հեղինակությունը, բայց ժխտում են նրա աթեիստական էությունը: Չէ որ կրոնը հավակնում է տալ կյանքի բոլոր հարցերի սպառիչ պատասխանը: Կ. Մարքսը գրում է՝ «Կրոնը այդ աշխարհի ընդհանուր տեսությունն է, նրա հանրագիտական համառոտությունը, հանրամատչելի ձևով տրված նրա տրամաբանությունն է... նրա հանդիսավոր լրացումն է, մխիթարելու և արդարացնելու նրա ընդհանրական կռվանը» (К. Маркс, Ф. Энгельс, Соч. т. I, стр. 414):

Գիտության նվաճումները հերքում են կրոնի ճշմարտությունները, ապացուցելով, որ այն շրջապատող աշխարհի խեղաթյուրված պատկերումն է, և որ այն իր տեղը պետք է զիջի գիտական աշխարհայացքին:

Կրոնական աշխարհայացքը փորձում է կրոնի դոգմաները ներկայացնել որպես բարձրագույն հայտնություն, որոնց էության մեջ չի կարելի թափանցել, քանի որ այդ անհասանելի է սովորական մարդկային մտածողությանը: Եվ որ, իբր, աստված այդ դոգմաների գաղտնիքները բացում է միայն ընտրյալ հոգիների առաջ, իսկ սովորական մարդկանց մնում է հավատալ, կուրորեն հավատալ առանց այդ հասկանալու:

Կրոնն առանձնապես խիստ հարձակումներ է գործում մատերիալիստական փիլիսոփայության դեմ: Մինչդեռ, կրոնական աշխարհայացքն անզորության, ստրկության ու հնազանդության աշխարհայացք է: Գիտության ու կրոնի բազմադարյան պայքարը մեր օրերում համարյա մոտենում է իր վախճանին, այն պիտի ավարտվի առաջինի հաղթանակով, գիտությունն այլևս կրոնի աղախինը չէ:

«Կրոնական երկնքի ծուռ հայելին, որը դարեր շարունակ արտացոլել է մարդկային հասարակության անկատարությունը, կջախջախվի ու դեն կշպրտվի ամենաժամանակակից հասարակության, ազատ, երջանիկ և ամենակարող մարդկային հասարակության կողմից (Волков, **Человек, космос и бог,** «Известия», 29 мая, 1962 г.):

Աստվածաբաններին խիստ անհանգստացնում է տիեզերական տարածությունների հետազոտությունը, մարդու թռիչքը դեպի լուսին, արհեստական



արբանյակների արձակումը և այլն: Այս մասին Յու. Ա. Գագարինը նշում էր, որ նա հազարավոր նամակներ էր ստանում հավատացյալներից, որոնց մեջ վերջիններս անհանգստացած հարցնում են, թե արդյոք նա չտեսա՞վ աստծուն: «Ես ստիպված էի հիասթափեցնել մարդկանց: Իմ միակ պատասխանը, որ ես չեմ տեսել աստծուն, ինձ համար անսպասելի, հսկայական տպավորություն թողեց նրանց վրա» («Наука и религия», 1964, № 4, стр. 11):

Եկեղեցու քարոզիչներից շատերը փորձում են ապացուցել, որ կրոնի և գիտության պայքարը վերաբերվում է անցյալին, որ այն ըստ էության պատահականության արդյունք է և առաջացել է առանձին տաքարյուն գիտնականների և կրոնավորների անհանդուրժողականությունից: Կրոնը գիտության հետ հաշտեցնելու փորձեր է կատարում հայ աստվածաբաններից Ա. Կ. Հասեսյանը՝ իր Կրօնք և գիտութիւն՝ քրիստոնէութեան հաւատքի պրիսմակէն գրքում: «Կրոնքը ու գիտությունը,— գրում է նա,— մարդու համաչափ զույգ թևերն են, որոնց շնորհիվ ան խիզախորեն կճեղքե միջոցը և կդիտե իր ստեղծիչը՝ մտային և ֆիզիկական ամպերեն ի վեր, ի խնդիր ավելի պայծառատեսության լայն հորիզոններու, և ըմբռնելու համար այն գաղտնիքները, որ զինքը ավելի ուժգին և ավելի վեր կբարձրացնե» (Ա. Կ. Հասեսյան Կրօնք և գիտութիւն՝ քրիստոնէական հաւատքի պրիստակէն, Պեյրութ, 1963, էջ 3):

Ա. Հասեսյանը փորձում է ապացուցել, որ եթե մեր կյանքի բազմաթիվ երևույթներ այսօր պարզաբանվում և բացատրություն են ստանում, ապա դա ապացույց չէ Արարչի և մարդկանց անհամաձայնության, այլ արդյունք է մեր մտային տգիտության: Հայ աստվածաբանը գիտության և կրոնի խաղաղ գոյակցություն է առաջարկում, մասնավորապես նշելով, որ գիտնականները գիտակ չեն կրոնի հարցում և չպետք է միջամտեն նրա գործերին: Չկարողանալով ժխտել կրոնի և գիտության հակասությունը, նա խաղաղության է կոչում:

Միաժամանակ Ա. Հասեսյանը փորձում է կրոնը վեր հանել ամեն ինչից և գիտության հայտնագործություններին տալ կրոնական երանգավորումներ: Բացատրելով գիտության հանդեպ կրոնական գաղափարախոսության այս նոր վերաբերմունքի իմաստը, հայ աստվածաբանը խոստովանում է, որ կրոնը դիմում է հաշտության կոչերին ոչ թե այն բանի համար, որ գիտությունը նրա հարազատ քույրն է, այլ այն բանի համար, որ նրա դեմ այլևս անզոր է պայքարելու: «...Գիտության դեմ կրոնքին նախապես գործած զենքերը անգործածելի են, ինչպես ներկայիս չինական ծնծղանը և վիշապակերպ լապտերները դարուս հակաօդային թնդանոթներուն դեմ: Ուստի կրոնքը պարտի իր միջոցները ու կերպերը վերաձևել...»:

Գիտության նկատմամբ կրոնի տակտիկան փոխելու այդօրինակ իմաստը պարզ է: Կրոնի սուրբ հայրերը վախեցած են գիտության նվաճումներից և հասկանալի պատճառներով փորձում են ամեն գնով կանխել կրոնական գաղափարախոսության վախճանը:

Եկեղեցու արդի գաղափարախոսության ուսումնասիրությունը կարևոր նշանակություն ունի արդյունավետ և նպատակաուղղաց գիտա-աթեիստական պրոպագանդայի կազմակերպման և կրոնի հակագիտական էության բացահայտման համար: Այն կարևոր դեր է խաղում կրոնի հանդեպ մարքս-լենինյան աշխարհայացքի հաղթանակի գործում:

**Մ. Մ. ՀԱԿՈԲՅԱՆ**
Դոցենտ

# ՀԵՂԱՓՈԽՈՒԹՅԱՆ ՎԵՏԵՐԱՆՆԵՐԸ

## ԼԱԼԱՅԱՆՑԸ ՍԻԲԻՐՅԱՆ ԱՔՍՈՐՈՒՄ

Վ. Ի. Լենինի զինակցի, Ռուսաստանի սոցիալ-դեմոկրատական բանվորական կուսակցության ակտիվ գործչի՝ Իսահակ Քրիստափորի Լալայանցի վերաբերյալ գրականությունը սակավ է, իսկ նրա կյանքի սիբիրյան ժամանակահատվածի մասին գրեթե ոչինչ չի գրված: Առաջարկվող հոդվածը շարադրված է Սիբիրի պետական արխիվների նյութերի հիման վրա: Հեղինակը չի հավակնում լիովին սպառել հատուկ ուսումնասիրություն պահանջող այս հարցը:

«Հանցավոր խմբակում» «հակակառավարական» գործունեության համար 1900 թ. ապրիլին[1] ՌՍԴԲԿ Եկատերինոսլավի (Դնեպրոպետրովսկ) կոմիտեի մյուս անդամների՝ Ի. Վ. Բաբուշկինի, Մ. Գ. Ցխակայայի և այլոց հետ, ձերբակալվում ու Կիևի Լուկյանովկայի բանտն է նետվում նաև Ի. Ք. Լալայանցը: Բանտում նա չի ընդհատում կուսակցական գործունեությունը. ծանոթանում է այնտեղ գտնվող քաղաքական բանտարկյալներ Գ. Ի. Պետրովսկու, Մ. Ս. Ուրիցկու և ուրիշների հետ, զրույցների ժամանակ նրանց տեղեկացնում ՌՍԴԲԿ գործերի վիճակին, պատմում Վ. Ի. Լենինի մասին: Իր հիշողություններում՝ «Как я узнал о Ленине» Գ. Ի. Պետրովսկին գրել է. «Բանտում ես հանդիպեցի Լենինի զինակիցներին՝ Ցխակայային ու Լալայանցին: Զրույցների ընթացքում նրանք հաճախ էին պատմում Վլադիմիր Իլյիչի՝ բանվոր դասակարգի գործի բացառիկ տեսաբանի և մեծագույն մարտիկի մասին» («Наш мудрый вождь», М., 1970, стр. 5):

«Խռովարարական տրամադրությունների» համար Ի. Ք. Լալայանցին Լուկյանովկայից տեղափոխում են Մոսկվայի կենտրոնական առաքաբանտը, իսկ այնտեղից, «մինչև գործի վճիռը», ուղարկում Արևելյան Սիբիր:

Ներքին գործերի մինիստրության գաղտնի նամակում մինիստրի փոխարեն նրա օգնականը 1902 թ. մարտի 14-ին Իրկուտսկի զինվորական գեներալ նահանգապետին գրում է. «По рассмотрении в Особом Совещании, образованном согласно ст. 34 Положения о государственной охране, обстоятельств дела о привлеченном к произведенному при Екатеринославском губернском жандармском управлении, в порядке 1035 ст. Уст. Угол. Суд., и не получившему еще окончательного разрешения, дознания по делу о преступном сообществе именовавшемся «Екатеринославским Комитетом Российской Социал-демократической рабочей партии», мещанин гор. Кизляра, запасном фейерверкере Исааке Христофорове Лалаянце, содержащемся под стражею в Московской Центральной Пересыльной Тюрьме, г. Министр внутренних дел, приняв во внимание, что в разрешение упомянутого дознания предполагается выслать Лалаянца под гласный надзор полиции в Восточную Сибирь и что в дальнейшем содержании обвиняемого под стражею не усматривается надобности и имея в виду необходимость предупреждения для Лалаянца возможности продолжать на свободе свою преступную деятельность и сношения, постановил: выслать Лалаянца ныне же под гласный надзор полиции, впредь до решения дела, в одну из местностей Восточной Сибири по усмотрению Вашего Превосходительства.

Об изложенном имею честь уведомить Ваше Превосходительство для зависящих распоряжений относительно подчинения Лалаянца, по прибытии во вверенный Вам край, гласному надзору полиции на вышеуказанных условиях»[1].

Կրասնոյարսկի առաքաբանտում Լալայանցը կրկին հանդիպում է Մ. Ս. Ուրիցկուն, որը 1901 թ. հունվարի 2-ի Բարձրագույն հրամանագրի հիման վրա, «ՌՍԴԲԿ Կիևի կոմիտեի», գործունեությանը մասնակցելու համար, ոստիկանության բացահայտ հսկողության տակ, ութ տարով աքսորվում էր Արևելյան Սիբիր «Յակուտսկի երկրամաս)[2]: 1902 թ. ապրիլի 1-ին Լալայանցը բանտից դիմում է Իրկուտսկի գեներալ-նահանգապետին՝ իրեն Իրկուտսկում թողնելու խնդրանքով[3]: Նույն թվականի ապրիլի 16-ին Վորոնեժից նույնպիսի խնդրանքով դիմում է Լալայանցի կինը՝ Պրասկովյա Իվանովնա Լալայանցը: Նա գրում է. «Խնդրում եմ թույլ տալ ամուսնուս՝ Ի. Ք. Լալայանցին, մնալ Իրկուտսկում՝ բժիշկների հայտնաբերած հիվանդությունը բուժելու համար»[4]:

Իրկուտսկի նահանգ ուղարկվելուն սպասելիս՝ Լալայանցը, Ուրիցկու, Օգանեսովի հետ, մեծ հոգսեր է պատճառում բանտային իշխանություններին: Նրանք կազմակերպում էին բանավեճեր, երգում հեղափոխական երգեր[5]:

Լալայանցն Իրկուտսկի առաքաբանտը հասավ 1902 թ. ապրիլի 30-ին և Իրկուտսկի նահանգապետի որոշմամբ բնակեցվեց Բալագանսկի գավառի Ուստ-Ուդինսկ գյուղում: Լալայանցը մտադիր չէր երկար մնալու իր նոր բնակավայրում: Նա պատրաստվում էր փախուստի: Այդ բանում նրան օգնեցին նաև ընկերները: 1902 թ. հունիսի 8-ին Լալայանցն ստացավ 69 ռուբլի 85 կոպեկ[6]: 1902 թ. հունիսի 18-ին Պ. Ի. Լալայանցը Սարատովից մեկնեց Իրկուտսկ՝ դրա համար ունենալով ներքին գործերի մինիստրի թույլտվությունը: Ահա թե ինչ է գրել այդ առթիվ մինիստրի օգնականը 1902 թ. հունիսի 21-ին Իրկուտսկի գեներալ-նահանգապետին. «Պետական հանցանքի մեջ մեղադրվելու համար Եկատերինոսլավի նահանգային ոստիկանական վարչության կողմից հետաքննված Պրոսկովյա Իվանովնա Լալայանցը դիմել է ներքին գործերի մինիստրություն իրեն՝ Իրկուտսկ քաղաքը բնակության մեկնելու թույլտվության միջնորդությամբ՝ նկատի ունենալով, որ իր ամուսինը աքսորվել է Իրկուտսկի նահանգի Ուստ-Ուդինսկ գյուղը:

Ընդունելով, որ հնարավոր է բավարարել Պրասկովյա Լալայանցի խնդրագիրը, պատիվ ունեմ շարադրվածի մասին հայտնել Ձերդ Գերազանցությանը:

Այս ամենի հետ մեկտեղ, իմ պարտքն եմ համարում ավելացնել. հետաքննության տվյալներից պարզվել է, որ Լալայանց կոչվածը «ՌՍԴԲԿ Եկատերինոսլավի կոմիտե» անունը կրող հեղափոխական խմբակի անդամ է և այդ հանցավոր խմբակի հրատարակումների տարածման մասնակիցը:

Այդ գործի վճռման նպատակով արդարադատության մինիստրությունը մտադիր է Պրասկովյա Լալայանցին 4 տարով աքսորել Արևելյան Սիբիր»[1]:

Հանդիպելով պայմանավորված վայրում Իսահակ և Պրասկովյա Լալայանցները բարեհաջող փախչում են արտասահման: 1902 թ. հուլիսի 31-ին Իրկուտսկի նահանգային վարչությունը տեղեկացնում է Իրկուտսկի գեներալ-նահանգապետի գրասենյակին. «Բալագանսկի գավառային վերակացուն սույն թվականի հուլիսի 17-ին № 145 գրությամբ զեկուցում է, որ Ուստ-Ուդինսկ գյուղի ոստիկանության բաց հսկողության տակ գտնված Իսահակ Լալայանցը սույն ամսի 5-ին ընկերների հետ որսի գնալիս անհետացել է»[2]: 1902 թ. օգոստոսի 1-ին ոստիկանության դեպարտամենտը Ի. Ք. Լալայանցի անունը մտցնում է քաղաքական գործերով որոնվողների ցուցակը:

Իմանալով Լալայանցի բարեհաջող փախուստի մասին, Վ. Ի. Լենինը, 1902 թ. օգոստոսի 19-ին Պ. Բ. Աքսելրոդին գրած նամակում, նշում է. «Հենց այս րոպեին հեռագիր ստացա, որ Կոլումբը (Ի. Ք. Լալայանցի կուսակցական ծածկանուններից մեկն է—Վ. Է.) Ձեզ մոտ է: Բազում ողջույններ հին բարեկամին: Կից նամակ եմ ուղարկում նրան» (ПСС, т. 46, стр. 219):

Լենինի առաջարկով Լալայանցը տեղափոխվում է Ժնև: Այնտեղ նա վարում է «Իսկրայի» տպարանը և դառնում նրա ակտիվ գործակալը:

ՌՍԴԲԿ II համագումարից հետո Լալայան-

---

[1] *Բոլոր թվական տվյալները հին տոմարով են:*

[1] Государственный архив Иркутской области (ГАИО), ф. 25, оп. 3, д. 644. л. 1.

[2] Госархив Красноярского края (ГАКК), ф. 827, оп. 1, д. 43, л. 827.

[3] ГАИО, ф. 25, оп. 3, д. 644, л. 4.

[4] *Նույն տեղը, թ. 12:*

[5] ГАКК, ф. 595, оп. 70, д. 124, л. 31.

[6] ГАИО, ф. 25, оп. 3, д. 644, л. 15.

[1] ГАИО, ф. 25, оп. 3, д. 644, л. 17.

[2] *Նույն տեղը, թ. 22:*

ցը, որպես կուսակցության Կենտկոմի գործակալ, մեկնում է Ռուսաստան և տեղական կոմիտեներին բոլշևիկյան տեսանկյունով ծանոթացնում համագումարի որոշումներին: Լալայանցը ՌՍԴԲԿ Կենտկոմի հարավային բյուրոյի կազմակերպիչներից էր. նա ակտիվ գործունեություն էր ծավալում կուսակցության III համագումարի նախապատրաստման համար:

1904 թ. ամռանը Լալայանցը պարսկահպատակ Յակով Իսահակի Լեոն անվամբ ձերբակալվում է Օդեսայում և քանի որ Իրկուտսկի նահանգում ռազմական դրություն էր, հինգ տարով, ոստիկանության բաց հսկողության տակ, աքսորվում է Վոլոգդայի նահանգը[1]:

Վոլոգդայի աքսորավայրում մեկ տարի մնալուց հետո, 1905 թ. հունիսի առաջին կեսերին Լալայանցը նորից է փախչում[2]: Գալով Պետերբուրգ՝ նա ակտիվորեն մասնակցում է ռուսական առաջին հեղափոխությանը: ՌՍԴԲԿ III համագումարից հետո Լալայանցը կոոպտացիայի կարգով ընդգրկվում է Կենտկոմի կազմում: Պետերբուրգում նա մտնում է ՌՍԴԲԿ Պետերբուրգի կոմիտեին կից զինվորական կազմակերպության մեջ և դառնում «Կազարմա» բանակային թերթի խմբագիրներից մեկը: Լալայանցը գործուն մասնակցություն է ցույց տալիս 1906 թ. նոյեմբերին Ֆինլանդիայում տեղի ունեցած ՌՍԴԲԿ զինվորական և մարտական կազմակերպությունների երկրորդ (Տամերֆորսյան) կոնֆերանսին[3]:

1906 թ. դեկտեմբերին Ֆրիդրիխ Վիլհելմովիչ Կլինկան (այն ժամանակ Լալայանցն այդպիսի կեղծանուն էր կրում) կրկին կալանավորվում է ու նետվում Պետերբուրգի բանտը:

1908 թ. օգոստոսի 18-ին և սեպտեմբերի 3-ին Պետերբուրգի ռազմա-օկրուգային դատարանը քննեց Լալայանցի գործը և, «Ռուսաստանում հիմնական օրենքներով հաստատված կառավարման ձևերն իր գործունեությամբ բռնի ճանապարհով փոխելու նպատակ հետապնդող խմբակի անդամ լինելու համար (քր. օրենս.՝ I մ. 102 հոդ.), դատապարտեց 6 տարվա տաժանակրության, քր. օրենս. 23, 25, 28—31, 34—35 հոդ. հետևանքներով հանդերձ[4] (այսինքն՝ ցմահ բնակություն Սիբիրում—Վ. Է.):

1908 թ. նոյեմբերի 3-ին դատավճիռը հրապարակվեց և Լալայանցին տեղափոխեցին Շլիսելբուրգի տաժանակրային բանտը: Վեց տարի անց, 1913 թ. նոյեմբերի 3-ին տաժա-

[1] ГАКК, ф. 827, оп. 1, д. 43, л. 603.

[2] *Նույն տեղը, թ. 777:*

[3] Борьба большевиков за армию в трех революциях. М., 1969, стр. 57.

[4] ГАИО, ф. 34, оп. 5, д. 1158, л. 2.

նաբանտարկյալը, համաձայն Ս. Պետերբուրգի նահանգային վարչության ներկայության մատյանի, տաժանակիր աշխատանքների ժամկետը լրանալու կապակցությամբ, փոխադրվում է աքսորաբնակների խումբը[1]:

1913 թ. նոյեմբերի 7-ին Լալայանցը ոտնաշղթաներով Շլիսելբուրգի տաժանաբանտից, աքսորականների խմբի հետ, ուղարկվեց Արևելյան Սիբիր: Տեղ հասնելուն պես՝ 1913 թ. դեկտեմբերի 4-ին, Իրկուտսկի նահանգային վարչության բանտային բաժանմունքը Լալայանցին բնակեցրեց Վերխոլենսկի գավառի Բիրյուլսկ վոլոստի Բիրյուլկա գյուղում: 1913 թ. դեկտեմբերի 28-ին գալով աքսորավայր՝ նա անմիջապես վերցվեց ոստիկանության բաց հսկողության տակ:

Վերխոլենսկի աքսորում Լալայանցը վերահաստատում է կապերը Լենինի հետ: Լալայանցի հասցեն նշված է Ն. Կ. Կրուպսկայայի ծոցատետրում ռուսական հասցեների հետ (ՌՍԴԲԿ հասցեագիրք)[2]:

Սիբիրյան հեռավոր ու հետամնաց Բիրյուլկա գյուղում Լալայանցը ծանր հիվանդանում է: Լուրջ վիրահատման կարիք կար: 1914 թ. մայիսի 13-ին աքսորաբնակ Լալայանցը դիմում է Վերխոլենսկի պարոն վերակացուին. «Նկատի ունենալով առողջական վիճակիս վրա օրեցօր անդրադարձող Hydrocelia-ի (ձվի ջրագողություն) շտապ վիրահատման անհրաժեշտությունը՝ պատիվ ունեմ խոնարհաբար խնդրելու Ձեզ Իրկուտսկ մեկնելու համար անցաթուղթ տալու մասին, որպեսզի այնտեղ հասնելուն պես, ինկույն ևեթ, կարողանամ բանտային պ. տեսչից ստանալ Իրկուտսկում ժամանակավորապես ապրելու իրավունք, որն անհրաժեշտ է հիշյալ վիրահատության համար»[3]:

1914 թ. հունիսի սկզբին Կուզնեցովյան հիվանդանոցում նրան վիրահատում են: Դուրս գալով այնտեղից՝ 1914 թ. հունիսի 13-ին Լալայանցն Իրկուտսկի նահանգային բանտի տեսչին գրում է հետևյալը. «Նորերս դուրս գալով Կուզնեցովյան հիվանդանոցից, ուր վիրահատման համար պառկած էի երեք շաբաթ, և այժմ վիրակապման նպատակով շարունակելով հաճախել այնտեղ՝ ես հարկադրված եմ վիրակապումը վերջացնելուց հետո, այսինքն՝ մոտ 10 օրից, նորից վերադառնալ Բիրյուլկա (իմ գրանցման վայրը)՝ Իրկուտսկում մնալու ինձ տրված ժամկետը (մինչև օգոստոսի 24-ը) չսպառած: Հանգամանքները, որոնք ստիպում

[1] *Նույն տեղը, թ. 4:*

[2] «Вопросы истории КПСС», 1970, № 9, стр. 122.

[3] ГАИО, ф. 34, оп. 1, д. 11572, л. 5.



են ինձ վարվել այդպես, առողջական վիճակիս ընդհանուր թուլությունն է առհասարակ և հատկապես թոքերիս հիվանդությունը (վերնածայրերի կատար). այդ պատճառով, բժիշկների կարծիքով, ինձ համար առավել օգտակար է ամառն անցկացնել գյուղական վայրերում: Բայց, քանի որ նախ, մոտ ժամանակներս սպասվում է լրացուցիչ վիրահատություն, որը չի կարելի անել շուտ, քան առաջինից երկու ամիս անց, քանի դեռ հյուսվածքները լիովին չեն վերականգնվել, երկրորդ, վիրահատումը չի բացառում կյանքի համար վտանգավոր հիվանդության անսպասելի կրկնությունը, երրորդ, այդ իսկ վիրահատումն ընդմիշտ զրկում է ինձ ֆիզիկական աշխատանք կատարելու հնարավորությունից (իսկ Բիրյուլկայում ուրիշ համապատասխան զբաղմունք բոլորովին չկա), ուստի, նկատի ունենալով վերոհիշյալը, պատիվ ունեմ խոնարհաբար և թախանձագին խնդրելու Ձերդ գերազանցությանը՝ իրավունք տալ ինձ այս ամռան վերջից, այսինքն՝ սույն թ. սեպտեմբերի 1-ից նորից վերադառնալու և ապրելու Իրկուտսկում»[1]:

Բիրյուլկայում Լալայանցի առողջությունը վատթարանում է: Պահանջվում էր լրացուցիչ վիրահատություն և ի լրումն դրա զարգանում էր թոքերի հիվանդությունը: Հիվանդությունները բուժելու համար Իրկուտսկի բանտային տեսուչը թույլատրեց Լալայանցին ժամանակավորապես ապրել Իրկուտսկում, իսկ Վերխոլենսկի գավառային վերակացուն կարգադրեց նրան անձնագիր տալ: Բայց որովհետև անձնագրում սխալներ կային, Լալայանցը Բիրյուլկայից 1914 թ. սեպտեմբերի 5-ին Վերխոլենսկի գավառային վերակացուին հետևյալ դիմումն է ներկայացնում. «Ձեր թույլտվությամբ, ինձ անձնագիր հանձնելիս՝ տեղեկացուցակում աչքի զարնող, **ուղղակի անհեթեթ** սխալներ են նկատվել. այն է՝ ծննդյան թիվը մատնանշված է 1869, իսկ դավանանքը՝ լյութերական: Իրականում պետք է լինի՝ ծնվել է 1870 թ. հուլիսի 24-ին, իսկ դավանանքը՝ հայ-լուսավորչական: Այս երկու կետերի սխալը, եթե հաշվի չառնենք մյուս ոչ-էականները, ըստ երևույթին, այն բանի հետևանք է, որ ես կալանավորվել ու դատապարտվել եմ իբրև Կլինկա Ֆրիդրիխ Վիլհելմ—դավանանքը՝ լյութերական, 1869 թ. ծնված: Հետագայում, երբ ուղղվել, գրվել է իմ իսկական ազգանունը՝ Լալայանց, այդ երկու կետը, ըստ երևույթին անտեսվել է ու չի ուղղվել. այդպիսով, առաջացել է բացահայտ անհամապատասխանություն:

Խոնարհաբար խնդրում եմ Ձերդ գերազան-

[1] ГАИО, ф. 34, оп. 1, д. 11572, л. 10.

ցությանը թույլատրել անձնագրում նշելու իմ ճիշտ տարիքն ու դավանանքը»[1]:

1914 թ. հոկտեմբերի 14-ին Լալայանցը գալիս է Իրկուտսկ. սկզբում ապրում է Ժանդարմսկայա փողոցի № 27 տանը, մի ծանոթ աքսորականի մոտ, ապա, ավելի ուշ, բնակարան է վարձում Պոպլավսկայա (այժմ Կրասնոգվարդեյսկայա) փողոցի № 9 տանը: Հիմա էլ մի քանի մեծահասակներ լավ հիշում են համեստ, խելացի, քաղաքական աքսորական Կոլումբին—Ի. Ք. Լալայանցին, որը հաճախ էր զրուցում երիտասարդների հետ, պատմում նրանց Լենինի մասին, կարդալու տալիս նրա աշխատությունները:

Գոյությունը պահպանելու համար Լալայանցն աշխատանքի է անցնում «Ի. Դ. Սիտինի տպագրության, հրատարակչության և գրքի առևտրի ընկերության» ֆիրմայի Իրկուտսկի բաժանմունքում, միաժամանակ զբաղվում է հողաշինարարական և վերաբնակեցման վիճակագրական բաժնում, որտեղ շուտով մշտական աշխատանք է ստանում: Այդ առթիվ 1914 թ. հունիսի 1-ին Իրկուտսկի բանտային տեսուչին նա գրում է. «Իրկուտսկի վերաբնակեցման վարչությունը, որի վիճակագրական բաժանմունքում ժամանակավորապես զբաղված եմ, ինձ աշխատանք է հանձնարարում Նիժնեուդինսկի գավառի Բրատսկի և Մ. Մամեյարսկի վոլոստներում: Ես մտադիր եմ օրերս գնալ այնտեղ և, թերևս, մնալ մոտ 2 ամիս: Բայց, քանի որ Իրկուտսկում ապրելու թույլտվության վկայականի ժամկետը լրանում է այս տարվա հուլիսի 20-ին, ես պատիվ ունեմ խոնարհաբար խնդրելու Ձերդ գերազանցությանը՝ թույլ տալ հետագայում ևս, հուլիսի 20-ից, մնալու Իրկուտսկում, որպեսզի հնարավորություն ունենամ ազատ վերադառնալու Իրկուտսկ և շարունակելու տեղերում հավաքած նյութերի մշակումը»[2]: Իրկուտսկի նահանգի հողաշինարարության և վերաբնակեցման տնօրենը, կողմնատար գրառումներ կազմող ավագ չինովնիկը 1915 թ. հունիսի 5-ին Լալայանցի այդ խնդիրքն ուղարկեց Իրկուտսկի բանտային տեսուչին: «Ուղարկում եմ Իսահակ Լալայանցի խնդիրքը հետագայում ևս Իրկուտսկ քաղաքում ապրելու իրավունք ստանալու վերաբերյալ: Իմ կողմից խնդրում եմ չմերժել, բավարարել Լալայանցի հիշյալ խնդրանքը և խնդրագրի առդիրը, 1914 թ. հոկտեմբերի 15-ի № 11930 վկայականը վերադարձնել ինձ»[3]:

[1] ГАИО, ф. 34, оп. 1, д. 11572, л. 15.

[2] ГАИО, ф. 34, оп. 1, д. 11572, л. 24.

[3] *Նույն տեղը, թ. 25:*

Իրկուտսկում Լալայանցի առողջությունը նետըզհետե բարելավվում է, և նա վերսկսում է կուսակցական աշխատանքը, կապեր է պահպանում Իրկուտսկի քաղաքսորականների, վերահաստատում գրագրությունը Լոնդոնի և այլ քաղաքների հեղափոխական կազմակերպությունների հետ, ինչպես նաև շարունակում իր հրապարակախոսական գործունեությունը[1]: Իրկուտսկի նահանգի բանտային տեսուչին ուղղած 1915 թ. նոյեմբերի 25-ի գաղտնի նամակում Իրկուտսկի նահանգի ոստիկանության վարչության պետ, գնդապետ Բալաբանովը գրել է. «Վերխոլենսկի գավառի Բիրյուլսկի վոլոստի աքսորաբնակ Իսահակ Քրիստափորի Լալայանցը, արժանահավատ, գաղտնի տեղեկությունների համաձայն կապեր ունի Լոնդոնում գտնվող հեղափոխական կազմակերպությունների անդամների հետ»[2]:

Ծավալվող առաջին համաշխարհային պատերազմը վատթարացրեց ո՛չ միայն աքսորականների, այլև տեղի բնակչության վիճակը: Ողջ Արևելյան Սիբիրում ստեղծվում էին սպառողական ընկերություններ — կոոպերատիվներ, որոնց կազմակերպիչներն ու ստեղծողները քաղաքսորականներն էին: Ամենախոշորը Կրասնոյարսկի «Սամոդեյատելնոստ» և Իրկուտսկի «Տրուժենիկ» կոոպերատիվներն էին:

1916 թ. հուլիսի վերջին «Տրուժենիկ»-ի վարչությունը Լալայանցին ծառայության հրավիրեց և վկայական տվեց Իրկուտսկի բանտային տեսուչին ներկայացնելու համար: 1917 թ. փետրվարի 23-ի խնդրագրում Լալայանցը գրել է. «Նկատի ունենալով 1916 թ. սեպտեմբերի 13-ից մինչև ս. թ. մարտի 12-ը տեսչության կողմից ինձ տրված № 12748 վկայականի ժամկետը լրանալը «Տրուժենիկ» և ընկ. գրասենյակում գրասենյակային ծառայողի իմ պաշտոնը, որի վերաբերյալ կից ներկայացնում եմ հիշյալ ընկերության վարչության վկայականը, պատիվ ունեմ խոնարհաբար խնդրելու Ձերդ գերազանցությանը՝ իրավունք տալու ինձ հետագայում ևս ապրելու քաղ. Իրկուտսկում»:

**ՎԿԱՅԱԿԱՆ**

«Սույն վկայականը տրվում է Իրկուտսկի նահանգի Վերխոլենսկի գավառի Բիրյուլկո վոլոստի աքսորաբնակ Իսահակ Քրիստափորի Լալայանցին ներկայացնելու Իրկուտսկի նահանգի բանտային տեսչությանը, որ վերոհիշյալը 1916 թ. օգոստոսի 1-ից գրասենյակային ծառայողի պաշտոն է վարում մեզ մոտ»[1]:

Փետրվարյան բուրժուա-դեմոկրատական հեղափոխությունից հետո Ի. Ք. Լալայանցը չմեկնեց Իրկուտսկից: Նա մինչև 1922 թ. շարունակեց գործել «Տրուժենիկ» կոոպերատիվի վարչությունում:

**Վ. Ս. ԷՄԵՔՍՈՒԶՅԱՆ**

[1] *Նույն տեղը, թ. 34։*

[1] ГАИО, ф. 34, оп. 1, д. 11572, л. 34.

# ԳՐԱԽՈՍՈՒԹՅՈՒՆ ԵՎ ՔՆՆԱԴԱՏՈՒԹՅՈՒՆ

## ԱՌԱՎԵԼ ՈՒՇԱԴՐՈՒԹՅԱՆ ԱՐԺԱՆԻ ՄԻ ԽՆԴԻՐ

*Խոսքը հայոց պարբերական մամուլի գիտական, լիակատար մատենագիտություն ստեղծելու մասին է։*

*Հայագիտության զարգացման ներկա փուլում շատերին է մտահոգում հայկական մատենագիտության ցածր մակարդակը։ Օրեցօր ավելի զգալի է դառնում մեր հարուստ տպագիր ժառանգության՝ գրքերի ու մամուլի մատենագիտությունների պակասը։ Մինչև այժմ հայտնի չէ աշխարհում լույս տեսած հայերեն գրքերի նույնիսկ մոտավոր քանակը։ Պարբերականների թիվը տատանվում է 2.500—4.000-ի միջև։ Միմյանց տպագրությունների վերաբերյալ այդ անկարևոր թվացող տեղեկությունները կոնկրետ պատկերացում կտային մեր մշակույթի անցյալի մասին։ Ավելի էականը տպագիր այդ մասունքներում ամփոփված նյութերի բացահայտումն է, մատենագիտական ձեռնարկների միջոցով դրանք ընթերցողներին ներկայացնելը։ Մի քանի մարդու կատարած աշխատանքը կթեթևացներ, կարագացներ հազարավորների գործը։ Հիշենք, օրինակ, թե տարեկան քանի՜-քանի մասնագետներ ու ոչ մասնագետներ, հաճախ միևնույն նյութի համար, օրեր, ամիսներ շարունակ զբաղվում են որոնումներով, ուրիշ քաղաքներ մեկնելով, նամակներ հղելով սփյուռքի տարբեր վայրերը՝ իրենց հետաքրքրող թերթը, գիրքը կամ դրանցում զետեղված տեղեկությունն ստանալու համար։*

*Խնամքով կազմված լիակատար մատենագիտությունները ո՛չ միայն կհեշտացնեն անհատների աշխատանքը, այլև կարող են վճռական դեր խաղալ, խթանել ազգային ողջ մշակույթի ընդհանուր առաջընթացը։*

*Մինչև այժմ կազմված հայկական մամուլի մատենագիտություններից ոչ մեկը, առանձին վերցրած, չի բավարարում ընթերցողների ու մասնագետների պահանջը։ Նկատենք նաև, որ նույնիսկ ժամանակին բարձր գնահատության արժանացած լավագույն մատենագիտությունները, բանասիրության ու մշակույթի անկանգ վերելքի պատճառով, հնանում, համալրման կարիք են ունենում և ի վիճակի չեն պատասխանելու հետագա սերունդների բոլոր հարցումներին։ Ահա թե ինչու պարբերական մամուլի (ինչպես և գրքերի) մատենագիտությունների կազմումը համապետական նշանակություն ունի և գիտական հաստատությունների, պետական գրադարանի ու գրապալատի առաջնակարգ խնդիրներից մեկն է։ Այդ ասպարեզում կատարվող ամեն մի, սկզբում թեկուզ սայթաքումներով կատարվող գործնական քայլ արժանի է պատշաճ ուշադրության, բանիմաց գնահատականի։*

*Փորձը ցույց է տվել, որ մամուլի լիակատար ու անթերի մատենագիտություն ունենալու համար* անհրաժեշտ է, առաջին հերթին, կազմել ինչպես առկա, այնպես և այլ աղբյուրներում հիշատակվող բոլոր թերթերի ու ամսագրերի *ցուցակը, նշելով դրանց հրատարակության վայրը, ժամանակը, պարբերականությունը, խմբագիր-հրատարակիչների անունները։ Այսպիսի ցուցակը կկատարի մոտավորապես նույն դերը, ինչ բառացանկը՝ հանրագիտական և այլ բառարանների համար։ Այդ ցուցակի հիման վրա ճշտումներ կատարելուց, անուն առ անուն ուսումնասիրելուց հետո միայն կարելի կլինի ձեռնամուխ լինել գիտական ընդարձակ մատենագիտություն կազմելուն։ Այստեղ արդեն, մամուլի յուրաքանչյուր անվան վերաբերյալ վերոհիշյալ տեղեկությունների հետ միասին, կուրվագծվեն դրանց հրատարակության պատմությունը, ուղղությունը, կնշվի*

թենական ու հանրապետական տարեգրերը լույս են տեսնում զատ-զատ։

Ավելի հարմար կլիներ, թերևս, եթե լրագրերից ու ամսագրերից անջատվեին օրացույցները, գիտական աշխատությունները, տարեգրքերը, գիտական այլևայլ ժողովածուները։ Սրանք արդեն պարբերական մամուլ հասկացությունից տարբերվում են։

Նկատի պետք է ունենալ, որ պարբերական մամուլը, այսինքն՝ լրագիրը կամ ամսագիրն այն հրատարակություններն են, որոնք լույս են ընծայվում հասարակական որևէ խմբավորման, հոսանքի ներկայացուցիչների, կուսակցությունների կողմից, ունեն իրենց խնդիրները, գաղափարական ուղղությունը և անպայման՝ բաժանորդները։ Այլ են շատ հաճախ անհատների հրատարակած օրացույցները, տարեցույցները, տարեգրքերը, գիտական աշխատությունները, որոնք, նման լինելով պարբերական մամուլի, գրքի դեր են կատարում։ Տպագրության այս տարբեր տեսակների խառնուրդում ուսումնասիրողը կդժվարանա դրանք միմյանցից տարբերելու, հասարակական հոսանքների մեջ կողմնորոշվելու խնդրում։

Ի դեպ, մեր կարծիքով, լավ կլիներ, որ աչքով տեսած ու նկարագրված պարբերականները բերվեին իրենց վերնագրի լուսանկարներով, իսկ չտեսածները, աղբյուրներից քաղվածները՝ մեկ ընդհանուր, միանման տառատեսակով։ Այսպես, թե՛ գեղեցիկ կլիներ, թե՛ տպավորիչ ու պարզ։ Մասամբ այդպես է վարվել Գարեգին Լևոնյանը։

Գրախոսվող աշխատության մի այլ արժանիքն էլ այնտեղ զետեղված մի շարք օժանդակ ցանկերն են։ Սովորաբար նման աշխատությունների հեղինակները մեծ մասամբ բավարարվում են միայն անձնանունների ցանկով։ Այս դեպքում հեղինակները ջանացել են համակողմանի ներկայացնել ընթերցողին հայկական պարբերականները։ Գործնական նկատառումներով բուն մատենագիտական ցանկը, ինչպես վերն ասվեց, կազմված է այբբենական կարգով։ Սակայն պարբերականների հրատարակության առաջընթացն ու պատմությունն ուսումնասիրելու, որոշ առումով նաև դրանցից ավելի դյուրավ օգտվելու նպատակով հրատարակիչները չեն զլացել կազմել նաև ժամանակագրական օժանդակ ցանկ։ Դրան հաջորդում են ըստ հրատարակության վայրերի, ապա մատենագիտությունների ու մենագրությունների համար պարտադիր անձնանունների ցանկը, իսկ վերջում շատ կարևոր հարցերի պատասխանող գիտա-տեղեկատու մի այլ աղբյուր՝ տպարանների ցանկը։ Ցավոք, այս բաժինը ևս զերծ չէ հապճեպության կնիքը կրող արատներից, որոնք հեշտությամբ կվերացվեն մամուլի ապագա մատենագիտություններ կազմելիս...

Հայոց պարբերական մամուլի՝ դժվարին, տարիների տքնաջան աշխատանք պահանջող ներկա մատենագիտական ցանկը, թերություններով հանդերձ, օգտակար քայլ է հայկական մատենագիտության զարգացման ասպարեզում։ Այսօրինակ գործերն ամբողջովին մերժելով, «մի լավ ջարդելով», չորի հետ թացն էլ չե՞նք այրում արդյոք։

Հ. Մ. ԴԱՎԹՅԱՆ
Բանասիրական գիտությունների թեկնածու



ԽՄԲԱԳՐԱԿԱՆ ԿՈԼԵԳԻԱ

ԱԴՈՅԱՆ Ե. Գ. (գլխավոր խմբագիր), ԱՎԵՏԻՍՅԱՆ Վ. Ա., ԳԵՎՈՐԳՅԱՆ Վ. Հ. (պատասխանատու քարտուղար), ԹԵԼՈՒՆՑ Ա. Մ., ՂԱՐԻԲՋԱՆՅԱՆ Գ. Բ., ՄԻՔԱՅԵԼՅԱՆ Ս. Ա., ՆԱԼԲԱՆԴՅԱՆ Ս. Ս., ՍՏԵՓԱՆՅԱՆ Ա. Հ., ՍԻՄՈՆՅԱՆ Ա. Ս., ՍԱՐՈՅԱՆ Է. Մ.

Адрес редакции,— Ереван-33, Барекамутян 59-г.
Խմբագրության հասցեն՝ Երևան—33, Բարեկամության 59 գ.։ Հեռախոսներ՝ պատ. քարտուղար՝ 27—37—80, տեսության և էկոնոմիկայի բաժիններ՝ 27—25—29, կուսակցական կյանք և կուլտուրայի բաժիններ՝ 27—19—80, գրական աշխատող՝ 27—60—64։

ՎՖ 03749 Պատվեր 889 Թղթի չափսը 70×108 1/16։ Տիրաժ 13.100 Գինը 25 կոպ.։

Տպ. 7 մամուլ, մամուլում 68840 նիշ։ Ստորագրված է տպագրության՝ 30/VI 1972 թ.։

ՀԿԿ Կենտկոմի հրատարակչության տպարան, Ավ. Իսահակյան փող. № 28։





# ՁԵԶ ՀԱՄԱՐ ԸՆԹԵՐՑՈՂՆԵՐ

## ՆՈՐ ԳՐՔԵՐ

ԼԵՆԻՆ Վ. Ի.— Կոմունիստական բարոյականության մասին։ *«Հայաստան» հրատ., 1971։*

*Ներկա ժողովածուում զետեղված են կոմունիստական բարոյականության մասին Վ. Ի. Լենինի աշխատություններն ու ասույթները, որոնք վկայությունն են այն վիթխարի ուշադրության, որ ցուցաբերել է Իլյիչը այդ խնդիրների նկատմամբ։*

ԼԵՆԻՆ Վ. Ի.— Գաղափարական աշխատանքի մասին։ *«Հայաստան» հրատ., 1971։*

*Այս ժողովածուում զետեղված են Վ. Ի. Լենինի ճառերը, հոդվածները, նամակները, հատվածներ առանձին երկերից ու այլ փաստաթղթեր։*

ԼԵՆԻՆ Վ. Ի.— Գրականության մասին։ *Մ.,* «Художественная лит.» *հրատ., 1971։*

*«Ժողովրդական գրադարան» մատենաշարի այս ժողովածուում զետեղված են գրականության և գրողների մասին Վ. Ի. Լենինի երկերը, ասույթները, նամակները և այլ նյութեր։*

ՎԼԱԴԻՄԻՐ ԻԼՅԻՉ ԼԵՆԻՆ։ *Կենսագրական ժամանակագրություն, 1870—1924, հատոր 2, 1905—1912։ Մ.,* Политиздат, *1971։*

*«Ժամանակագրության» այս հատորն ընդգրկել է Վ. Ի. Լենինի կյանքի ու գործունեության յոթ տարիներին՝ 1905—1912 թթ. մոտ 4 հազար փաստ և իրադարձություն։*

ՄԱՐՔՍ Կ., ԷՆԳԵԼՍ Ֆ., ԼԵՆԻՆ Վ. Ի.— Դիալեկտիկական և պատմական մատերիալիզմի քրեստոմատիա։ *Օգնություն մարքսիզմ-լենինիզմի հիմունքների դպրոցների ունկնդիրներին։ Մ.,* Политиздат, *1971։*

ՆԻԿՈԼԱԵՎ Մ. Պ.— Վ. Ի. Լենինի դերը Ա. Մ. Գորկու կյանքում և գործունեության մեջ։ *Ռիգա, Լատվ. համալս. հրատ., 1971։*

ՇՉԵՐԲԻՆԱ Վ. Ռ.— Գրականության պրոբլեմները Վ. Ի. Լենինի ժառանգության լույսի տակ։ *Մ.,* «Наука» *հրատ., 1971։*

ՍՄԿԿ XXIV համագումարը և մարքսիստական-լենինյան տեսության զարգացումը։ *ՍՄԿԿ ԿԿ առընթեր մարքսիզմ-լենինիզմի ինստիտուտի, հասարակական գիտությունների ակադեմիայի, բարձրագույն կուսակցական դպրոցի և ՍՍՀՄ ԳԱ հասարակական գիտությունների ենթաբաժնի միացյալ գիտական կոնֆերանսի նյութերը (29 սեպտեմբերի—10 հոկտեմբերի 1971 թ.)։ Մ.,* Политиздат, *1971։*

ԿՈՍԻԳԻՆ Ա. Ն.— ՍՍՀՄ ժողովրդական տնտեսության զարգացման 1971—1975 թվականների պետական հնգամյա պլանի մասին և ՍՍՀՄ ժողովրդական տնտեսության զարգացման 1972 թվականի պետական պլանի մասին։ *Զեկուցում և եզրափակման խոսք ՍՍՀՄ ութերորդ գումարման Գերագույն սովետի երրորդ սեսիայում։*

*ՍՍՀՄ Օրենքը ՍՍՀՄ ժողտնտեսության զարգացման 1971—1975 թվականների պետական պլանի մասին։*

*ՍՍՀՄ Օրենքը ՍՍՀՄ ժողտնտեսության զարգացման 1972 թվականի պետական պլանի մասին։ «Հայաստան» հրատ., 1971։*

ՍՍՀՄ պատմություն։ *Հնագույն ժամանակաշրջանից մինչև մեր օրերը։ Երկու սերիայով և 12 հատորով։ Երկրորդ սերիա 7—12 հատոր։ Հոկտեմբերյան սոցիալիստական մեծ հեղափոխությունից մինչև մեր օրերը։ Հատոր 9-րդ, սոցիալիզմի կառուցումը ՍՍՀՄ-ում։ 1933—1941 թթ.։ Մ.,* «Наука» *հրատ., 1971։*

Սովետական Միության կոմունիստական կուսակցության պատմություն *(չորրորդ լրացված հրատարակություն)։ Մ.,* Политиздат, *1971։*

ԳԱՈՒԲԻԽ Բ. Վ.— ՍՄԿԿ պատմության քրեստոմատիա։ *Դասագիրք ԲՈՒՀ-երի համար։ Մասն առաջին։ Մ.,* «Высшая школа» *հրատ., 1971։*

Ազգային և ինտերնացիոնալիստականը գրականության մեջ։ *Մ.,* «Наука» *հրատ., 1971։*

# ԳԻՏՈՒԹՅԱՆ ԵՎ ՏԵԽՆԻԿԱՅԻ ՆՈՐՈՒԹՅՈՒՆՆԵՐ

## ՄԱՔՐՈՒՄ Է ՈՒԼՏՐԱՁԱՅՆԸ

*Երբ հեղուկը հոսում է խողովակաշարով, նրա մեջ հաճախ ընկնում են օդի կամ գազի պղպջակներ, որոնք դժվարացնում են հեղուկի հոսքը, նվազեցնում սրնուցման արագությունը, որոշ դեպքերում՝ պատճառ դառնում խողովակաշարի քայքայման:*

*Բելոռուսիայի գիտությունների ակադեմիայի ֆիզիկա-տեխնիկական ինստիտուտում, ակադեմիկոս Ե. Կոնովալովի ղեկավարությամբ, մշակվել է խողովակաշարերի հեղուկը գազազերծելու մեթոդ, ուլտրաձայնային ինտենսիվ դաշտի ստեղծումն է այդ. ուլտրաձայնը ճնշում է գործադրում գազի պղպջակների վրա, որոնք, բախվելով իրար, միանում և ավելի խոշորանում են ու հեշտությամբ պատվում հեղուկից, որը շարունակում է արագությամբ հոսել:*

*Լավ արդյունք է ստացվում, երբ հեղուկը հոսում է ուլտրաձայնային ֆիլտրի միջով, մեկ րոպեում 15 մետր արագությամբ: Ուլտրաձայնի ստացման համար կարելի է օգտագործել УЗГ—10 մակնիշի գեներատորը: Այդպիսի մեկ գեներատորը սնում է չորս փոխակերպիչների: Սարքավորման արտադրողականությունը մեկ րոպեում հասնում է 400 լիտրի:*

## ԱՐԵԳԱԿՆԱՅԻՆ ՀԱՄԱԿԱՐԳՈՒԹՅԱՆ ՏԱՍՆԵՐՈՐԴ ՄՈԼՈՐԱԿԸ

*Աստղագիտության պրոֆեսոր Գ. Կորտենը Լոնգ-Այլենդ քաղաքից հաղորդել է, որ Մերկուրիի ուղեծրի ներսում ինքը հայտնաբերել է նոր երկրային մարմին: 1966—1970 թվականների արեգակի խավարման ժամանակ նրա հանած լուսանկարներում կան առեղծվածային հետքեր: Գիտնականը գտնում է, որ դրանք աստղերի հետքեր չեն: Նա համոզված է, որ իր հաղորդումը կհետաքրքրի աստղագետներին, որոնք նախապատրաստվում են արեգակի խավարման դիտարկումներին՝ Կանադայում (1972 թ.) և Աֆրիկայում (1973 թ.):*

*Կորտենի այս հետևությունը մեծ հետաքրքրություն հարուցեց:*

*Անցյալ տարվա նոյեմբերի 17-ին անգլիական բոլոր թերթերը տպագրեցին Քեմբրիջի համալսարանի և Վոկինգտոնի ռազմածովային աստղադիտարանի հաղորդումն այն մասին, որ նրանք նկատել են արեգակնային համակարգության նոր, տասներորդ մոլորակը՝ Մերկուրիի և Արեգակի միջև: «Դեյլի տելեգրաֆ» թերթի հաղորդմամբ նման ենթադրություն է արվել արեգակնային սիստեմի այլ մոլորակների ուղեծրերի փոփոխությունների առընչությամբ:*

## ԱՍՊԻՐԻՆՆ ԱՆՀԱՄԱՍՏԵՂԵԼԻ Է ԱԼԿՈՀՈԼԻ ՀԵՏ

*Միչիգանի համալսարանի բժշկական ֆակուլտետի պրոֆեսոր, բժիշկ Խ. Դեյվենպորտը փորձնական ճանապարհով հանգել է այն հետևության, որ ացետիլսալիցիլային թթուն միանալով սպիրտին՝ կարող է վնասել ստամոքսի ներքին պատերի լորձաթաղանթին և առաջացնել արյունահոսություն: Լորձաթաղանթը պաշտպանական յուրովի արգելապատնեշ է ստամոքսի համար: Ստամոքսում է գտնվում ամենաուժեղ թթուներից մեկը՝ աղաթթուն և այն էլ այնպիսի խտությամբ, որ կարող է քայքայել նույնիսկ ցինկը, էլ չենք խոսում կենդանի բջիջների մասին: Սակայն այստեղ թթուն կատարում է դրական ֆունկցիա— ոչնչացնում է մանրէները, օժանդակում պեպսինի արտադրությանը, որը կարգավորում է մարսողությունը: Լորձաթաղանթի շնորհիվ է, որ աղաթթուն չի քայքայում ստամոքսը: Սակայն երբեմն այն քայքայվում է հատկապես էթիլային սպիրտի, ալկոհոլային խմիչքների և ասպիրինի համատեղ ներգործությամբ:*

## ՁԱՅՆԱԿԼԱՆԻՉ ՍԱԼԻԿՆԵՐ

*Կրակովում փորձարկումներ են կատարվում ձայնակլանիչ սալիկներ պատրաստելու համար, որոնք ունակ են կլանելու ձայների 85 տոկոսը: Այդ սալիկներն ամուր են, օժտված ջերմապաշտպան հատկությամբ:*

*Ինչպես վկայում են Կրակովի շինարարական տեխնիկայի ինստիտուտի փորձարկումները, սալիկները պիտանի են որպես շինանյութ:*